Sembat le Connétable
— (1208-1276)

Chronique du Royaume de
la Petite Arménie
—

Paris 1859

ՇԱՐ ՀԱՅ ՊԱՏՄԱԳՐԱՑ՝

# ՏԱՐԵԳԻՐՔ

## ՍՄԲԱՏԱՅ ՍՊԱՐԱՊԵՏԻ։

1859 ՓԱՐԻԶ ՌԻՐ։

# AVIS

Les encouragements sympathiques qui ont accueilli la publication dans notre *Galerie Historique*, des œuvres de Ghévond, Stéphannos Açoghig et Stéphannos Orbélian, nous engagent à poursuivre avec activité le but que nous nous sommes proposé.

Nous offrons aujourd'hui au lecteur les œuvres du Connétable Sembatt, comte de Coricosse.

Issu d'une noble famille arménienne, alliée à la branche régnante de Rubin, et appelée elle-même à régner sur l'Arménie, Sembatt fut incontestablement un des meilleurs annalistes de l'histoire du Moyen Age.

Comme Connétable, il connut à fond la cour royale de l'Arménie. Comme Maréchal, il prit une part active aux événements politiques de son pays. Il fut un allié précieux pour les Croisés occidentaux, et combattit avec les Français, les Allemands et les Anglais, pour la défense du christianisme contre les Sarrasins.

Après avoir visité plus d'une fois la cour des successeurs de Ginghis khan et d'autres pays jusqu'alors inconnus, il entreprit son histoire analytique des événements politiques de l'Arménie, depuis l'an 400 (959 de l'ère chrétienne) jusqu'en 1277 où une mort glorieuse, sur le champ de bataille, vint l'enlever à son pays et à ses travaux scientifiques. Il était âgé de 69 ans.

Cet ouvrage, quoique concis, se recommande au lecteur par les renseignements précieux qu'il contient sur les luttes héroïques soutenues par les Croisés, sur les souverains dégénérés du Bas-Empire, sur les principautés musulmanes d'Alep, de Damas, de Mossoul et d'Icone, sur les conquérants mongols et sur les rois arméniens devenus alliés des chrétiens occidentaux, après être entrés en alliance de parenté avec l'illustre famille française de Lusignan.

Puisse cet ouvrage exciter en France la bienveillance publique en faveur des illustres descendants des Rubénians et des Lusignans qui gémissent dans la terre d'exil des malheurs de leur patrie.

Rue de l'Ouest, 86. G. V. CHAHNAZARIAN.

Paris. — Imprimé par E. Thunot et Ce, rue Racine, 26.

# ՏԱՐԵԳԻՐՔ

## *ԱՐԱՐԵԱԼ*

## ՍՄԲԱՏԱՅ ՍՊԱՐԱՊԵՏԻ ՀԱՅՈՑ

### ՈՐԴԻՈՑ ԿՈՍՏԱՆԴԵԱՅ ԿՈՄՍԻՆ ԿՈՌԻԿՈՍՈՅ։

*ի լոյս ընծայեաց համեղեալ ծանօթութեամբք*

*Կարապետ Վարդապետ Շահնազարեանց՝ միաբան սրբոյ Էջմիածնի ։*

Ի *պատրիարքութեան Կոստանդնուպօլսոյ* Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ *Ամենապատիւ Արք Եպիսկոպոսի ։*



Ի ԳՈՐԾԱՏԱՆ Կ. Վ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ ։

# ՅԱՌԱՋԱԲԱՆ։



Տարեգիրք Սմբատայ սպարապետի կամ գունդ-ստաբլի արքայութեանն Կիլիկիոյ յետ ի խաւարի անգիտութեան մնալոյ դարս գրեթէ վեց՝ տեսանէ արդ կրկնակի զլոյս ի ձեռն տպագրութեան նախ՝ ի Մոսկվա, ապա ի Փարիզ։ Որ և ըստ շարի հայ պատ-մագրաց մերոց, գալով զկնի Ղևոնդեայ վարդապե-տի, Ստեփաննոսի Ասողկայ եւ Ստեփաննոսի Օրբէ-լեան՝ Սիւնեաց մետրապօլտի, ի չորրորդում հա-մարի կարգի։

Յետ ի կարգի դնելոյ զմեր օրինակն առ. ի պատ-րաստ զոլ ծնանելոյ ի մամլոյ, որպէս վկայագիր յայտա-րարութեամբ ծանուցեալ էաք յեւ 1856 ամի առ. դրասէրս Հայաստան աշխի. և այն ինչ դեռ ակնկա-լեալ մնայաք հաստարման բաժանորդագրութեանն, ահա եհաս ի ձեռս մեր օրինակ մի յիշեալ տարե-գրոցն տպեալ ի Մոսկվա գործանի աշխատասիրու-թեամբ հայրենասիրին խնոյ Պարոն Ոսկանայ Գէոր-գեան Յովհաննիսեանց երեւանցւոյ։ Սակայն հա-մառօտիւ խոստման խնոյ՝ ոչ կամեցաք խոստովիլ

յիմմէ առաջադրութենէ յոր մղեցին զիս եւ քան զեւ տարբերութիւնքն որք երեւեցան ի համեմատութենէ օրինակացն իմոց ընդ տպելոյն՝ տեսանելով յիմսն զկատարելութիւնս յոլովս հանդերձ անսխալութեամբ յիմաստս և ուղղութեամբ ի բառս ։ Յանձնեմ ի բաց քերելով զհասարակեալ ախտն անձնգովութեան, բայց որոց իւրաքանչիւր ոք պանծացուցանէ զոր ինքեան է սեփհական, մեք պատկառելի դատողութեան զխոնարհականաց առաջի ատենատեան առնեմք զընտրութիւնն ընդ մերն և ընդ տպեալն ի Մոսկվա՝ եւ թողումք յընթերցանողին զհոգ քաղելոյ յերկոցունց տարի օգուտս առ մտաւոր վերածնութիւն եւ առ զարգացումն գրականական եւ ի քաղաքական կենցաղս իւրեանց ։

Պարոն Ոսկան Յովհաննիսեանցն խաստովանի ի յառաջաբանի իւրում երես 8, ունել զմի եւեթ օրինակ ի ձեռին ի հրատարակելն զիւր Սմբատ․ որ և երեւեցաւ մեզ օրինակեալ ի գաղափարէ եղելոյ ի մատենադարանի սորին Էջմիածնի ։ Իսկ մեք, բաց յունելոյ զհատուածոյն այնորիկ, զոր օրինակեցաք պարոն տ. պատուաշան խնամով յամի Տեառն 1840, յաթոռն սորին Լուսաւորչին մերոյ, ստացաք այլս նաեւ զերկրորդ իմն օրինակ եւս ուղղագոյն գրչութեամբ քան զառաջինն․ զորս ի լինելն մեր ի Կոստանդնուպոլիս յամի Տեառն 1852, համեմատեցաք ընդ երրորդ իմն օրի-

նակի պատուելի Գալուստ վարժապետի Տէր Պօղոսեան Սամաթիացւոյ՝ արգոյ բարեկամին մերոյ ։

Յաւարտ ածեալ արդ զվերջին համեմատութիւն մերոյ օրինակացն ընդ տպագրելոյն ի Մոսկվա . եւ զկարեւոր տարբերութիւնսն նշանակեալ ի վերջէ գրոյս ի գիտութիւն ընթերցանելեաց, ընծայեմք ի լոյս զմերն Կիրակոսի Գանձակեցւոյ՝ փոխարէն ճգանցս ո՞չ այլ ինչ հայցելով բայց միայն զմնան սուրբ աղօթից արժանաւորաց յաղագս յարատեւելոյ իմ եւ ի կատար ածելոյ զոր ստանձնեալսն եմ ի փառս ամենօրհնեալ սրբոյ կուսին Աստուածածնի եւ ի շահ որդւոց Հնոյն Հայաստանի ։

Փարիզ ։ 10 Յունվ. 1859 ։ Կ. Վ. Շահնազարեան ։



## ՍՄԲԱՏ ԳՈՒՆԴՍՏԱԲԼ ԵՒ ՏԱՐԵԳԻՐՔ ԻՒՐ :



Բազում էին Սմբատ անուամբ հոյակապ Մարաջախք և Գունդստաբլք առ հարս մեր կիլիկեցիս երկոտասան, երեքտասան և չորեքտասան դարուց, որք փոխանակ անձանց գրէին կրել յանձինս զանուանս Սմբատայ՝ փառաւոր Թագաւորացն մերոյ Բագրատունեաց. այլ պատմագիր մի և եթ է կամ առ առաւելն՝ երկու :

Ընդ Ռուբենեան պետութեամբ, որ, որպէս յայտ է, վերջին եղև յազգային ինքնիշխան կառավարութեանց, եւ ընդ որով անման որդիք Հայաստանի ոգի ի բուին եղեալ մարտ եղեալ ոգորէին ընդ Սալճուկեանց Իկոնիոյ, ընդ Մամելուքաց Եգիպտոսի, ընդ Սարակինոսաց Ասորւոց, ընդ Թաթարաց և ընդ այլոց խառնամբոխ, վայրագուն եւ խուժադուժ լեզուաց անապատացն մեծ Թաթարստանի և Արաբիոյ վասն անկախութեան իւրեանց, ծաղկեցան այն առ հարս մեր ոչ միայն քաղաքական հրահանգք, այլ և հայախօս դպրութեանց, գեղարուեստից և ճարտարապետութեանց բայան դպրոցք եւ նաւավարութեան

և վաճառականութեան ընդ ծով և ընդ ցամաք հորդեցան շաւիղք ։ Զայս ցանէ խօսեցաք ըստ բաւականին ի մերում գաղղիերէն նկարագրի պատմութեան Հայոց տպելոյ յամին 1856 . ուր և զընթերցողս մեր առաքեմք ։ Ու զի՞նչ առայցելոցս ակնարկս տպագրաց, եթէ ոչ՝ կանգուն կացեալ ցարդ եկեղեցիք , վանօրայք, շիրիմք, բերդորայք, կամուրջք , դարպասնեն Անիկեցւոց, և մատենագիրք յիշխանաց մերոց կացեալք ։

Դպրութիւն եւ աշակերտութիւն գրոց ի սկզբանէ անտի բաշխ համարեալ էր առ բազում յազգացն Ասիոյ և Եւրոպիոյ եկեղեցականաց և եթ , և զոյն ուրեք՝ միջին դասու ժողովրդեան . իսկ Թագաւորաց եւ իշխանաւորաց՝ թանձր ազիտութիւն, առ որս ուսմունք գրոց անպատուութեան էին սակի և անարժան աստիճանի իւրեանց և կոչման . գիրք և կաղամար տարագիր եղեալ էին յապարանից նոցա . եւ տեսօրէնք միլիոնաւոր հոգւոց շատանային վարժելով զանձինս վեր ի վերոյ ի ձիավարութեան, յորս եւ ի նետաձգութեան ։ Խորենացի հայրն մեր ի սկզբան պատմութեան իւրոյ գիրք Ա . գլուխ 3 . բամբասէ զանխնամատարէր բարս Թագաւորաց մերոց , զնոյն և ինձ հարկ լինէր առ անցեալս երկրորդել ընդարձակագոյն ևս, եթէ ոչ էր հանդերձեալ ի լոյս ընծայել զիշխանազն զմատենագիրն Սմբատ որ թէև որդի Կոստանդեայ մեծ կամսին Կոռիկոսոյ, թէև եղբայր

գեղեցին Հարկաւ բարի եւ իմաստասէր Թագաւորին այնմիկ ժառանգս հաղորդս իւրոյ առաքինութեանց. սակայն թուի թէ Նախնիք մեր չեղեն արժանի այսմ շնորհացս. այլին երբ եւ մահուամբն Լեւոնի երրորդի շիջաւ եւ լոյս իմաստութեան առ Հայս Կիլիկիոյ. եւ անկաւ վերստին ազգն ի խորխորատ տգիտութեան յոր գնաց ցարդ ընդ խարխափ։

Հերիք է մեզ խօսել զուամանց առ Կիլիկեցի Նախնիս մեր։ Դարձցուք ի Սմբատ և յերկն իւր։ Զունիմք այժմ ինչ թարգմանելոյ յայլ մատենագիրս առ ի գիտել զժամանակ ծննդեան նորա, զկեանս և զգործս։ Բաւական է՝ եթէ ասեն արկցուք միայն յիւր գործ. եւ խօսք մեր առ հասարակ այսէ զլրուին։ Սմբատ ասէ զինքենէ ծննդեան յամի Տեառն 1208 « ի թուականին ՈԾԷ ծնաւ գունդստաբլն՝ Թարգմանող պատմութեանս »։ Նոյնն երես 99, ասէ զանձնէ գոլ մի ի պաշտօնէից Լեւոնի երկրորդի « և ուր խնամայր թէ՝ գոյ այր իմաստուն եւ գիտուն եւ աջող ի գործ կամ ի զինուորութիւն կամ ի խօսս եւ ի պատասխանիս, յղէր եւ կոչէր խոստմամբ եւ հանդուցանէր պարգեւօք, յորոց մի եւ ես եմ Սմբատ սպարապետ՝ Թարգմանող տառիս և պատմութեանս »։ Եւ զի Լեւոն երկրորդ թագաւորեաց յամէ Տեառն 1198-1218. Ճշտիւ խօսելով՝ այսմ գրեթէ անմարթ է գոլ. իբր զի եղեալ նա և թէ երկոքին Սմբատք մի և նոյն անձն

իւրն. և թէ Լևոն երկրորդ կայոյց զնա ի պաշտօն ինչ արքունի գ՛թ ի վերջին ամի կենաց իւրոյ. բայց և այնպէս Սմբատ լինէր յայնժամ ևս ո՛չ ինչ աւելի քան ինն կամ տասն ամաց մանուկ, ծնեալ գոլով յամի 1208. և Լևոն երկրորդ մեռեալ յամի 1218: Սակաւ մի առօրեւ, հրեշտակութեամբ գնացեալ ասէ զինքենէ հրամանաւ եղբօր իւրոյ Հեթմոյ առաջնոյ առ մեծ խանն Թաթարաց. «ի Թուականին ՈՂԷ գնացի ես Սմբատ գունդստաբլս ի Թաթարն. եւ ի Թուականին ՈՂԹ դարձայ առ եղբայրն իմ Հեթում Թագաւորն»: Ապաքէն եթէ Սմբատ էր եղբայր Հեթմոյ առաջնոյ, էր ուրեմն և որդի Կոստանդեայ՝ մեծի կոմսին Կոռիկոսոյ. որոյ ցեղն խնամացեալ Ռուբենեանց՝ թագաւորեաց ի Հայս յամի 1226:

Բազում անգամ ասէ Սմբատ զինքենէ գտեալ ի պատերազմունս թշնամեաց ի պաշտպանութիւն հայրենեաց իւրոց, զոր օրինակ: «Եւ Թագաւորահայրն Պարոն Կոստանդին ու Սմբատ գունդստաբլն եկին, մտան ի Տարսուս. եւ Թագաւորն (Հեթում) իւր հեծելովն կայր յԱտանայ: Թուրքն աղարեաց (պաշարեաց) զՏարսուս. իջան ի դաշտն հետ գետին, եւ դերեցին զամէն երկիրն. և կեցան վեց օր, և ապա ել ածին որ ելնէին ընդ Կուկլկայ կապանն: Նա թագաւորն հեծելովն ի հետ ել. և Թագաւորահայրն եւ Սմբատ գունդստաբլն (ևս ելին) եւ հասին ի տեղ

մի որ Մայծու ասեն ։ Նա (Թշնամին) դարձաւ անթիւ շատ ի հետ ։ Նա մեք դիպեցաք, եւ Աստուծով խանգարեցաք, և կոտորելով վարեցաք մինչև Պուտանդէ ։ Նա յետ այլ մէկ տարւոյ, ի Թուականին ՈՂԷ(1247) արտարին շատ ժողով՝ ու եկին, մտան ընդ Կուկլկայ կապանն երկու հարիւր վաթսուն հազար մարդ. և բոլոր պատեցին զՏարսուս ։ Նա Թագաւորահայրն եւ ես Սմբատ գունդստաբլս մտաք ի Տարսուս ։ Եւ եթէ զամէն նեղութիւն բարձնաց ու կոխ գրեալ էաք, նա կարծ շատ էր լեալ ։ Հէնց որ ի Ջրմտին դեհն ու ի Ջրեմին աղէկ նստընկէց մի փլուցին զպարիսպն, ու շատ մեռան յերկուց կողմանց, բայց ի դրույքն հարիւրապատիկ . զի ունէաք ընդ ներքս աղէկ Փռանկի չարխաւորք »։ Եւ ապա ի ցուցակի սպաբալետացն Հայոց՝ ընդ այլս յիշատակի Սմբատ ոմն գունդստաբլ՝ տէր Պապառօնին ։ Այլ Թէ նոյն իցէ այս անձն ընդ պատմագիր մեր՝ չունիմ ասել ինչ որոշակի ։

Հ. Մ. Չամչեան, ի պատմութեան Հայոց. հատ. Գ. երես 277 և 278. առեալ ի յիշատակարանէ Ռոմանոս ժամանակակից վարդապետի ուրուք, այսպէս պատմէ զդիւցազնական մահուանէ Սմբատայ գունդստաբլի՝ հօրեղբօր Լեւոնի երրորդի « տեսեալ Լեւոնի զայս չափ աւերութիւն աշխարհին իւրոյ՝ միանգամայն զհարուած եւ զգերութիւն բազմաց, ըմբռնեցաւ ի

տխրութեան անհնարին. և մինչդեռ աղեխարով լինէր նա ի վարանս տարակուսի, եհաս առ նա գուժկան, եթէ ամենայն Եգիպտացւոց չև հասեալ յԵգիպտոս, ժողովեալ զայլ ևս անհամար զօրս՝ վերստին գայ այսր պատերազմել : Զայս լուեալ Լևոնի, և տեսեալ՝ թէ Թագաւորեամբ ոչինչ վճարի, ժողովեաց զօրս իւր. և բազում բանիւք յորդորեալ զնոսա՝ քաջալերեաց մարտնչիլ զինէ ի վերայ հաւատոյ : Եւ իբրև լուր եհաս՝ թէ մօտ են Եգիպտացիք մտանել յաշխարհըն Կիլիկիոյ, բաժանեաց զզօրսն ի վեց գունդս. զմին էառ ինքն. զերկրորդն ետ ի ձեռն հօրեղբօր իւրոյ ծերունւոյն Սմբատայ, որ սպարապետն էր՝ և գունդըստապլ կոչիւր . . . . Սմբատայ հրամայեաց ելանել նախ իւրով առանձնական գնդաւ ընդդէմ Եգիպտացւոց, և զայլ գունդսն եդ ի դարանս շուրջանակի. և ինքն դիմեալ ընդ զանխուլ ճանապարհ՝ եհաս ի յետին կողմն զօրուն Եգիպտացւոց :

« Եւ իբրև սկսան Եգիպտացիք դիմել ի ներքին սահմանս Կիլիկիոյ, ել ընդ առաջ նոցա Սմբատ գնդաւ իւրով . զայն տեսեալ նոցա՝ կարծեցին, թէ այնչափ միայն իցեն զօրք Հայոց . Վասն որոյ վստահութեամբ յարձակեալ ի վերայ նոցա՝ սկսան մարտընչիլ և վանել զնոսա : Եւ ի չփոթել Հայոց զպարձակմունս նոցա՝ հասին և դարանամուտքն ընդ ժամանգութեան իւրեանց շուրջանակի . եհաս զկնի և

Լևոն . և ամենեքեան ի մէջ փախելով զեգիպտացւոցն՝ կոտորեցին զնոսա ի բերան սրոյ . եւ այնչափ եղեն անկելոցքն ի նոցանէ, մինչև զխոտկանց նոցա խառնեան լինել փախստեան Թաթարացն : Եւ ի զերծանել անդ զօրագլխի անհրապոյն ռամկաւք, պնդեցաւ Սմբատ զհետ նոցա . այլ ի սաստկապնդութենս տապշանելոյ երիվարին՝ ուժգին հարեալ զգամ իւր զծառոյ՝ փառանեցաւ. և ոչ կարացեալ տանել ցաւոյն վասն ծերութեան դարձաւ յետս . և կացեալ աւուրս քանի մի՝ մեռաւ » :

Այս զօրաց ապշաւանք եւ կոտորածի հանդերձ կորագլուխ փախուստ Եգիպտացւոց, զոր Հ. Մ. Չամչեան վրիպակաւ դնէ յամի Տեառն 1275 . եղև ի 1277 : Իսկոյն յաղթութեան շարժին երրէք Հայք զդէն ի պաշտպանութիւն անձանց և հայրենեաց . և ինքն Լևոն հարկեցաւ խոյս տալ յաւուրս Տօրոսի : Սուլթանն Բիպարս, ի մերոց Փնտուխտար կոչեցեալ, առ զՏարսոն, եւ զայն ի ճարակ հրոյ, անցոյց ընդ սուր աւելի քան զ20,000 քրիստոնեայս, եւ վարեաց ի գերութիւն զ10,000 հոգիս : Իսկ երկրորդն, յորում զեղեցիկս աւարքիւնացաւ Սմբատ զունդսատարքն և ամենայն հայորեար, եղև յամի 1277 . Յայս նուազ Մամելուքը Եգիպտոսի պաշարեալք ի քաղաքն Հայոց ի ընդանմէջն մերձ առ Ալեքսանդրեթ, (Իսկէնտերուն) հարան չարաչար, և ինքն Բիպարս սուլթանն ածեալ ի Դամասկոս խոյց կարեւէր՝ փչեաց անդ զոգին իւր :

Ապաքէն պատմագիրն մեր Սմբատ, եթէ իցէ իրօք հօրեղբայր Լեւոնի երրորդի, համարի կեցեալ ամս 69. Ծնեալ յամի Փրկչին 1208. և վախճանեալ ի 1277։ Եթէ այլ ոք՝ յայնժամ ծնունդ և մահ և կեանք և գործք իւր մնան ըստ մասին անծանօթ ի մէնջ։ Ի պատմութեան Հայոց. հատ. Գ. եր. 293, 310, յիշատակէ Հ. Մ. Չամչեան այլ եւս Սմբատս գունդստաբլ կամ մաբաջախտ (կարդա Մարաջախտ) անուամբ. և եր. 335, յիշատակէ պատմիչ ոմն Կիլիկիոյ, զոր կարծէ Սմբատ զոյլ, յորմէ առնու եւ հատուած մի բանի. այլ այս Սմբատ ոչ է մերն, որպէս և տարբերութիւն ոճոյ շարադրութեան երկոցունցն զնոյն յայտ առնէ։

Սմբատ սկսեալ զպատմութիւն իւր յամի Հայոց Ն (952) բերեալ հասուցանէ մինչև ցամն ՉԻԵ (1277). համառօտիւ անցանէ զիրօք առաջնոցն և ճոխագոյնս պատմէ զիւրոյ դարուն իբրև ականատես։ Գոլով եղբայր Հեթմոյ առաջնոյ, հօրեղբայր Լեւոնի երրորդի, և սպարապետ զօրացն՝ յայտ է թէ, զբաղում ինչ ճշտիւ եւ ստուգութեամբ գրէ իբրև քաջ գիտակ իրացն։ Ցամէն ՉԻԵ և անդր եւս մինչ ցամն ՉՂ. այլոյ ուրումն անանուն շարունակողի է գործ՝ որ եւ պարունակէ ըստ մասին զցանկ թագաւորաց, սպարապետաց եւ մարաջախտաց Հայոց Կիլիկիոյ, զթիւ վիճակաց չորից պատրիարքական աթոռոց եւ զցանկ կայսերացն Հռոմայեցւոց և Հռոմոց և այլն։ Հ. Մ.

Զամչեան, որ չեղեւ ձեռնհաս տեսանել զՍմբատայ գիրսն, որ է մին ի գլխաւոր աղբերաց Ռուբինեան հարստութեանն, բազմօք տարբերի ի նմանէ ի վէպս իւր. զորս ո՛չ դանդաղեսցուք ի նշանակել յիւրաքանչիւր տեղւոջ ի ծանօթութիւնս, ուր դիցուք նոյնպէս եւ զտարաձայնութիւնս Սմբատայ յայլոց պատմագրաց։

Տիտղոսն գունդստաբլ, որ աղաւաղութեամբ գրի գունտոստաբլ, զոր յաճախ վերադրէ անձին Սմբատ սպարապետ, ելեալ է ի comes stabuli լատին բառէս, յորմէ Անգղիացիք կազմեցին constable, Գաղղիացիք՝ connétable եւ Հայք՝ գունդստաբլ, թուի առաւելապէս տառադարձութիւն անգղիականին քան թէ գաղղիականին։ Ի սկզբան անդ գունդստաբլ ի կիր առնուէր առ Եւրոպացիս իբրեւ ախոռապետ կամ կոմս ախոռոյ արքային. ապա իբրեւ ընդհանուր հրամանատար զօրուն, իբրեւ կուսակալ, իբրեւ պետ թնդանօթաձիգ զօրուն. երբեմն եւ իբրեւ բերդակալ։

Պարոն Ոսկանն «Թարգմանող տառիս եւ պատմութեանս» բանիւ իմանայ թէ զպատմութիւնն, զորմէ բանս է, Սմբատ շարադրեաց հայերէն, թէպէտեւ երկրորդական առմամբ թարգմանութիւն բառն ընծայէ զիմաստ շարադրութեան։ Այլ ընդէ՞ր խոտորեցուցանել զայն աստանօր յիւրմէ բուն նշա-

նակութեննէն և ոչ իմանալ՝ Սմբատայ զերկ իւր գրեալ նախ յօտար բարբառ եւ ապա թարգմանեալ ի Հայ, որպէս եւ Հեթմոյն ։ Յայտնի է օտարասէր բարք մասին ինչ մերոյ ազգի, որ զկապկութիւն նախապատիւ ազգայնին իրաւանց և օրինաց դնէ, որ և մոռացեալ զիւրոյ ազգին զբարբառ՝ սիրէ վարիլ օտարատւովն ։ Կոռիկոս՝ հայրենիք Սմբատայ, կանգնեալ յափն Միջերկրականին ծովու, էր մի ի գլխաւոր նաւահանգստաց ուր յաճախէին նաւք Խաչակրաց և առհասարակ արեւմտեան վաճառականաց . Տոհմն Սմբատայ գոլով իշխող ի քաղաքին յայնմիկ, և խնամութեամբ խառնեալ ընդ արեւմտեայ քրիստոնէայս, կարէր դիւրեաւ մոռանալ զազգային բարբառ իւր և փորձիլ զաղղիականաւն կամ այլով բարբառով, որոյ ցաւալի օրինակք արդ եւս տեսանին յիշխանաւորս ազգի մերոյ գաղթեալս ի միջի քրիստոնէից Եւրոպիոյ. ամին իրի չէ ինչ անտեղի ամենեւին ենթադրել թէ և Սմբատայն տարեգիրք այսպիսում հանդիպեալ վիճակի՝ շարադրեցաւ նախ լատիներէն կամ գաղղիերէն . և ապա թարգմանեցաւ ի Հայ ։

Պատմութիւն Սմբատայ հեռի է յոյժ ի մաքուր հայկաբանութենէ . եւ կարէ համարիլ ճիշդ տիպար արդեան աշխարհիկ բարբառոյ ազգայնոց մերոց Թուրքաստանի, ծնելոյ եւ կրթուելոյ ի մետասաներորդ և երկոտասաներորդ դարս ։ «Եւ իբրև յիշատակարան

նորոյ հայերէնախօսութեան՝ արժանի մասնաւոր հետազօտութեան քերթողաց ազգիս ։ Իբրև հայելի հաւատարիմ հայկական բարբառոյ իւրոյ դարուն՝ ի կիր առնու յաճախակի Սմբատ գրաս արևմտեայ քրիստոնէից մուծեալս յազգ մեր ի Խաչակրաց, յորոց բազումք զտեղի կալեալէին արդէն ի Կիլիկիայ եւ սպասաւորէին ընդ դրօշակօք Հայոց ։ Այլք ևս ի պատահայացեալ կան, մնան ցայսօր ժամանակի ի լերինս Տօրոսի ։ Զայս ամենայն բացատրեսցուք ըստ կարգի յիւրաքանչիւր տեղիս ի դիւրութիւն ընթերցողաց. և մեք փութասցուք ի շարունակութիւն ձեռնարկեալ գործոյս ։

Կ. Վ. Շահնազարեանց՝
միաբան սրբոյ Էջմիածնի ։



# ՏԱՐԵԳԻՐՔ

## ՍՄԲԱՏԱՅ ՍՊԱՐԱՊԵՏԻ ։



*Ի ժամանակս թագաւորութեան Յունաց Ռոմանոսի՝ որդւոյ Կոստանդեայ, և ի հայրապետութեանն Հայոց Տեառն Անանիայի, և յիշխանութեանն Պարսից Մահմուտ սուլտանին, և ի թուականին Հայոց* 400 (1) *թագաւորէ Գագիկ Բագրատունի տանն Հայոց ։ Որ էր որդի Աշոտոյ, և Աշոտ՝ որդի Աբասայ, և Աբաս՝ որդի Սմբատայ ։ Էր թագաւորս այս քաջ, բարետեսիլ և ահարկու, ողորմած և քաղցր ի վերայ ամենեցուն, զարդարեալ ամենայն բարեձևութեամբ՝ հանգոյն նախնի թագաւորայ սրբոց, և յաղթող ի պատերազմունս թշնամեացն Քրիստոսի ։ Որ և օգնականութեամբն Աստուծոյ զօրացեալ խա-*

ղաղայոյց զաշխարհն ըստ իւրաքանչիւր կերպի, զեկեղեցականս և զիշխանս, զռամիկս և որ ընդ իշխանութեամբ նորա էին . պայծառացան և եկեղեցիքն խաւարեալ և կործանեալ յաղգացն Մահմետի . և ամենեքեան առհասարակ գոհանային զՏեառնէ Աստուծոյ .

Իսկ ի Թուականութեանն Հայոց 410 հարկաւորեալ հայրապետն սուրբ և ամենայն իշխանք Գագկայ, և առաքեալ ղեսպան առ կաթողիկոսն Աղուանից Տէր Յովհաննէս և առ թագաւորն նոցա Փիլիպպէ, կոչեցին զալ ի յօծումն թագաւորին Գագկայ : Որոց եկեալ քառասուն եպիսկոպոսօք և բազում իշխանօք, և միաբանեալ օծեցին զԳագիկ թագաւոր Հայոց (2) : Զի թէպէտ ունէր զիշխանութիւնն . այլ ոչ էր ընկալեալ զթագ թագաւորութեանն ի գլուխ իւր : Եւ եղև ուրախութիւն և հանդէս մեծ յաւուրն յայնմիկ ի քաղաքն Անի : Եւ կատարեալ զաւուրս ուրախութեանն դարձուցանէին զկաթողիկոսն եւ զթագաւորն մեծամեծօքն յաշխարհն իւրեանց մեծաւ պատուով :

Իսկ զկնի երկուց ամաց մեռաւ թագաւորն Յունաց Ռոմանոսն . և թողոյր որդիս երկու՝ զՎասիլ և զԿոստանդին : Եւ զկնի նորա թագաւորեաց Նիկեփոր . և զորդիսն նորա պատուէր առ իւր զգուշութեամբ և պատուով : Իսկ սա այր սուրբ և առաքինի

և զեղեցկատեսիլ, և ի պատերազմունս քաջ և յաղ-
թող, և ողորմած յոյժ ։ Սորա ժողով արարեալ եկն
յաշխարհն Կիլիկեցւոց ի վերայ զօրացն Տաճկաց .
և էառ զմայրաքաղաքն Տարսոն, զԱտանա և զՄսիս
եւ զԱնաւարզայ (3) . եւ կոտորեաց զզօրսն մինչև
ի դուռն մեծին Անտիոքու . և դարձաւ մեծաւ յաղ-
թութեամբ ի Կոստանդնուպօլիս ։

Իսկ ի թուին 413 ժողովեցան զօրքն Հայոց ի գա-
ւառն Տարօն . և հարեալ կոտորեցին զզօրսն Տաճկաց,
և ըմբռնեցին զբազում իշխանս . և յայնմհետէ ազա-
տեցաւ գաւառն այն յիշխանութենէ աղտեղի ազ-
գին Մահմետի ։ Եւ զայսու ժամանակաւ գնաց վար-
դապետն Հայոց Ղևոնդ ի Կոստանդնուպօլիս . և
խօսեցաւ ընդ վարդապետսն Յունաց, անպարտելի
երևեցաւ ի մէջ նոցա . և ընկալեալ պարգևս ի թա-
գաւորէն դարձաւ յաշխարհն Հայոց ։ Սա թարգմա-
նեաց զպատմութիւն մատին սուրբ առաքելոյն
Պետրոսի, որ բերաւ ի Հայս ։

Յայնմ ժամանակի մատեան առ թագաւորն Նի-
կեփոռ աղտեղի կրօներն (4), և չարախօս եղեն առ
նա վասն Հայոց, եթէ Հայք ոչ ունին զուղղափառ
հաւատս, և ոչ կատարեն զօր ծննդեանն Քրիստոսի
և ոչ զտօնախմբութիւն սրբոց ։ Եւ թագաւորն թէ-
պէտև յոյժ սիրէր զԳագիկ . այլ պատրեալ ի չարա-
սէր և յանմարգի դաւուցն՝ ցանոյր . և զօրու ծանու

յարուցեալ գնայր յաշխարհն Հայոց ընջել առհասարակ զՀայաստան ազգս ։ Զոր լուեալ Գագկայ (Աշոտոյ) հիացեալ զարմանայր յոյժ եթէ զիարդ այսպիսի քրիստոնեայ արքայ գայ խորոխտալով և բարկութեամբ ի վերայ եկեղեցւոյն Քրիստոսի ։ Ապա հրամայէր և նա ժողովել զզօրսն Հայոց ի պատրաստութիւն պատերազմի ։ Իսկ Թագաւորն Նիկեփոռ զօրօք ելանէր յարևելս . և մինչ հասանէր ի քաղաքըն Բիւթանացւոց Նիկիա՝ հայրապետ քաղաքին հարցանէր զպատճառ գնալոյն . և արքայն պատմէր զպատճառն կարգաւ . և սուրբ հայրապետն ծանուցանէր Թագաւորին զուղղափառ հաւատս Հայաստանեայց եկեղեցւոյ, զոր ունին անթերի առ սուրբ Երրորդութիւնն և մի Աստուածութիւնն և առ Քրիստոսի մարդեղութիւնն ։ Զոր ծանուցեալ Թագաւորին ճշմարտութեամբ, և տեղեկացեալ ի սուրբ հայրապետէն յաղագս քաջութեան Գագկայ (Աշոտոյ) և զօրացն Հայոց . և որպէս ի քնոյ զարթուցեալ ի զուր յասմանէն՝ գոհանայր զՏեառնէ որ խափանեաց զանիրաւ պատերազմն ։ Եւ հրամայէր հայրապետին գրել առ Գագիկ (Աշոտ) զպատճառս գալըստեանն, եւ առնել սէր եւ միաբանութիւն ի մէջ երկուց Թագաւորացն, զոր և արարն իսկ . և դարձան իւրաքանչիւր ի տեղի իւր ։

Իսկ ի Թուականին (5) Հայոց 418 խորհեցաւ

կինն Նիկեփօռայ խորհուրդ չար . և զայր ոմն մահապարտ, որ յաքսորս էր ի կղզւոջ միում, Յովհաննէս անուն Զմշկիկ, զաղտ առաքեալ հանէր՝ որպէս թէ հրամանաւ թագաւորին . եւ եբեր ի Կոստանդնուպօլիս առանց գիտելոյ թագաւորին . և ի ծածուկ առնէր ընդ նմա խորհուրդ սպանանելոյ զթագաւորն . և խոստացաւ լինել նմա կին և նստուցանել զնա յաթոռ թագաւորութեան ։ Զոր յանձն առեալ Զմշկիկն հաւանեցաւ առնել զկամս անօրէն թագուհւոյն ։ Եւ զայս առնէր կինն չարարուեստ յաղագս վաւաշոտ իւրոյ ցանկութեանն . քանզի թագաւորն ողջախոհ էր և պարկեշտ ի մարմնական ցանկութիւնս, և ոչ կատարէր զանսահման յուզումն իւրոյ չար ցանկութեանն անխափան ։ Իսկ թագաւորն ունէր սովորութիւն զի ի խաղաղական ժամու հանգստեան երեկոյին մտանէր ի սենեակն օթանոցի իւրոյ առանձինն, և ընթեռնոյր զԳիրս Աստուածաշունչս . և ապա յարուցեալ առնէր զսովորական աղօթս իւր, և տարածեալ յանկողնի ննջէր ։ Իսկ կինն աղտեղի յերեկոյին մինչ ընթեռնոյր թագաւորն զգիրսն՝ եկեալ նստէր մերձ, և շաղապատէր զթագաւորսն . և առեալ զսուսեր թագաւորին կապէր փոկօքն սնդուագոյն անեղանելի . և ելանէր արտաքս առ խորհրդակիցն իւր ։ Եւ եկեալ Զմշկիկ ծածկաբար՝ վազեալ ի ներքս ի սենեակն, ուր էր թագաւորն . զոր

տեսեալ թագաւորին զարմացաւ և ասէ « չո՞ւն կա-տաղի՝ զի՞նչ յուզես աստ ». և առեալ ի ձեռն զսու-սերն ոչ կարաց հանել : Յայնժամ Զմշկիկն զազա-նաբար յարձակեալ խողխողեաց սրով զմարմին սուրբ թագաւորին որ ունէր այծազգեստ ի վերայ մար-մնոյն՝ ներքոյ թագաւորական ծիրանեացն . և այն-պէս աւանդեաց զհոգին թաթաւեալ յարեան : Զոր տարեալ թաղեցին արժանաւորապէս պատուով և մեծաւ ողբովք ի սուրբ տեղւոջն :

Եւ նստաւ թագաւոր անարժանն Զմշկիկ. և հա-լածեաց զամենայն աշխարհն Յունաց : Իսկ զոր-դիս Ռոմանոսին փախուցեալ յանօրէն թագուհւոյն ի Վասպուրական, ի Հանձիթ գաւառին զի մի՛ մահացու-ցեղօք սպանցէ զնոսա : Բայց վասն անիրաւ մահուան Նիկեփոռայ ի մեծ տրտմութեան էր թագաւորն Զմշկիկ զամենայն աւուրս կենաց իւրոց :

Իսկ յորժամ եղև թուականն Հայոց 420 (6), մե-ռանէր արքայն Հայոց Գագիկ խաղաղական մահ-ուամբ : Եւ եղև հակառակութիւն ի մէջ որդւոց իւրոց Յովհաննիսի և Աշոտոյ . քանզի Յովհաննէս աւագ էր և էր այր իմաստուն . այլ տարտամ և հեղգ գոլով և թուլամորթ և անկիրթ ի պատերազմունս . իսկ Աշոտ այր քաջ էր, անպարտելի և յաղթող ի պատերազմունս : Բայց բռնակալեաց Յովհաննէս զաթոռ թագաւորութեանն . իսկ Աշոտ շրջէր զօրօք,

և սաստ հարկանէր զբաղում՝ տեղիս, և նեղէր զքա-ղաքն Անի ։ Եւ գնացեալ առ Սենեքերիմ՝ արքայն Վասպուրականի, որ էր երկրորդ Ապուսահլին՝ որ-դւոյ Գագկայ, Արծրունի ազգաւ. և առեալ զօրս ի նմանէ անցանէր առ (ի) լեառն Վարագ. և մտեալ ի վանս սրբոյ Նշանին երկրպագէր սուրբ խաչին և պատկերի սուրբ Աստուածածնին ։ Եւ տայր պարգևս բազումս յանկոյն Արարայցոյ. և առեալ զայն ապա-հարան սրբոյն, զոր պարգևեալ էր նմա արքայն Բա-բելացւոց. և գայր, հասանէր զօրօք բազմօք ի քաղաքն Անի ։ Զոր լուեալ Յովհաննէս հանէր զզօրսն իւր ի պատերազմ ընդդէմ նորա. և ինքն նստէր ի գահոյսն, որպէս և էր անհմուտ ի պատերազմի. և դղրդեալ քաղաքն երանէին ի դէմ Աշոտոյ ի պատերազմ ։

Իսկ ոմն իշխան ի Թագաւորէն Վրաց եկեալ դես-պան առ Յովհաննէս. և յաւուր յայնմիկ անդ էր. և խոստանայր Թագաւորին և ասէր «Թագաւոր՝ հրա-մայեա՛ զի ցուցցեն ինձ զԱշոտ. և ես առեալ ձե-ռամբ ածից զնա առաջի քո» ։ Եւ զայս ասէր (այրն) յաղագս քաջութեան անձին իւրոյ զի էր այր պատե-րազմող ։ Եւ ասէր Թագաւորն «Մի՛ արհամարհեր զկորիւնն առիւծու մինչև տեսցես» ։ Եւ յորժամ եղին ճակատ առ ճակատ՝ իշխանն Վրաց ձայն բար-ձեալ խնդրէր զԱշոտ. և լուեալ Աշոտոյ և զայրա-ցեալ՝ ընթացան առ իրեարս. և հարկանէր Աշոտ

զնա սուսերաւն ի վերայ սաղաւարտին, և հերձեալ ընդ մէջ՝ յերկիր ընկենոյր . և եղև սաստիկ պատերազմ : Եւ պարտեալ զօրք Թագաւորին եղեն փախըստական . և Աշոտ զկնի նեղէր . և ոչ ետ նոցա անկանիլ ի քաղաքն . այլ ելից զամենեսին ի գետն :

Այսպէս խորհեցան Պահլաւունիքն և Բագրատունիքն առնել խաղաղութիւն ի մէջ երկուց եղբարցն : Յայնժամ սուրբ հայրապետն Անանիա (7) և իշխանք քաղաքին եկին առ Աշոտ . արարին խաղաղութիւն այսպէս՝ զի լիցի Աշոտ Թագաւոր դրուց աշխարհին . և Յովհաննէս նստցի յԱնի . և եթէ յառաջագոյն մահ հասցէ Յովհաննիսի՝ Աշոտ լիցի Թագաւոր ամենայն Հայոց : Եւ հաւանեալ Աշոտ՝ յայնժամ նստաւ Աբաս ի Կարս Թագաւորական իշխանութեամբ հրամանաւ Յովհաննիսի և Աշոտոյ . և Գէորգի՝ յաշխարհն Աղվանից զի էին յազգէ Թագաւորաց . և կային ի հնազանդութեան երկուց Թագաւորացն Յովհաննիսի և Աշոտոյ : Եւ Աշոտ ոչ ժամանեաց մտանել յԱնի զամենայն աւուրս կենաց իւրոց :

Իսկ իշխան ոմն Ապիրատ անուն՝ որդի Հասանայ, վասն մտերմութեանն զոր ունէր առ Աշոտ՝ երկեաւ գնալ առ Յովհաննէս . փախեաւ, գնաց առ Ապուսահըլ՝ Պարսից զօրավարն երկոտասան հազար հեծելով : Եւ նա զառաջինն պատուով ընկալաւ զնա . ապա ի սադրելոյ իւրոց իշխանացն և յերկիւղէ քաջութեան

կասկածեալ կորուսանէ զԱպիրատն դաղտնի ի զօ֊
րաց իւրոց ։ Եւ իշխանն Սաբի առեալ զկլին և զորդիսն
Ապիրատին գայր մեծ սգով յԱնի առ Յովհաննէս ։
Եւ Յովհաննէս յոյժ ապաշաւեաց զանիրաւ մահ նորա.
և տայ որդւոց նորա և ամենայն զօրացն զաւառս և
իշխանութիւնս ։

Զայսու ժամանակաւ զօրապետն Դեղմանայ (8)
թաղում զօրօք հասանէր ի գաւառն Հայոց յամուրն
Բջնի ։ Վասակ Պահլաւունի՝ սպարապետն Հայոց,
տէր Բջնոյ, որդւով իւրով Գրիգորիւ և այլ փառա֊
ւորագոյն ազատօքն բազմեալ կայր ի գահոյս . և ու֊
րախացեալ ի գինարբուս, և հայէր ընդ ճանապարհ
լերինն . և ահա գայր ոմն թէզ ։ Զոր տեսեալ Վասա֊
կաց ասէ խաբարբեր է այրն այն ։ Եւ հասանէր
այրն ի դուռն բերդին, և մեծաւ աղաղակաւ ասէր
« զերեցաւ ամենայն գաւառս » ։ Յանկարծ յարու֊
ցեալ քաջն Վասակ յանձն առնէր զտուն իւր և
զամրոցն Գրիգորի՝ որդւոյ իւրոյ . և հապճեպեալ ի
կենարար մարմնոյ և արենէն Քրիստոսի, հագանէր
զրահս և վառէր զինու ի կռիւ հանդերձ ազատօք որ
մերձ պատահեցան . և ոչ ժողովեաց զզօրսն իւր բո֊
վանդակ զի ունէր առս իբրև հինգ հազար ։ Ա.Լ
առեալ զՓղիպպէ և զԳորգ Զորտուանեցն և զքաջն
Միհրան՝ կազմեցան ի պատերազմ հարիւր զօրօք
միայն . և ելին, գնացին դէմ այլազգեացն . և պա֊

տաճկեան բազում զօրաց որք ի գեօղ մի փախուցեալ էին և լցեալ յեկեղեցին. և շուրջ առեալ կոտորէին իբրև զգառինս ։ Յայնժամ քաջն Վասակ գոչեաց զէտ առիւծ և յարձակեցաւ ի վերայ այլազգեացն. և կոտորեցին ի նոցանէ իբրև երեք հազար. եւ որք զերծան՝ գնացին փախստական ի բանակն իւրեանց. և շարժեալ բանակն ամենայն գայ ի վերայ քրիստոնէիցն ։ Իսկ նոցա զմահ յանձն առեալ անկան ի մէջ նոցա, և հերձեալ զբանակն յայս կոյս և յայն կոյս՝ զարմանալի կոտորածս առնէին ։

Իսկ ի զօրաց այլազգեացն ելանէր այր մի ահաւոր և խափշիկ, զոր յաղագս քաջութեանն եօթն գայլ անուանէին. և ի ձայն բարձր աղաղակէր և յուզէր զՎասակ. եւ խափշիկն սև գայր ըմբռնել դէմ Վասակայ. և Վասակ յառաջ երեկ, թրովն եհարկ զնա ի վերայ գլխոյն. և յերկուս հերձաւ և անկաւ յերկիր ։ Մոլորեցան ի միմեանց զօրքն Վասակայ, և ի բազմութենէ զօրաց այլազգեացն ոչ գտանէին զմիմեանս ։ Յայնմ աւուր քաջն Միհրան սպանաւ ի պատերազմին. և Վասակ պատառէր զզօրսն բանակին, և ելեալ դառնայր յետս. և գտեալ ի թշնամեացն հանգիստ խնդրէր զի յոյժ ձանձրացեալ էր ի պատերազմին. և հասեալ ի քարանձաւ մինչ ննջէր ։ Իսկ այր ոմն եկեալ գտանէր զնա, և գիտաց թէ ի թշնամեացն է. եւ ուժով բախեալ ընկէց եւ

ձգեաց զնա ի վերուստ ի վայր . և այնպէս կատա-րեցաւ քաջ զօրականն Քրիստոսի ։

Իսկ ի թուին 421 զօրավարն Յունաց Գեմեսկլեան խաղացեալ բազում զօրօք գայր ի վերայ քաղաքին Մելտինոյ . և շատ նեղեալ սովով և ծարաւով հա-ւանեցոյց զնա . և եկեալ գայ ի վերայ քաղաքին Տիգրանակերտի որ կոչի Ամիթ . և զօրքն Տաճկաց ելեալ ընդդէմ նորա ի պատերազմ, եղեւ խիստ կո-տորուած ի դուռն քաղաքին . և պարտեալ զօրքն Տաճկաց դարձան ի փախուստ եւ մտին ի քաղաքն . եւ զօրքն Յունաց մեծաւ յաղթութեամբ դարձան, և եկին, բանակեցան առ ափն գետոյն որ կոչի Աւալ ։

Յետ սակաւ աւուրց եղև աստուածասաստ բար-կութիւն յերկնից, եւ շնչեաց հողմն սաստիկ մինչզի մթացաւ ի մէջ աւուրն, և խաւարեցան աչք ի տե-սանելոյ . զի զվրանսն և կարասի զօրացն ի բռնութենէ հողմոյն ի գետ անդր լցեալ լինէր ։ Զոր տեսեալ անօրինացն դիմեցին ի վերայ նոցա, եւ կոտորեցին անխնայ . եւ կալան զԳեմեսկլեան եւ իշխանս քա-ռասուն . եւ սակաւք էին որք զերծան ի քրիստո-նէից ։

Ապա ի միւս եկեալ իշխանք այլազգեացն վասն մեծ վնասուն որ եղև ի զօրս քրիստոնէից, եւ զար-հուրեալք երկեան յահէն Նիկեֆոռայ արքային, զի դեռ չէր տարածեալ համբաւ սպանման նորա . եւ

խորհեցան երդմամբ սիրով արձակել ։ Մինչդեռ յայս խորհուրդս էին՝ եհաս համբաւ սպանման Նիկեփորայ . եւ անհոգ եղեալ խնդացին յոյժ , եւ տարան զիշխանան կապած ի Բաղդատ առ խալիֆայն . եւ ամենեքեան անդ մեռան ։ Իսկ Գնեմեակլոսն գրեաց առ Զմշկիկն անէծս ցաւագինս այսպէս թէ « մեք զարիւն մեր հեղաք ի դուրս Տիգրանակերտի . եւ մարմինք մեր չեղեն արժանի գերեզմանի օրհնելոյ . արդ զարիւն մեր ի քէնէ ուզէ Աստուած յօրն դատաստանի թէ ոչ առցես զվրէժ արեան մեր յազգէն Մահմետի » ։ Իբրեւ լուաւ զայս Զմշկիկ շարժեցաւ ի բարկութիւն, եւ ժողովեաց զամենայն զօրսն Յունաց, եւ էառ օգնականս ի Ֆռանկնոյն . եւ կամեցաւ նախ յառաջ Հայոց տիրել . և երեկ, բանակեցաւ ի Կիլիկիայս . եւ ծածկեաց զօրօք զսահմանս Տարօնի . եւ ելաւ համբաւ գալոյ նորա յաշխարհն Հայոց ։

Յայնժամ ժողովեցան առ արքայն Հայոց Աշոտ (9) Կապանին թագաւորն Փիլիպպէ, եւ թագաւորն Աղվանից Գեորգի, եւ Աբաս՝ Կարուց տէրն, եւ Սենեքերիմ՝ Վասպուրականի տէրն, եւ Գուրգէն՝ Անձեւացեաց տէրն, եւ ամէն տունն Հայոց, եւ զօրք արքունի զոր էառ քաջ արքայն Աշոտ և բանակէր ամենայն քաջօքն ի Հարք գաւառին . որոց թիւ համարայն էր հեծելոյն երեք հարիւր հազար եւ վեց հա-

րիւր (10) յորժամ ի գիր առին զօրագլուխքն ։ Եւ երեկ դեսպան Թագաւորին Զմշկայ առ Թագաւորն Աշոտ . եւ տեսաւ զայն մեծ պատրաստութիւն պատերազմի . և գնաց, պատմեաց Թագաւորին ։ Առաքեաց դեսպան Թագաւորն Աշոտ առ արքայն Զմըշկիկ զհետ դեսպաներոյն Յունաց, եպիսկոպոսք եւ վարդապետք . եւ արարին սէր ընդ երկուս Թագաւորս ։

Եւ եղաւ Զմշկիկն Յովհաննէս ի Կիլիկիոյ, և եհաս ի գաւառն Տարօն շատ բազմութեամբ . եկն եւ Թագաւորն Աշոտ շատ զօրօք ընդ առաջ նորա . եւ դիպեցան իրերաց ողջունիւ եւ սիրով . եւ երետ Աշոտ օգնութիւն նմա զօրս ութսուն հազար ձիաւորս, եւ հետեւակ քսան հազար (11), եւ զօրագլուխ զքաջն Գէորգի, և ապուրս և ռոճիկս բազումս . և զեպիսկոպոսն տէր Սարգիս եւ զվարդապետն Ղեւոնդ եւ զիշխանն Իւանէ առաքէ ընդ նոսա . և ինքն դարձաւ յաշխարհն իւր ։

Եւ կայսրն Զմշկիկ գնաց ի կռիւ ի վերայ զօրացն Տաճկաց, եւ արեամբ նոցա ներկեաց զերկիր, եւ շատ բերդս եւ քաղաքս ի հիմանէ շրջեաց . երեք հարիւր քաղաք հնազանդեցոյց մինչ ի դուռն Բաբելոնի որ կոչի Բաղդատ . կոտորեաց զզօրսն Խալիֆային, և խլեաց ի յիւրմէ հարիւր հազար ձի և ջորի . եւ դարձաւ ի վերայ Ամթայ ։ Եւ տէրն Ամթայ կին

էր, և քոյր Համոնոյ ամիրային Տաճկաց ։ Նչաւ կինն ի վերայ պարսպին, աղաղակէր եւ ասէր թէ « ի վերայ կնո՞ջ գաս կռիւ ո՛վ Զմշկիկ՝ եւ չհամարի՞ս քեզ նախատինք » ։ Եւ Թագաւորն սաստ « երդուեալեմ քակել զպարիսպ քաղաքիդ » ։ Եւ ասէ կինն « քակէ՛ զկանդարայն նորա ի վերայ Գդղաթ գետոյ, եւ կատարէ՛ այնով զերդումն քո » ։ Եւ արար այնպէս եւ գնաց ։ Այլ ասէին թէ յառաջ Թագաւորն շաղաշարեալ էր մեղօք ․ քանզի Զմշկիկն այն ի Խոզնայ էր, ի Զմշկածակուցն ․ նոյնպէս և կինն եւս անտի էր ։ Կամէր եւ զՍուռհա քակել ․ եւ վասն շատ վաներոյն խնայեաց և եթող, և գնաց զներքին կողմամբ երկրին Ջերուսաղէմ ․ եւ ազատեաց զամենայն քրիստոնեայսն ի ծառայութենէ անօրինաց ։ Եւ դարձեալ գայ ի Կիլիկիա, և առաքէ զիշխանն Հայոց և զզօրսն եւ զեպիսկոպոս բազում զօրօք եւ պարգևօք առ Թագաւորն Աշոտ, եւ պարգևս Թագաւորին շատ գանձ ոսկի, արծաթ, եւ գիր այսպէս ․

« Աշոտոյ՝ արքայի Հայոց մեծաց, հոգևոր որդւոյ իմոյ ի Տէր խնդալ ։ Ծանիցէ իմաստութիւնդ քո թէ ո՛րչափ եղև ողորմութիւն Աստուծոյ ի վերայ մեր, եւ ետ մեզ յաղթութիւն ի վերայ թշնամեացն մերոց ․ զի ոչ կարացին կալ ի դիմի ։ Վասն որոյ մաչեցաք ի սուր սուսերի զզօրսն Տաճկաց, եւ զմնացուածս արարաք հարկատու մեզ ․ եւ բազում աւա-

րաւ եւ գերութեամբ նոցա դարձաք ի ներքին կողմն աշխարհին, եւ հանաք զնշխարս սուրբ Յակոբայ ի Մծբին քաղաքէ եւ տարաք զհետ մեր ։ Եւ եկաք զներքին կողմամբքս մեր, ջնջեցաք իսպառ զթշնամիս մեր ․ եւ յետ այնր դարձաք եւ ձմերեցաք ի դուրս, և տուաք զօրաց մերոց հռոգ ․ և ապա եկաք ի մեծն Անտաք, առաք զնա, եւ գերեցաք զամէն ատանս նորա շուրջանակի ․ հասաք ի Համս եւ ի Համա ․ եւ հարկատուք մեր հնազանդութեամբ ընկալան զմեզ ։ Գնացաք ի յանտառին Հալպայ ․ և ելան ի պատերազմ դէմ մեր ․ և կոտորեցին զնոսա զօրքն մեր ․ եւ շատ գանձ ոսկի եւ արծաթ եւ աղջկունս խլեցին ի նոցանէ ։ Նոյնպէս արարին զԱնատօլիքն ։ Գնացաք ի Դմշկս, եւ կամեցաք պաշարել զնա ․ իսկ քաղաքապետն՝ այր իմաստուն և ալեոր, ել բազում ծախօք և եկն յառաջ մեզ ․ և աղաչեաց լինել հարկատու մեզ ․ առին ի մէնջ զօրավար, եւ տուին մեզ գիր ծառայութեան ։ Գնացաք եւ ի Տիբերիա ուր Տէրն մեր շրջեալ առնէր զաստուածային սքանչելիսն եւ զնշանս ․ եւ նոքա այլ բերին մեզ գանձս շատ ․ եւ առին ի մէնջ զօրավար, եւ տուին մեզ գիր ծառայութեան ։ Գնացաք ի Նազարէթ ուր սուրբ կոյսն Մարիամ ընկալաւ զաւետիսն ի հրեշտակէն ։ Ելաք ի լեառն Թաբօր ուր Տէրն մեր այլակերպեցաւ ․ եւ երկրպագեցաք ։ Եւ անտի մինչդեռ անդ էաք,

եկին առ մեզ յՌովմէ և յԵրուսաղէմէ, շատ աղա-չեցին տալ մեզ հարկս, եւ առնուլ ի մէնջ զօրա-վարս: Կամեցաք զսուրբ գերեզմանն ազատել ի ծառայութենէ Տաճկաց. եւ սարեցաք բազում հե-ծեալս եւ զօրավարս յամենայն գաւառս. եւ եղեն մեզ հարկատուք: Առաք զԱքքայ եւ զՏրապօլի եւ զամենայն բերդս եւ զքաղաքս ծովեզերովն եւ զՃե-պէլն եւ զՀեսուն եւ զՊուրզաւ. եւ դրաք յամէնն հեծեալս. եւ շահեցաք ի Գաբաւոն զհողաթափն Քրիստոսի, եւ ի Բերիտոն՝ զպատկերն Քրիստոսի, զոր յետ ժամանակաց Հրէայքն խաչեցին, եւ զհերս Յովհաննու Մկրտչի. և առաք, տանեմք ի պահպա-նութիւն աստուածապահ քաղաքին մերոյ Կոստանդ-նուպօլսի: Արդ լսելով զայս ամենայն՝ ուրախ լեր և փառս տուր Աստուծոյ որ ի ձեռն մեր Թագաւորու-թեանս լայն եւ արձակ փառաւորի անունն Քրիս-տոսի: Քանզի ի մեծէն Կեսարիոյ մինչև ի Բաղդատ հնազանդ արարաք ծովեզերովն ի ներքև մեր հրա-մանաց. ընդ որում գոհութիւն տայցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ»: Գրեաց եւ ի Պռօթօսպաթարն եւ ի Տարօնոյ զօրավարն զի տարցեն առ Թագաւորն Հայոց Աշոտ զխուսափուլն եւ դեկան ոսկի երեսուն հազար եւ ծառայս երկու հազար, ձի տասն հազար եւ ջորի հազար վասն սիրոյն եւ միաբանութեանն զոր արար ընդ նմա:

Գրեաց Աշոտ եւ առ վարդապետն Պանտալեոն եւ առ Սպաթարն զի արագ արագ ի Կոստանդնուպօլիս երթիցեն շատ եպիսկոպոսօք մեծ տօն կատարել Քրիստոսի պատկերին եւ հողաթափիցն եւ հերայն Յովհաննու . եւ զի խօսեսցին ընդ վարդապետն Յունաց առաջի արքային . զոր եւ առաքեաց հայրապետն անդանդաղ : Գնացին և մեծաւ պատուով եւ ընծայիւք դարձան ի Շիրակ :

Արդ յետ այսր անկանէր ահ ի սիրտ Թագաւորին և երկիւղ մահու և ահ դատաւորին Աստուծոյ վասն անիրաւ սպանմանն Նիկեփորայ : Եւ յետ հինգ ամի թագաւորութեան իւրոյ առաքեաց և եբեր զորդին Ռոմանոսի . եւ մեծաւ ժողովով եդ զթագն ի գլուխ Վասլին եւ երկիր եպագ նմա . եւ ինքն գնաց, կրօնաւոր եղաւ ի յապաշխարել զմեղս անձին իւրոյ :

Ի թուին 424 եղև կոտորուած զօրացն Հայոց ի գաւառն Անձևացեաց նենգութեամբ Ապլղարիպայ որ էր զօրապետ թագաւորին Անձևացեաց Դերենկայ. և նա ձգեալէր զնա ի պատուոյ ստրատելատութեանն, և եղեալ ի տեղի նորա զոմն Սարգիս : Ընդ որում վիրաւորեալ էր Ապլղարիպն զի էր այր քաջ և պատերազմող : Եւ այսր աղագաւ բանատու լինէր այլազգեացն եւ ասէր թէ՝ ես ոչ կռուիմ ընդ ձեզ . նշան այն, որ իմ վրանն կարմիր է ի վերայ բլրին : Իսկ թագաւորն ազատօքն նստեալ էր անհոգ ի գի-

նարբուան մեծ ուրախութեամբ ։ Եւ յանկասկած եկին ի գիշերի զօրք այլազգեացն ի վերայ նորա, եւ արարին մեծ կոտորած եւ բռնեցին զԹագաւորն, տարան գերի ի Հեր. եւ ի սահմանս վրանի Ապղարիպին չիշխեցին անցանել ։ Ի յայն օրն Վարազ եւ ամենայն վանորայքն անէծս ցաւագինս դրին ի վերայ Ապղարիպին. եւ որոշեցին զնա ի քրիստոնէական հաւատոյն ։ Իսկ Ապղարիպն եկեալ ի միտս լայր զառնապէս, եւ ապաշաւէր զկորուստ ծառայիցն Աստուծոյ. ապա քննէր վասն Թագաւորին թէ յորում բանտի է արգելած ։ Իբրեւ իմացաւ թէ ամիրայն Ապհաճ արձակեաց զնա. եւ յամենայն ժամ հանէ զնա ի խաղ գնդին՝ յորժ ուրախ եղև. և յղարկեաց առ Թագաւորն գաղտ թէ « ի յայս նիշ ժամու զօրօք իմովք սա՛ր կամ (12) յայս անուն տեղւոջ, ի մէջ անտառախիտ ծառոյն. դու զգո՛յշ լեր, եւ յայն օրն ձի սուր հեծիր եւ ե՛լ, փախուցելով առ իս համբր. եւ այլ մի հոգաս »(13)։ Զոր եւ արարն իսկ. սարեց ձի սրընթաց, եւ նովաւ (ել) ի խաղն. եւ առեալ զգունդն տանէր հեռագոյն. եւ թողեալ զնայր առ Ապղարիպն յուսալով յԱստուած ։ Եւ տեսեալ ամիրայն յարձակեցաւ զօրօք զկնի մեծաւ զարմացմամբ. եւ Թագաւորն քաջապէս հասանէր առ Ապղարիպն ։ Եւ ի զօրաց անօրինացն խափշիկ մի՝ այր հզօր, դիմեաց ի յԱպղարիպն. եւ նա եհար

զնա սուսերաւն, եւ պատառեաց զնա մինչեւ յերանան. զոր տեսեալ անօրինացն փախեան: Եւ Ապլղարիպն զօրօք վարէր ի հետ, մինչ մտոյց զամիրայն ի դուռն քաղաքին. եւ քաջապէս եղարկ պողպատ ճկոմն (14) զերկաթէ դուռն. եւ պատառեալ զերկաթն ի թափ անցուցանէր. որ անքակտելի մնաց շատ ժամանակ: Եւ այնպիսի քաջութեամբ դարձաւ և երեր զթագաւորն (15) ի տեղի իւր ազատեալ ի ծառայութենէ. եւ օրհնեցաւ ի վանորէիցն եւ յամենայն բերանոյ: Եւ եղեւ այս ի Ճուաշ գաւառին Հայոց, ի գետղն որ կոչի Բակ՝ սահմանակից Վասպուրականի:

Իսկ ի Թուին 427 փոխեցաւ յաշխարհէ սուրբ հայրապետն Անանիա (16): Եւ հրամանաւ սուրբ թագաւորացն Յովհաննիսի (17) եւ Աշոտոյ ձեռնադրեցաւ ի տեղի նորա Վահան՝ այր սուրբ եւ առաքինի: Յայս ժամանակս իշխան մի Աբլլասոս անուն՝ դրդեալ ի Վասէն՝ Յունաց արքայէն, ժողովեաց առ ինքն շատ ի զօրաց անիրաւաց. եւ շատ վնաս առնէր յաշխարհն Յունաց: Եւ գայր, մտանէր յաշխարհն Հայոց, եւ առնէր շատ կոտորուած. յորոյ վերայ հասեալ զօրքն Հայոց քաջապէս յաղթեցին նմա, եւ փախուցին զհեծեալս նորա. եւ ինքն փախեաւ, գնաց ի Բաղդատ. և յետ երեք տարւոյ դարձաւ յաշխարհն Յունաց, եւ անդ սատակեցաւ:

Ի թուին 432 (18) մեռաւ սուրբ հայրապետն Վահան. եւ դրին ի տեղի նորա զՍտեփաննոս՝ այր բարի հրամանաւ սուրբ Թագաւորացն: Յայս ժամանակս անօրէն ամիրայն Մահլեան զայր ահագին զօրօք ի վերայ աշխարհին Հայոց, եւ աւերէր այրելով եւ գերելով զաշխարհն եւ զեկեղեցիսն. եւ հասանէր յաշխարհն կիւրապաղատին Դաւթի, ի գաւառն Ապահունեաց: Եւ յղէ առ Դաւիթ բանս ամբարտաւանս եւ ասէ տուր ինձ մաղ տասն տարւոյ, եւ զորդիսն քո գրէ՛ ծառայ ինձ. ահա՛ գամ ի վերայ քո. եւ ո՞վ է Աստուած որ փրկէ զքեզ ի ձեռաց իմոց»: Լուեալ զայս Դաւթի ժողովեաց զօրս ի Վրաց եւ ի Հայոց. եւ բանակ հանէր յանուն Տեառն, եւ գնայր ընդ առաջ անօրէնին. եւ իջեալ զօրօք ի սահմանս Ապահունեաց կայր յաղօթս առ Աստուած. եւ զԿամրակէլն զայր քաջ եօթն հարիւր [illegible]ելով դնէր պահապան գիշերոյն: Եւ յառաւօտ[illegible]ճուն զայր ոմն ի զօրաց Տաճկաց հազար[illegible] եւ ի գիշերի Կամրակէլն եւ նա հարուա[illegible]անս: Սակայն մի յառաջ եկեալ էր [illegible] եւ յայնմ [illegible]մու պայծառացաւ [illegible] եւ փայլէին [illegible]ք եւ ամենայն ի [illegible] Զ[illegible] անօրի-նացն կարծ[illegible] քրիստո-նէիցն է [illegible]. եւ Կամրա-կէլն զ[illegible] կալաւ զկինն

Մալմնայ. եւ փութանակի պղջ առնէր Դաւթի որ եւ հասանէր զօրօքն ի վերայ, եւ սաստիկ առնէր կոտորուած. եւ Մալմլանն մազապուրծ եղեալ գնաց մեծաւ ամօթով:

Իսկ զկնի ամաց ինչ անցանելոյ արք անօրէնք ի տանէն Դաւթի խոհեցան սպանանել զԴաւիթ՝ զայր սուրբ և աստուածասէր. և գտին օգնական չարեացն զանօրէն եպիսկոպոսն Իլարիոն. և սա հանգոյն չարեացն Մրջիմիկայ գործեալ՝ խառնեաց զդեղն մահու ի դեղն կենաց ի սուրբ խորհուրդն փրկական, և ետ Դաւթի: Գիտացեալ աստուածասիրին՝ ոչ երկմըտեաց. և եղեն մեծ զարմանք. զի դեղն մահացու եղև դեղ բժշկութեան, և ողջացոյց զցաւս անձին իւրոյ: Իսկ անօրէն եպիսկոպոսն ոչ չատացաւ այնու չարեօք. յաւուր միում մինչ ննջէր Դաւիթ ի սենեկի իւրում, մտեալ առնոյր զբարձն ի սնարուցն. և եդեալ ի վերայ բերանոյն՝ անկեալ ի վերայ խեղ-
ց զերանելին: Զոր յետ սակաւ ինչ աւուրց
նեալ Վասլին զանարժան եպիսկոպոսն և զչար
ակիցսն իւր, կապէր քար ի պարանոցս նոցա, և
ի խորսն Ովկիանոսի:

ւին 434 մեռանէր Տէր Ստեփաննոս. և ձեռ-
այ յաթոռն իւր զՏէր Խաչիկ զի էր այր
ն յոյժ:

ի Թուին 437 եղև սաստիկ շարժ ընդ ամե-

նայն արարածս . և փխոյց զոսկերս Սոփի ի Կոստանդ-նուպօլիս : Եւ ի սոյն ամի առաքէ Վասիլ կայսրն առ Ալեքսան՝ խանն Բուլղարաց, և պատրեալ ի նոցանէ՝ յաղթեցաւ և ամօթալից դարձաւ յետս : Եւ դարձեալ յետ երկուց ամաց եմուտ ի Բուլղարս առ-նուլ զվրէժ կոտորածին իւրոյ . և ոչ այլ ինչ կարաց առնել բայց եթէ աւարաւ դարձաւ ի Կոստանդնու-պօլիս :

Ի թուին 440 մեռաւ Տէր Խաչիկ . և ձեռնադրեաց զՏէր Սարգիս ի տեղի իւր : Յայսմ ամի ելին ի Մըզրայ ազգ Արաբացւոց ի գաւառն Անտիոքայ . և առարին բազում աւարս : Եւ զօրքն Յունաց ելին ընդդէմ նոցա ի պատերազմ . եւ յաղթեալ ի նո-ցանէ՝ եղեն փախստական . և Արաբացիքն կալան զխչխանս ի նոցանէ և տարան յԵգիպտոս : Իսկ յետ երկուց ամաց եղանէր Տուկ մի Յունաց բազում զօ-րօք յաշխարհն Հայոց . և սկսան կոտորել զհաւա-տացեալսն Քրիստոսի իբրև զանօրէնս : Ելին ընդ-դէմ նոցա զօրքն Հայոց , և մաշեցին զնոսա ի սուր սուսերի . և մնացեալքն ամօթալից դարձան : Եւ ի սոյն ամի երևեցաւ աստղն գիսաւոր յերկինս :

Ի թուին 449 եղև սէր ընդ Վասիլն և ընդ Սենե-քերիմ արքայն : Եւ յայսմ ամի վախճանեցաւ մարզ-պանն տէրն Վարաժնունեաց խաղաղութեամբ :

Ի թուին 456 դարձեալ եմուտ Վասիլն ի Բուլ-

զարս բազում զօրօք . և բազում ժամանակս արար անդ մեծաւ պատերազմաւ ։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ եղև խռովութիւն մեծ ի Կոստանդնուպօլիս. քանզի մոլորեցան ի ճշմարիտ զատկէն և արարին տօն գալստեան Տեառն ։ Նոյնպէս արարին յԵրուսաղէմ . և առ հպարտութեան (19) իւրեանց հակառակեալ բաժանեցան յամենայն ազգաց ։ Եւ յայնմ զատկի ոչ վառեցաւ լոյսն ։ Իսկ ազգն անօրինաց որ կային յԵրուսաղէմ՝ իբրև տեսին զայնպիսի մոլորութիւն, յարձակեցան սրով յաղօթարարսն, և կոտորեցին, մինչև լցաւ արեամբ յատակ տաճարին յարութեան ։

Իսկ Թագաւորն Վասիլ Հնազանդեցուցեալ զԲուլղարս դարձաւ ի Կոստանդնուպօլիս . և իմացեալ զմոլորական զատիկն՝ հարցանէր ընդ իմաստունսն Յունաց . և Նոքա ստայօդ բանիւք հաւանեցուցանել կամէին և սկսան զԹագաւորն մոլորեցուցանել ։ Զոր ծանեաւ Թագաւորն և գրէ ի Հայս առ արքայն Հայոց Յովհաննէս զի վասն այս բանից Թէզ առաքէ զՅովսէփ Հայր Անձևացի եւ զԿողեռն Յովհաննէս ։ Եւ Նոքա ոչ կամեցան գնալ անդ . այլ Թղթով ծանուցին զպատճառն . որում ոչ հաւանեցան կղերիկոսքն Յունաց . վասն որոյ միաբանեալ գրէ առ կաԹողիկոսն Տէր Սարգիս և առ Թագաւորն Յովհաննէս վասն դմին իրի ։ Եւ Նոքա առաքեն առ Նա

զվարդապետն Սամուէլ. ընդ որ յոյժ ուրախ եղև ։ Եւ կացուցանէ յատենի խօսիլ ընդ իմաստունսն Յունաց. եւ նոքա յառաջ բերին զամենայն գրեալսն տանն Յունաց, եւ ոչ կարացին ստել զնա ի ճշմարտութենէն ։ Եւ սկիզբն արար Սամուէլն յառաջին ատուր արարչութենէն, և կացուցանէր անսխալ մինչ ի պատկեր վերջին աւուրն. և զամենայն պատճառս պատճենիցն ըստ առաջին իմաստնոցն հաստատ կացուցանէր ։ Հաճեցաւ արքայն ընդ բանս նորա. եւ ցուցին իմաստունքն Յունաց այր մի Ջհուտ ի Կիպրոս կղզի՝ յոյժ իմաստուն եւ հզօր ի գիտութիւնս. զոր թագաւորն տարեալ ի Կոստանդնուպօլիս ։ Որոյ կացեալ յատենի հաւանեցաւ վարդապետին Հայոց, եւ յոյժ գովեաց զիմաստութիւն նորա, եւ յամօթ արար զիմաստունս Յունաց ։ Ընդ որ սքանչեցաւ թագաւորն ընկէց զնոսա ի պատուոյ. եւ զվարդապետն Հայոց բազում պատուով դարձոյց յաշխարհս ։

Դարձեալ՝ յաւուրս Վաղինի, ի թուին 457 եղաւ սաստ մի ի տեսիլ հրոյ. եւ եղև շարժ սաստիկ ընդ ամենայն երկիր ։ Զհետ այն բարկութեանն ցաւ անկանէր որ անուանէր խոցկէկ, եւ երևէր յայտնապէս ի մարմինն. եւ ի դառնութենէն ոչ ժամանէր (հիւանդն) հասանել հաղորդութեան. այլ առժամայն խեղդէր ցաւն զմարդ և զանասուն. և բազումք մեռանէին ։

Ի թուին 460 դարձեալ եմուտ Վասիլն ի Բուլղարս, եւ աւերեաց զաշխարհն արեւմտից. եւ մահաղեղով զթագաւորն Ալօսիան (20) եհան ի կենաց. եւ զկին եւ զորդիս նորա էած ի գերութիւն ի Կոստանդնուպօլիս ։

Ի թուին 465 եղեւ աստուածասաստ բարկութիւն ի վերայ քրիստոնէից ։ Եւ անթիւ խուժադուժ ազգն որ Մուղալ կոչի, ահագին շատ. և մտան յաշխարհն Հայոց, ի գաւառն Վասպուրականի, և սկսան անխընայ կոտորել զհաւատացեալսն ի Քրիստոս ։ Համահամբաւն առ Սենեքերիմ ։ Յայնժամ առաքէր նա զԴաւիթ՝ զորդի իւր, ամենայն զօրօք դէմ նոցա ։ Հարան ընդ միմեանս ահաւոր կռուով. և տեսին զնոսա աղեղնաւորս և հերարձակ իբրև զկանայս. և սկսան նետելով խոցել զձիս Հայոց վասն զի անպատրաստ էին դէմ նետից զօրք Հայոց ։ Իսկ Դաւիթ ի յուժ իւր վստահացեալ ոչ կամէր դառնալ ի պատերազմէն ։ Եւ յորժամ դարձան յետս, պատմեցին Սենեքերիմայ զզանազան կերպարանաց այլազգեացն ։ Եւ նա յոյժ վիրաւորեալ ոչ ելեր եւ ոչ էարբ. այլ լայր և ապաշաւէր զաւերումն աշխարհին Հայոց և զկորուստ քրիստոնէից ։ Յայնժամ խորհեցաւ տալ զաշխարհն հայրենեաց յարքայն Յունաց Վասիլն եւ առնուլ իւր զՍեւաստ. եւ փաղփողակի գրէր առ թագաւորն ։ Զոր լուեալ Վասիլն ուրախ

եկին առ մեզ յՌուամէ և յԵրուսաղէմէ, չատ աղա-չեցին տալ մեզ հարկս, եւ առնուլ ի մէնջ զօրա-վարս : Կամեցաք զսուրբ գերեզմանն ազատել ի ծառայութենէ Տաճկաց. եւ սարեցաք բազում հե-ծեալս եւ զօրավարս յամենայն գաւառս. եւ եղեն մեզ հարկատուք : Առաք զԱքքայ եւ զՏրապօլի եւ զամենայն բերդս եւ զքաղաքս ծովեզերովն եւ զՃե-պէլն եւ զՀեսուն եւ զՊուրզաւ. եւ դրաք յամէնն հեծեալս. եւ շահեցաք ի Գաբաւոն զհողաթափն Քրիստոսի, եւ ի Բերիտոն՝ զպատկերն Քրիստոսի, զոր յետ ժամանակաց Հրէայքն խաչեցին, եւ զհերս Յովհաննու Մկրտչի. և առաք, տանեմք ի պահպա-նութիւն աստուածապահ քաղաքին մերոյ Կոստանդ-նուպօլսի : Արդ լսելով զայս ամենայն՝ ուրախ լեր և միաս տուր Աստուծոյ որ ի ձեռն մեր թագաւորու-թեանս լայն եւ արձակ փառաւորի անունն Քրիս-տոսի : Քանզի ի մեծէն Կեսարիոյ մինչև ի Բաղդատ հնազանդ արարաք ծովեզերովն ի ներքև մեր հրա-մանացս. ընդ որում գոհութիւն տայցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ » : Գրեաց եւ ի Պռօթօսպաթարն եւ ի Տարօնոյ զօրավարն զի տարցեն առ թագաւորն Հայոց Աշոտ զխռասաֆուլն եւ զեկան ոսկի երեսուն հազար եւ ծառայս երկու հազար, ձի տասն հազար եւ ջորի հազար վասն սիրոյն եւ միաբանութեանն զոր արար ընդ նմա :

Գրեալ Աշոտ եւ առ վարդապետն Պանտալեոն եւ առ Սպաթարն զի արագ արագ ի Կոստանդնուպօլիս երթիցեն շատ եպիսկոպոսօք մեծ տօն կատարել Քրիստոսի պատկերին եւ հողաթափացն եւ հերացն Յովհաննու . եւ զի խօսեսցին ընդ վարդապետսն Յունաց առաջի արքային . զոր եւ առաքեաց հայրապետն անդանդաղ ։ Գնացին և մեծաւ պատուով եւ ընծայիւք դարձան ի Շիրակ ։

Արդ յետ այսր անկանէր ահ ի սիրտ Թագաւորին և երկիւղ մահու և ահ դատաւորին Աստուծոյ վասն անիրաւ սպանմանն Նիկեփօռայ ։ Եւ յետ հինգ ամի թագաւորութեան իւրոյ առաքեաց և եբեր զորդիսն Ռոմանոսի . եւ մեծաւ ժողովով եդ զթագն ի գլուխ Վասլին եւ երկիր եպագ նմա . եւ ինքն գնաց, կրօնաւոր եղաւ ի յապաշխարել զմեղս անձին իւրոյ ։

Ի թուին 424 եղև կոտորուած զօրացն Հայոց ի գաւառն Անձևացեաց նենգութեամբ Ապլղարիպայ որ էր զօրապետ Թագաւորին Անձևացեաց Դերենկայ. և նա ձգեալ էր զնա ի պատուոյ սորատեղատութեանն, և եդեալ ի տեղի նորա զոմն Սարգիս ։ Ընդ որում միրաւորեալ էր Ապլղարիպն զի էր այր քաջ և պատերազմող ։ Եւ այսր աղագաւ բանատու լինէր այլազգեացն եւ ասէր թէ՝ ես ոչ կռուիմ ընդ ձեզ . նշան այն, որ իմ վրանն կարմիր է ի վերայ բլրին ։ Իսկ Թագաւորն ազատօրէն նստեալ էր անհոգ ի գի-

նարբուան մեծ ուրախութեամբ ։ Եւ յանկարծ եկին ի գիշերի զօրք այլազգեացն ի վերայ նորա, եւ արարին մեծ կոտորուած եւ բռնեցին զթագաւորն, տարան գերի ի Հեր . եւ ի սահմանս վրանի Ապլղա-րիպին չիշխեցին անցանել ։ Ի յայն օրն Վարազ եւ ամենայն վանորայքն անէծս ցուցագինս դրին ի վերայ Ապլղարիպին . եւ որոշեցին զնա ի քրիստոնէական հաւատոյն ։ Իսկ Ապլղարիպն եկեալ ի միտս լայր դառնապէս, եւ աղաչաւէր զկորուստ ծառայիցն Աստուծոյ . ապա քննէր վասն թագաւորին թէ յո-րում բանտի է արգելած ։ Իբրեւ իմացաւ թէ ամի-րայն Ապլհամ արձակեաց զնա . եւ յամենայն ժամ հանէ զնա ի խաղ գնդին՝ յոյժ ուրախ եղեւ . և յղարկեաց առ թագաւորն գաղտ թէ « ի յայս նիշ ժա-մու զօրօք խմռէք սա՛ր կամ (12) յայս անուն տեղւոյ, ի մէջ անտառախիտ ծառոյն . դու զգո՛յշ լեր, եւ յայն օրն ձի սուր հեծիր եւ ե՛լ, փաղուելով առ իս համբր. եւ այլ մի՛ հոգաս »(13)։ Զոր եւ արարն իսկ . սարեց ձի սրընթաց, եւ նովաւ (ել) ի խաղն . եւ առեալ զգունդն տանէր հեռագոյն . եւ թողեալ գնայր առ Ապլղարիպն յուսալով յԱստուած ։ Եւ տեսեալ ամիրայն յարձակեցաւ զօրօք զկնի մեծաւ զարմացմամբ . եւ թագաւորն քաջապէս հասանէր առ Ապլղարիպն ։ Եւ ի զօրաց անօրինացն խափշիկ մի՝ այր հզօր, դիմեաց ի յԱպլղարիպն . եւ նա եհար

զնա սուսերաւն, եւ պատառեաց զնա մինչեւ յերանան. զոր առեալ անօրինացն փախեան: Եւ Ապլղարիպն զօրօք վարէր ի հետ, մինչ մտոյց զամիրայն ի դուռն քաղաքին. եւ քաջապէս եղարկ պողպատ ճկոյլն (14) զերկաթէ դուռն. եւ պատառեալ զերկաթն ի թափ անցուցանէր. որ անքակտելի մնաց շատ ժամանակ: Եւ այնպիսի քաջութեամբ դարձաւ և եբեր զԹագաւորն (15) ի տեղի իւր ազատեալ ի ծառայութենէ. եւ օրհնեցաւ ի վանորէիցն եւ յամենայն բերանոյ: Եւ եղեւ այս ի Ձուաշ գաւառին Հայոց, ի գեօղն որ կոչի Բակ՝ սահմանակից Վասպուրականի:

Իսկ ի Թուին 427 փոխեցաւ յաշխարհէ սուրբ հայրապետն Անանիա (16): Եւ հրամանաւ սուրբ Թագաւորացն Յովհաննիսի (17) եւ Աշոտոյ ձեռնադրեցաւ ի տեղի նորա Վահան՝ այր սուրբ եւ առաքինի: Յայս ժամանակս իշխան մի Աբկլասոս անուն՝ դրդեալ ի Վասլէն՝ Յունաց արքայէն, ժողովեաց առ ինքն շատ ի զօրաց անիրաւաց. եւ շատ վնաս տանէր յաշխարհն Յունաց: Եւ դայր, մտանէր յաշխարհն Հայոց, եւ առնէր շատ կոտորուած. յորոյ վերայ հասեալ զօրքն Հայոց քաջապէս յաղթեցին նմա, եւ փախուցին զհեծեալս նորա. եւ ինքն փախեաւ, գնաց ի Բաղդատ. և յետ երեք տարւոյ դարձաւ յաշխարհն Յունաց, եւ անդ սատակեցաւ:

Ի Թուին 432 (18) մեռաւ սուրբ հայրապետն Վահան. եւ դրին ի տեղի նորա զՍտեփաննոս՝ այր բարի հրամանաւ սուրբ Թագաւորացն: Յայս ժամանակս անօրէն ամիրայն Մալմլան գայր ահագին զօրօք ի վերայ աշխարհին Հայոց, և աւերէր այրելով եւ գերելով զաշխարհն եւ զեկեղեցիսն. և հասանէր յաշխարհն կիւրապաղատին Դաւթի, ի գաւառն Ապահունեաց: Եւ յղէ առ Դաւիթ բանս ամբարտաւանս եւ ասէ. տո՛ւր ինձ մալ տասն տարւոյ, եւ զորդիսն քո դրէ՛ ծառայ ինձ. ահա՛ գամ ի վերայ քո. եւ ո՞վ է Աստուած որ փրկէ զքեզ ի ձեռաց իմոց »: Լուեալ զայս Դաւթի ժողովեաց զօրք ի Վրաց եւ ի Հայոց. և բանակ հանէր յանուն Տեառն, և գնայր ընդ առաջ անօրինին. եւ իջեալ զօրօք ի սահմանս Ապահունեաց կայր յաղօթս առ Աստուած. եւ զԿամրակէլն զայր քաջ եօթն հարիւր հեծելով դնէր պահապան գիշերոյն: Եւ յառաւօտուն պահուն գայր ոմն ի զօրաց Տաճկաց հազար մարդով. եւ ի գիշերի Կամրակէլն եւ նա հարան ընդ միմեանս: Սակաւ մի յառաջ եկեալ էր ցօղ անձրեւի. եւ յայնմ ժամու պայծառացաւ լոյս լուսնին. եւ փայլէին լերինք եւ ամենայն ի տեսիլ երեւեալ: Զայս տեսեալ անօրինացն կարծեցին թէ՝ բազմութիւն զօրաց քրիստոնէիցն է. և ահաբեկեալ դարձան յետս. և Կամրակէլն զհետ երթայր եւ կոտորէր. եւ կալաւ զկինն

Մալմնայ. եւ փութանակի պաղ առնէր Դաւթի որ եւ հասանէր զօրօքն ի վերայ, եւ սաստիկ առնէր կոտորուած. եւ Մալմլանն մազապուրծ եղեալ գնայ մեծաւ ամօթով:

Իսկ զկնի ամաց ինչ անցանելոյ արք անօրէնք ի տանէն Դաւթի խորհեցան սպանանել զԴաւիթ՝ զայր սուրբ և աստուածասէր. և գտին օգնական չարեացն զանօրէն եպիսկոպոսն Իլարիոն. և սա հանգոյն չարեացն Մրջմնիկայ գործեալ՝ խառնեաց զդեղն մահու ի դեղն կենաց ի սուրբ խորհուրդն փրկականն, և ետ Դաւթի: Գիտացեալ աստուածասիրին՝ ոչ երկմտեաց. և եղեն մեծ զարմանք. զի զդեղն մահացուցիչ եղև դեղ բժշկութեան, և ողջացոյց զցաւս անձին իւրոյ: Իսկ անօրէն եպիսկոպոսն ոչ շատացաւ այնու չարեօք. յաւուր միում մինչ ննջէր Դաւիթ ի սենեկի իւրում, մտեալ առնոյր զքարձն ի սնարոցն. և եդեալ ի վերայ բերանոյն՝ անկեալ ի վերայ խեղդեաց զերանելին: Զոր յետ սակաւ ինչ աւուրց ըմբռնեալ Վաղլին զանարժան եպիսկոպոսն և զչար գործակիցսն իւր, կապէր քար ի պարանոցս նոցա, և ձգէր ի խորսն Ովկիանոսի:

Ի թուին 434 մեռանէր Տէր Ստեփաննոս. և ձեռնադրեաց յաթոռն իւր զՏէր Խաչիկ զի էր այր իմաստուն յոյժ:

Իսկ ի թուին 437 եղև սաստիկ շարժ ընդ ամե-

նոյն արարածս. և փլոյց զուլրս Սոփի ի Կոստանդնուպօլիս ։ Եւ ի սոյն ամի առաքէ Վասիլ կայսրն առ Ալօախան՝ Խանն Բուլղարաց, և պատրեալ ի նոցանէ՝ յաղթեցաւ և ամօթալից դարձաւ յետս ։ Եւ դարձեալ յետ երկուց ամաց եմուտ ի Բուլղարս առնուլ զվրէժ կոտորածին իւրոյ . և ոչ այլ ինչ կարաց առնել բայց եթէ աւարաւ դարձաւ ի Կոստանդնուպօլիս ։

Ի թուին 440 մեռաւ Տէր Խաչիկ . և ձեռնադրեաց զՏէր Սարգիս ի տեղի իւր ։ Յայսմ ամի եկին ի Մըսրայ ազգ Արաբացւոց ի գաւառն Անտիոքայ . և արարին բազում աւերս ։ Եւ զօրքն Յունաց եկին ընդդէմ նոցա ի պատերազմ . եւ յաղթեալ ի նոցանէ՝ եղեն փախստականք . և Արաբացիքն կալան զիշխանս ի նոցանէ և տարան յԵգիպտոս ։ Իսկ յետ երկուց ամաց եղանէր Տուկ մի Յունաց բազում զօրօք յաշխարհն Հայոց . և սկսան կոտորել զՀաւատացեալսն Քրիստոսի իբրև զանօրէնս ։ Ելին ընդդէմ նոցա զօրքն Հայոց, և մաշեցին զնոսա ի սուր սուսերի . և մնացեալքն ամօթալից դարձան ։ Եւ ի սոյն ամի երևեցաւ աստղն գիսաւոր յերկինս ։

Ի թուին 449 եղև սէր ընդ Վասիլն և ընդ Սենեքերիմ արքայն ։ Եւ յայսմ ամի վախճանեցաւ մարդպանն տէրն Վարաժնունեաց խաղաղութեամբ ։

Ի թուին 456 դարձեալ եմուտ Վասիլն ի Բուլ-

զարս բազում զօրօք . և բազում ժամանակս արտ անդ մեծաւ պատերազմաւ ։ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ եղև խռովութիւն մեծ ի Կոստանդնուպօլիս. քանզի մոլորեցան ի ճշմարիտ զատկէն և արարին տօն գալստեան Տեառն ։ Նոյնպէս արարին յԵրուսաղէմ . և առ հպարտութեան (19) իւրեանց հակառակեցան բաժանեցան յամենայն ազգաց ։ Եւ յայնմ զատկի ոչ վառեցաւ լոյսն ։ Իսկ ազգն անօրինաց որ կային յԵրուսաղէմ՝ իբրև տեսին զայնպիսի մոլորութիւն, յարձակեցան սով յաղօթարարսն, և կոտորեցին, մինչև լցաւ արեամբ յատակ տաճարին յարութեան ։

Իսկ Թագաւորն Վասիլ հնազանդեցուցեալ զԲուլղարս դարձաւ ի Կոստանդնուպօլիս . և խնդացեալ զմոլորական զատիկն՝ հարցանէր ընդ իմաստունսն Յունաց . և նոքա ստայօդ բանիւք հաւանեցուցանել կամէին և սկսան զԹագաւորն մոլորեցուցանել ։ Զոր ծանեաւ Թագաւորն և գրէ ի Հայս առ արքայն Հայոց Յովհաննէս զի վասն այս բանից Թէզ առաքէ զԹովլէփ հայր Անձևացի եւ զԿողեռն Յովհաննէս ։ Եւ նոքա ոչ կամեցան գնալ անդ . այլ Թղթով ծանուցին զպատճառն . որում ոչ հաւանեցան կղերիկոսքն Յունաց . վասն որոյ միւսանգամ գրէ առ կաթողիկոսն Տէր Սարգիս և առ Թագաւորն Յովհաննէս վասն դմին իրի ։ Եւ նոքա առաքեն առ նա

զվարդապետն Սամուէլ . ընդ որ յոյժ ուրախ եղև ։ Եւ կացուցանէ յատենի խօսիլ ընդ իմաստունսն Յունաց . եւ նոքա յառաջ բերին զամենայն գրեալսն տանն Յունաց, եւ ոչ կարացին ստել զնա ի ճշմարտութենէն ։ Եւ սկիզբն արար Սամուէլն յառաջին աւուր արարչութենէն, և կացուցանէր անսխալ մինչ ի պատկեր վերջին աւուրն . և զամենայն պատճառս պատճենիցն ըստ առաջին իմաստնոցն հաստատ կացուցանէր ։ Հաճեցաւ արքայն ընդ բանս նորա . եւ ցուցին իմաստունքն Յունաց այր մի Ջհուտ ի Կիպրոս կղզի՝ յոյժ իմաստուն եւ հզօր ի գիտութիւնս . զոր Թագաւորն տարեալ ի Կոստանդնուպօլիս ։ Որոյ կացեալ յատենի հաւանեցաւ վարդապետին Հայոց, եւ յոյժ գովեաց զիմաստութիւն նորա, եւ յաղթ արար զիմաստունս Յունաց ։ Ընդ որ սքանչացեալ Թագաւորն ընկէց զնոսա ի պատուոյ. եւ զվարդապետն Հայոց բազում պատուով դարձոյց յարևելս ։

Դարձեալ՝ յաւուրս Վալին, ի Թուին 457 եղաւ աստղ մի ի տեսիլ հրոյ . եւ եղև շարժ սաստիկ ընդ ամենայն երկիր ։ Զհետ այն բարկութեանն ցաւ անկանէր որ անուանէր խոյլիկ, եւ երևէր յայտնապէս ի մարմինն . եւ ի դառնութենէն ոչ ժամանէր (հիւանդն) հասանել հաղորդութեան . այլ առժամայն խեղդէր ցաւն զմարդ և զանասուն . և բազումք մեռանէին ։

Ի Թուին 460 դարձեալ եմուտ Վասիլն ի Բուլղարս, եւ աւերեաց զաշխարհն արեւմտից. եւ մահաղեղով զԹագաւորն Ալօսիան (20) եհան ի կենաց. եւ զկին եւ զորդիս նորա էած ի գերութիւն ի Կոստանդնուպօլիս:

Ի Թուին 465 եղեւ սաստկածաւալ բարկութիւն ի վերայ քրիստոնէից: Եւ անթիւ խուժադուժ ազգն որ Մուղալ կոչի, ահագին չափ. և մտան յաշխարհն Հայոց, ի գաւառն Վասպուրականի, և սկսան անխընայ կոտորել զհաւատացեալսն ի Քրիստոս: Հասաւ համբաւն առ Սենեքերիմ: Յայնժամ առաքէր նա զԴաւիթ՝ զորդի իւր, ամենայն զօրօք դէմ նոցա: Հարան ընդ միմեանս ահաւոր կռուով. և տեսին զնոսա աղեղնաւորս և հերարձակ իբրև զկանայս. և սկսան նետելով խոցել զզօրս Հայոց վասն զի անպատրաստ էին դէմ նետից զօրք Հայոց: Իսկ Դաւիթ ի յուժ իւր վստահացեալ ոչ կամէր դառնալ ի պատերազմէն: Եւ յորժամ դարձան յետս, պատմեցին Սենեքերիմայ զզանազան կերպարանս այլազգեացն: Եւ նա յոյժ վիրաւորեալ ոչ եկեր եւ ոչ էարբ. այլ լայր և ապաշաւէր զաւերումն աշխարհին Հայոց և զկոտորուած քրիստոնէից: Յայնժամ խորհեցաւ տալ զաշխարհն հայրենեաց յարքայն Յունաց Վասիլն եւ առնուլ իւր զՍեբաստ. եւ փաղփաղակի գրէր առ Թագաւորն: Զոր լուեալ Վասիլն ուրախ

եղև յոյժ. և տայ նմա զԱլանսն։ Եւ տայր Սենեքե-րիմ զաշխարհն Վասպուրականի թեմի բերդս երկո-տասան, գեօղս չորս հազար և չորս հարիւր. զվանորայս ոչ ետ. այլ պահեաց իւր աղօթարարս. և զայլն ամենայն ետ դրում ի Վասիլն. և հարիւր հնգետասան վանք այլ ետ։ Եւ առաքեաց առնուլ զորդին նորա Դաւիթ թագաւորական իշխանութեամբ. և յղար-կեց ի Հեռան որդին աղատանաց երեք հազար և զեղջիւ-րաւորս և բարձած ջորի զանձով երեք հարիւր և պէսպէս սարութեամբ և ոսկի ձի հազար։ Եւ այս-պէս փառօք մտաւ Դաւիթ ի Կոստանդնուպօլիս. և զողջագուրեցաւ կայսրն ընդ առաջ նորա. և զարդարե-ցին զփողոցն և զճանապարհն. և շատ գանձս ցա-նէին ի վերայն ընդ որ գնայր։ Եւ խիստ ուրախացաւ թագաւորն ընդ տեսիլն Դաւթի, և տարաւ ի սուրբն Սոֆի, և արար որդեգիր։ Եւ ամենայն իշխանքն խիստ մեծարէին զնա զէտ որդի թագաւորի։ Եւ եղեւ Սենեքերիմ ամենայն տամբ և ընտանեօք, եկն ի Սեւաստ, և անդ տիրացաւ։

Դարձեալ՝ ի թուին 470 եկ Վասիլն յարձակեալ ան-թիւ զօրօք, և խնդրեաց զԱնի և զԿարս։ Եւ Յովհան-նէս՝ որդի Գագկայ, խորհեցաւ տալ վասն թուղ-թեան սրտի իւրոյ։ Իսկ Վասիլն գնաց յաշխարհն իւր. և գրեաց առ Գագիկ՝ թագաւորն Կարսայ, զայս նմա ի հնազանդութիւն, զոր ոչ առ յանձն։ Յայն-

ժամ գայ Վասիլն զօրօք ի վերայ նորա . եւ զօրքն Վրաց գնացին ընդդէմ նորա ։ Եւ Ըռատն եւ Ջոյատն արք քաջք՝ եղբարք Լիպարտին, ուժգին բախէին զզօրսն Վասլին՝ մինչեւ սպանաւ Ըռատն ի խրել ձիոյն իւրոյ ի Ջխաբուխ ղտեղիս . և ապա փախչէին զօրքն Վրաց առաջեւ զօրաց Վասլին ։ Եւ կեցաւ Վասիլն անդ ամիս երիս, մինչեւ հաւանեցոյց և գնաց. և երեկ ի Տրապիզոն ձմերեց ։

Գնաց առ Թագաւորն Վասիլ Տէր Պետրոս կաթողիկոս և Յովհաննէս Կոզեռն բազում սպասուք . եւ Թագաւորն մեծարեաց զնա մեծ պատուով . եւ հասեալ ի մեծ օր մկրտութեանն Քրիստոսի մեծարեաց Թագաւորն զՏէր Պետրոս եւ զվարդապետսն Հայոց . եւ երեսս կանգնեցնել բարձր քան զառաջնորդսն Յունաց ։ Եւ նախ Տէր Պետրոսի հրամայեցաւ օրհնել զՋուրն . որ իբրեւ ելից զսուրբ մեռոնն ի ջուրն՝ հուր սաստիկ երեւէր ի ջրին վերայ . եւ կապեցաւ ջուրն պահ մի ։ Եւ տեսեալ Թագաւորն եւ ամէն ժողովն զարմացան ։ Եւ խոնարհեալ Թագաւորն արկանէր զօրհնեալ ջուրն ի վերայ գլխոյն աջովն Պետրոսի ։ Եւ դարձաւ Տէր Պետրոս յաշխարհն Հայոց ։

Իսկ Վասիլն գայ յետ ժամանակաց Աթենաւոր ի ծածուկ երեք հաւատարիմ մարդով . եւ գայ ի Սելեան որ կոչի Պաղակծիակ . եւ ի հօրէն առնու

զքրիստոսական կնիքն ։ Եւ յայնմհետէ եղև որպէս հայր աշխարհիս Հայոց ։

Իսկ ի թուին 471 մեռաւ Տէր Սարգիս կաթողիկոսն (21)․ և նստի Տէր Պետրոս։ Յայսմ ամի իշխան ոմն յաղթանգամ ի տանէն Յունաց Նիկեփոռ անուն ծովիզ՝ ապստամբեաց ի վերայ Վասլին․ և կոչեաց յիւր միաբանութիւն զթագաւորն Վրաց Գորգի եւ զորդիսն Գագկայ Յովհաննէս եւ Աշոտ ։ Գնաց եւ յահէ նորա Դաւիթ առ նա զօրօքն Հայոց․ եւ եղև ահ մեծ ի վերայ Վասլին ։ Եւ յղեաց Վասիլն աղաչանս առ Դաւիթ զի հնարեսցէ զկորուստ նորա ։ Եւ ծովիզն յոյժ սիրէր զԴաւիթ․ եւ խոստացաւ նրատուցանել զնա յաթոռ թագաւորութեան Հայոց ։ Բայց Դաւիթ չկամեցաւ ստել զդաշինս Վասլին․ և յաւուր միում մինչ գնայր ի տուն իւր խնամութեան ազագաւ, ելաւ Նիկեփոռ միայն զհետ․ եւ զրկեալ զնա աղաչէր դառնալ յետս ։ Իսկ Դաւիթ խաթէր մարդկանցն․ և նոյն ժամն սպանին զծովիզն․ եւ զօրքն նորա փախեան ։ Լսեց Վասիլն եւ ուրախացաւ․ և տայ օծիտ Դաւթի զկեսարիա և զՏամնդաւ և զԽաւատանէք հանդերձ սահմանօքն ։

Եւ Վասիլ մեծ զայրացմամբ գայր ի վերայ Գորգի՝ թագաւորին Վրաց․ եւ առջև Ջիոնիս մեծ բերդին արարին մեծ կռիւ ։ Եւ Գորգի փախեաւ եւ անկաւ յամուր բերդ․ եւ գրէր զանձն ծառայ Վասլին, եւ

տայ զորդին պատանդ ։ Ցետ այսորիկ գնաց Վասիլն յաշխարհն Պարսից. եւ բնակէր ի դուռն քաղաքին Հերայ . եւ էր ժամանակն ամառն ։ Եւ օր մի երեկ շատ ձիւն ի վերայ հեծելցն, և չգիտէին թէ ինչ առնէին . եւ փախեան ի մեծ տապնապէն . եւ ծովացաւ երկիրն ի շատ ջրէն . եւ եկին ի տիղմ, եւ չկարէին անցանել ի տղմոյն. և չգիտէին թէ զինչ արասցեն ։ Ապա թագաւորն կոտորեալ ի հետեւակացն երեքտասան հազար մարդ՝ լցին ի մօրատն, եւ անցան ի վերայ. և եկին ձմերել ի Մելտինի. և անտի գնացին ի Կոստանդնուպոլիս ։

Ի ժամանակս Վասլին, ի թուին 478 երեւեցաւ յերկինս սոսկալի նշան՝ որպէսթէ պատառեցաւ երկինքն, եւ լոյս սաստիկ յերկիր անկաւ . եւ զահի հարան ամենեքեան ընդ լուսոյն հեղումն ։ Ցայնժամ ժողովեցան առ վարդապետն Հայոց Յովհաննէս Կոզեռն, եւ հարցանէին վասն սոսկալի նշանին ։ Եւ նա արտասուօք սկսաւ պատմել զչարութիւն յետին ժամանակիս, զոր ինչ գալոց էր ի վերայ երկրիս ։

Եւ յայս տարի մեռաւ Վասիլն . և տայ զթագաւորութիւնն ի Կոստանդին՝ եղբայրն իւր. և յանձնեաց ի նա զաշխարհն Հայոց, կացեալ թագաւոր ամս քառասուն եւ ութ (22) . եւ զԱտոմ եւ զԴաւիթ՝ զորդիսն Սենեքերիմայ, եւ զԱպուսահլն եւ զԿոստանդինն եւ զամենայն իշխանս Հայոց հազարար-

ձուլթեամբ յանձնէր ի նա, եւ զամենայն աշխարհն Հայոց ։

Ցայսմ ամի մեռանէր Սենեքերիմ արքայն . եւ թաղեցին ի Վարագայ վանսն . եւ նստաւ յաթոռն Դաւիթ ։ Մեռաւ և թագաւորն Վրաց Գորգի . և նստաւ Բագրատ՝ որդի նորա ։ Իսկ Կոստանդին՝ արքայն Յունաց, եղեւ այր բարի և ողորմած . և զամենայն բանտարգեալս ազատեաց . եւ շրջեաց զոռնեմն կորսանեան յորում Վասիլն կախեալ էր զգետիքս զմեծամեծան Յունաց ընդ փողից եւ ընդ ճանկ երկաթի ։ Զոր տեսեալ Կոստանդին՝ լայր և աղաչաէր զնոսա, եւ հրամայէր թաղել զնոսա . եւ մեղ դնէր եղբօրն և ասէր թէ՝ մարդ մահկանացու զի՞ արդ յայսպիսի մեղս յանդգնի վասն կենաց անցաւորի . եւ ինքն փոխի առ Քրիստոս կեցեալ ամս չորս ։ Եւ մինչ կենդանի էր՝ փեսայացուցյց զոմն Ռոմանոս . եւ էր Ռոմանոս իշխան . քանզի ոչ գոյր Կոստանդնի որդի . և ոմանք Հնազանդեցան Ռոմանոսի ։

Եւ ի թուիս 479 եղաւ Ռոմանոս բազում զօրօք և եկն ի վերայ Տաճկաց աշխարհին . եւ հասեալ ի քաղաքն մեծ ի Հալպ՝ պաշարեաց զնա ։ Ժողովեցան Տաճիկք, և եկին ի վերայ նորա պատերազմաւ . յորոց փախուցեալ փախստական եղև ի գիշերի . եւ այլազգիքն զհետ մտեալ կոտորեցին յոյժ . եւ մնացեալքն փախեան և եղեն ցիր և ցան ։ Իսկ այր ոմն չինական

ի Կոտուլիտոյ գնաց զԹագաւորն, որ անհետացեալ էր ի մէջ ծառոց՝ ընդարմացեալ ի սաստից իբրեւ զմեռեալ. եւ տարաւ ի տուն, ներփակեաց եւ արձակեաց ոչ գիտե-լով թէ ով էր ։ Եւ զնորա (Թագաւորն) ի Մարաշ. եւ ժողովրդեան առ նա ի յղուեալ զօրացն, եւ տարան զնա ի Կոստանդնուպօլիս ։ Եւ այս եղեւ ընդ նա զի էր Թոռ եւ չար բարուք եւ հայհոյիչ հաւատոյ ։ Իսկ զայրն որ ներփակեաց զնա՝ կոչեաց, եւ ետ նմա շատ գանձ ։

Յաւուրս յայս յՈւռհայ քաղաքն էին երկու ամիրայք, յորոց սպան մին զմիւսն. եւ անկաւ խռովութիւն ի քաղաքն. եւ եկեալ ի շատ տեղեաց Տաճիկք եւ հարան ընդ միմեանս. եւ քաղաքն ի վտանգի էր ։ Եւ անհնա-րացեալ այրն որ ունէր զկլայն՝ կոչեաց զՄանեակն ի Սամոսատայ՝ զայր քրիստոնեայ. ած զնա ի կլայն, եւ ետ ի ձեռս նորա զամրոցն ։ Եւ իբրեւ այս եղեւ, յայն-ժամ յամենայն կողմանց ժողովեցան Տաճիկք եւ կռուէին ի վերայ կլային. խորհեցան առնել զքաղաքն եւ զնա. եւ Մանեակն կայր ի վտանգի խիստ ձանձր. եւ քաղաքացիքն աղաչեցին զնոսա, եւ (նոքա) չայրե-ցին, այլ գնացին ։ Իսկ Մանեակն ի վտանգի էր, եւ զօրքն ի սովոյ նեղեալ չգտանէին կերակուր. եւ հրա-մանաւ Թագաւորին տանէին դեսպանք շալկով ի գիշերի ցորեան շատ ի քաղաքն ։ Իմացան Տաճիկքն, եւ սպանին զամէնն, եւ առին զցորեանն. եւ Մանեակն

ի տագնապի էր մինչև արար. թագաւորն ընդ նոսա սէր . եւ եղեւ խաղաղութիւն մեծ ։ Եւ այս եղեւ ի թագաւորութեանն Ռոմանոսի՝ ի թուին 480 ։ Իսկ յետ շատ նեղութեանց զոր կրեաց Մանեակն, փոխեաց զնա Ռոմանոսն. և ետ զՌուհայ Ապուպաքրայ՝ վրանապահին Դաւթի կիւրապաղատին ։

Իսկ ի թուին 481 եղև սով սաստիկ ընդ ամենայն երկիր . եւ յայս ամի մեռաւ թագաւորն Ռոմանոս մահարեղով ի կնոջէ իւրմէ կեռա Զոյեայ՝ դստերէ թագաւորին Կոստանդեայ ։ Եւ էառ թագուհին զՄիխայէլն և նստոյց յաթոռ թագաւորութեանն ։ Եւ յայն ամի մեռաւ թագաւորն Դաւիթ՝ որդի Սենեքերիմայ . և թագաւորեաց Ատոմ՝ եղբայրն իւր, այր լի առաքինութեամբ եւ ողորմած առ ամենեսեան ։

Ի սորա աւուրս, ի թուին 484 եկին զօրք Տաճկաց, անցան ընդ Եփրատ, և կոտորեցին զզօրսն Ուռհայու եւ յամենայն սահմանս նորա ։ Եւ եղբայր թագաւորին Միխայէլին գայ զօրօք ի վերայ Տաճկաց . եւ հասեալ ի Մելտինի չիշխէր ելանել ի կռիւ ։ Եւ փախեաց ի նոցանէ զօրքն Տաճկաց և գնացին . նոյնպէս և զօրքն Յունաց գնացին ։

Իսկ ի թուին 485 եղեւ խաւարումն արեգական . և եղև տիւն զէտ գիշեր . և սասանեցան մարդիկ ընդ տեսակալի նշանն ։ Յայնժամ թագաւորն Հայոց Յով-

հաննէս, եւ կաթողիկոսն Տէր Պետրոս յղարկեցին արս առ վարդապետն Հայոց Յովհաննէս Կոզեռն հարցանել զպատճառ նշանին. և նոքա եկին և գտին զՅովհաննէս զի անկեալ ի վերայ երեսացն աղօթէր մեծաւ ողբով. եւ նստան առաջի նորա, և ուսանէին ի նմանէ ։ Իսկ նա պատմէր զյետին ժամանակի դառնութիւն, զզօրանալ անօրինաց և զտկարանալ քրիստոնէից, զխափանումն եկեղեցւոյ, զծուլութիւն քահանայից, զծուռ դատաստանաց, զրկանս իշխանաց, զանիրաւութիւն թագաւորաց և զապականումն ամենայն ժողովրդեանն Աստուծոյ յառաջնորդաց, յիշխանաց, ի սուտ քահանայից, յանարժան պատարագաց, ի գայլացեալ հովուաց և զշատանալ պէսպէս մեղաց ։ Զայսոսիկ պատմեաց սուրբ վարդապետն, և արձակեաց զնոսա ։

Յայսմ ժամանակի Գանձի ոմն անուն՝ իշխան Հայոց, ժողովեաց շատ հեծեալ, գնաց ի վերայ քաղաքին Բերկրոյ և առ զնա, և կոտորեաց զՊարսիկս, և էառ սղարիւ զկլայն՝ և նստաւ անհոգ զօրօքն յուտել եւ խմել ։ Իսկ տէրն իմացաւ. եւ առնու զօրս իւր ի յօգնութիւն. եկն, եգիտ զնոսա անհոգ, եւ սպան զԳանձի. և կոտորեաց զամենայն զօրս նորա ։

Իսկ ի թուին 489 երևեցաւ աստղն գիսաւոր յերեկոյին յարեւմտից կողմն, եւ յետս տողալով եկն ի հարաւ ընդ բազումքն (23) եւ ընդ լուսնին մէջ. եւ

ույժ չերևեցաւ ։ Եւ ի սոյն ամի մեռաւ Միխայէլն շատ զօրօք ի Բուլղարս . եւ արարին շատ կոտորուած ի զօրաց Նոցա ։ Իսկ Նոքա միաբան աղաղակեցին առ Աստուած, և դարձան ի վերայ Յունաց, և անխնայ կոտորեցին, և զԹագաւորն փախուցին, և առին զա֊մենայն զէնս եւ զինչս զօրացն ։ Յայսմհետէ տղա֊նեցան ի չար ազգէն Յունաց ։

Յայսմ ամի մեռանէր արքայն Հայոց Աշոտ՝ (24) եղբայր Յովհաննիսի . եւ տարեալ թաղեցին (զնա) յԱնի. և մնաց Նորա որդի հնգետասան ամաց՝ անուն Գագիկ ։ Իսկ զկնի մահուանն Աշոտոյ թուլացան և ատեցին (25) զպատերազմ, եւ սիրեցին զգինի եւ զզուասանս՝ և մտան ի ծառայութիւն ազգին Յունաց, եւ լուծան ի միաբանութենէ միմեանց . եւ տեսեալ զի երկիրն ընդ սրով այլազգեացն անցանէր, ապա֊շաւէին զմիմեանց կորուստ, եւ լային զի թափեցան յարիադոյն և ի քաջ գլխոյ ։

Յայսմ ամի ժողով արար ամիրայն Պարսից Ա֊պուսվար, եւ եկն յաշխարհն Աղվանից եւ ի գաւառն Անհողին Դաւթի, և մեծ կորուստ գործեաց հաւա֊տացելոցն ։ Դաւիթ վախեցաւ կռուել ընդ Նմա . և Ապուսվար էառ գաւառս և բերդս շատ . և զամ մի անդ դադարեալ՝ հնազանդարար զմեծամեծան (26) աշխարհին ։ Եւ առաքեաց առ Թագաւորն Յովհան֊նէս՝ Դաւիթ եւ ասէ, լեր ինձ օգնական զի կացից

ընդդէմ Ապուսախարայ . եւ թէ ոչ՝ լինիմ նմա հնա-զանդ, եւ լինիմ առաջնորդ նմա, և խաւար ածեմ ի վերայ ազգիդ Տիրակայ ։ Լուեալ Յովհաննէս, եւ ետ նմա օգնութիւն ձիաւորս երեք հազար ։ Սոյնպէս առաքեաց (Դաւիթ) առ Թագաւորն Ափխազաց . և նա ետ նմա ձիաւորս հինգ հազար ։ Ժողովեաց (Դաւիթ) և զիւրն իբրև երկոտասան հազար . կոչեաց և զկաթողիկոսն Աղվանից Տէր Յովսէփ եպիսկոպո-սօք և վանականօք ; քահանայիւք և ժողովրդովք, և եկեալ ի բանակն զամենայն բնակիչս երկրին՝ կին և տղայ, եւ առնէր ընդ ամէնն « Չէն զխաչն Քրիստոսի և զաւետարանն առցէ (ամենայն ոք) ի ձեռս . և որ ցանկայ մարտիրոսութեան՝ այս է ժամն » ։ Եւ եղեւ ամենայն բանակն խաչ եւ աւետարան . զոր իբրև ետես Ապուսախար՝ ծիծաղեցաւ ի վերայ նոցա ։ Իսկ Դաւիթ քսան հազար հեծելով ճակատեցաւ ընդդէմ նոցա . եւ մխեցան իբրև ի ծով ի բանակն այլազ-գեաց ։ Իսկ քահանայքն եւ ժողովուրդք առ Աստ-ուած համբարձին զձայնս իւրեանց եւ ասեն « Արի Տէր՝ օգնեա՛ մեզ վասն անուան քո » ։ Յայնժամ փախեան զօրքն այլազգեաց հաւասար ։ Եւ զհետ մտեալ զօրքն քրիստոնէից՝ ընջեցին զնոսա իսպառ ։ Եւ Դաւիթ յաւուրս երիս դարձոյց յինքն զամենայն աշխարհն իւր . եւ ետ պարգեւս զօրացն եւ եպիսկո-պոսացն . և եղև խաղաղութիւն մեծ ։

Յայսմ ամի ոմն անօրէն յիշխանացն Սենեքերիմայ գնաց առ Թագաւորն Յունաց, եւ դաւաճանութիւն առնէր վասն Աշոտոյ թէ՝ խորհի մտանել ի վերայ քո, և առնել խռովութիւն ընդ քեզ ։ Հաւատաց Թագաւորն. և յղեց ի Սեւաստ զակալութն իւր Հնգետասան հազար հեծելով՝ բերել զնոսա ուժով զի մի փախիցեն ։ Եւ նոքա լուեալ զայն՝ գնացին ի Կոստանդնուպօլիս. և իբրև մտին ի քաղաքն՝ դիմեցին լալով ի գերեզման Վասլին. եւ զգիր երդմանն նորա եդին ի վերայ հողոյն եւ ասացին. « ով հայր մեր՝ դու բերեր զմեզ յաշխարհս յայս. արդ դատ արա մեզ ի սպառնալեաց մահու եկելոյս ի վերայ մեր » ։ Զոր լուեալ Թագաւորին՝ հրամայէր ընդ իմաստութիւն նոցա և ընդ անմեղութիւն. և հրամայեաց պատանանել զչարախօսն. եւ զնոսա մեծ պարգեւօք յղարկեաց ի Սեւաստ ։

Ի թուին 490 մեռաւ Յովհաննէս՝ արքայն Հայոց. և թաղեցաւ ընդ հարսն յԱնի ։ Իսկ Թագաւորն Յունաց Միխայէլն բազում զօրօք հասանէր ի գաւառն Հայոց, և առնէր զաշխարհն աւար և գերութեամբ. քանզի Յովհաննէսն յառաջագոյն գիր էր տուեալ Յունաց որ յետ իւր մահուանն Անի ի նոսա դառնայր ։ Զոր անօրէնն Սարգիս ի Հայոց ազգ առնէր Միխայէլին, և ի դուրս տայր զաշխարհն Հայոց ։ Եւ ինքն յափշտակեալ շատ գանձս Թագաւորաց՝ բեր-

դամուտ լինէր, և աւանդս բազումս պահէր, և կամէր թագաւորել Հայոց, զոր չկամեցան Բագրատունիք ։ Ցառնէր և Անհողին ասպատակաւ ի վերայ աշխարհին Հայոց, և շատ գաւառք հնազանդեցան նոցա զի չկայր գլխաւոր Հայոց ։

Իբրև եկին Յոյնք ի վերայ Թագաւորական քաղաքին Անւոյ, յայնժամ ժողովեցան զօրքն Հայոց առ մեծ սպարապետն Վահրամ Պահլաւունին, և խնդրէին կռուել ընդ զօրսն Յունաց. վասնզի ոչ կարէին տանել հայհոյութեան նոցա և նախատանաց ։ Եւ յիշեալ զանուն Աստուծոյ յարձակեցան ի վերայ նոցա, և զայնքան զօրութիւն նոցա կոխան արարին ձիոցն և մաշեցին ի սուր սուսերի. և որք ջանային փախչել՝ ի յահագին ձայնէ քաջացն Հայոց չկարէին փախչել, մինչ ընդ մէջ անցեալ սպարապետն Վահրամ՝ բազում աղաչանօք կարաց հաւանեցուցանել զզօրսն Հայոց սակաւ մի թոյլ տալ փախչել. որ և ի հարիւր հազարաց նոցա հարիւր զերծան. և յայնմհետէ այլ ոչ ևս յիշեցին զԱնի ։

Եւ ի թուին Հայոց 491 ժողովեցան իշխանքն Հայոց հրամանաւ մեծին Գրիգորի՝ որդւոյ Վասակայ. և գնացեալ առ սո·րբ կաթողիկոսն Տէր Պետրոս օծեցին զորդին Աշոտոյ զԳագիկ թագաւոր Հայոց. զի էր զարգացեալ և վայելուչ և իմաստուն և հմուտ աստուածային ուսմանց հին և նոր կտա-

կարանաց . եւ եղեւ այր բարի եւ աստուածասէր եւ անպարտելի յիմաստասիրաց դասն եւ իմաստութեամբ հաստատեաց զաթոռ թագաւորութեան Հայոց ։ Ցայնժամ ի ձեռն զօրաց իւրոց ըմբռնեալ զանօրէն Սարգիսն՝ խոշտանգանօք առնոյր ի նմանէ զամրոցն և զգանձն արքունի զոր յափշտակեալն էր, եւ զգաւառն զոր ըմբռնեալ էր ։ Եւ զօրքն Յունաց դադարեցին ի խնդրելոյ զԱնի . եւ խաղաղացաւ աշխարհն Հայոց ։

Ցայնժամ ժողովեալ Գագիկ զզօրսն Հայոց գնաց ընդ կողմանս աշխարհին հայրենեաց իւրոց, եւ զամենայն ապստամբեալսն ի հնազանդութիւն էած, եւ զհակառակսն հերքեալ հալածեաց ։ Եւ երթայր բազում զօրօք, բանակէր յԱյրարատ գաւառն, ի Վաղարշապատ քաղաք . առնոյր մրէժ յազգայն հարաւայնոց ։

Ցայնժամ սպառազինեալ մեծն Գրիգորիոս Պահլաւունին՝ որդին քաջին Վասակայ, եւ երթեալ բանակ հարկանէր ի վերայ Ախուրեան գետոյ՝ մերձ յամուրն Բջնի (27) . եւ զօրք այլազգեացն գային ի պատերազմ ի վերայ զօրացն Հայոց ։ Եւ եղեւ սաստիկ պատերազմն . եւ զառաջինն յաղթեցին զօրացն Հայոց . եւ ապա օգնութեամբն Քրիստոսի (զօրքն Հայոց) դարձուցին զզօրս անօրինացն ի փախուստ և կոտորեցին յոյժ՝ և զիշխանս նոցա արարին ձեռ-

նաւապետաց . եւ Ֆռանցեալքն գնացին փախստական ի Պարսս :

Զայսու ժամանակաւ մեռանէր Թագաւորն Յունաց Միխայէլն . եւ թագաւորեաց Կեսարոս՝ որդի քեռ նորա, ամիսս չորս. վասն զի համարձակեալ գործեաց գործ լրբութեան . և զԹագուհին կեռա Զոյի՝ զդուստրն Կոստանդեայ կայսերն, խուզել համարձակեցաւ որպէս զպոռնիկ, եւ առաքեաց յաքսորս . նոյնպէս եւ զպատրիարքն ըմբռնեալ եդ ի բանտի . քանզի կամէր զանօրէն եւ զպիղծ ազգն զիւր յառաջ բերել յօգնականութիւն թագաւորութեան իւրոյ : Իսկ պատրիարքն իմաստութեամբ զերծեալ անկաւ ի սուրբն Սոփի, եւ արար անդ ժողով իշխանաց . եւ կալեալ զԿեսարոսն եւ զազգականս իւր՝ խաւարեցուցին զաչս նոցա . եւ դարձուցին զԹագուհին եւ զամենայն արտաքսեալ իշխանսն մեծաւ պատուով ի Կոստանդնուպօլիս :

Յայսմ ամի զօրաժողով արարեալ տէրն Հերայ և Սալամաստայ եկն ի վերայ գաւառին Վասպուրականի : Խաչիկ (իշխան տեղւոյն) էր այր քաջ եւ պատերազմող . այլ ծերացեալ էր եւ պարապեալ բազում ժամանակաւ : Եւ որդիքն նորա Հասան եւ Ճնճղուկն էին առ Թագաւորն Յունաց Միխայէլն . եւ կրտսեր որդին Իշխանիկն (28) տղայ էր տարօք : Ապա հարկաւորեալ ինքն ելանէր ի պատերազմն

սակաւ զօրօք, և հալածէր քաջապէս զբանակն այլազգեաց ։ Իսկ տղայ որդին Իշխանիկն առանց կամաց հօրն յարձակեցաւ ի պատերազմն, եւ անպատրաստ եմուտ ի մէջ թշնամեացն, եւ սպանաւ անդ ։ Իսկ պարոն Խաչիկ տեսեալ զայն՝ լքեալ ի զօրութենէ սպանաւ եւ նա ի պատերազմին ։ Զկնի քիչ աւուրց եկին որդիքն նորա յարևմտից՝ սգացեալ սուգ ի վերայ հօրն և եղբօրն ։ Յայնժամ աւագ որդին Հասան կոչեաց Քուրդ սիրելի մի . տայր նմա հազար դահեկան (29) ոսկի, եւ ասէր « մո՛ւտ ի Հեր եւ ի Սալամաստ . ասա՛ եթէ աշխարհն Վասպուրականի անմարդ է, զի՞ կայք պարապ . եւ բազում ծառայք եւ հօտք ոչխարաց անմարդ շրջին »։ Արար Քուրդն այնպէս . և ժողովեցին այլազգիքն զօրս բազումս, և եկեալ բանակեցան ի նոյն տեղւոջն ։ Եւ գայր Քուրդըն, պատմէր պարոն Հասանայ ։ Ժողովեցին և նոքա զզօրսն իւրեանց, եւ պատրաստեցան ընդդէմ նոցա ի մարտ պատերազմի . եւ Հասան ձայն տուեալ այլազգեացն ասէ « ո՞ւր է այրն որ սպան զհայրն իմ Խաչիկ »։ Եւ ահա՛ այր մի սև, հզօր, յանդուգն յարձակմամբ ասէր « ես եմ. և ահա՛ ձին իւր եւ սլեհն »։ Եւ քաջն Հասան յարձակեցաւ ի վերայ նորա սրովն, եւ պատառեաց զնա ընդ երկուս, եւ դարձոյց զձին եւ զսլեհն հօրն ։ Նոյնպէս եւ խնդրեաց Ծնճղուկն զսպանողն եղբօրն . եւ մէկ մի այլ պարծէր ասելով

*թէ՝ ես եմ ։ Եւ նա եհար զնա ումբովն ի սիրտն, եւ ի թափ անցոյց եւ ընկէց՝ առեալ զձի եղբօրն եւ զզէնն . եւ քաջապէս կոտորեցին զնոսա, եւ առին զաւար եւ զձիս, եւ դարձան ուրախութեամբ ։*

*Իսկ ի թուին 492 թագաւորեաց Յունաց Կոստանդին Մոնոմախն որ թարգմանի մենամարտիկ ։ Եւ ի նոյն ամի յարեաւ ի վերայ նորա Մանեակն՝ այր քաջ, որ յառաջն էառ զՍուռհայ . եւ կապեաց թագ, և ժողովեաց զօրս բազում՝ ունելով թիկունս օգնականութեան զաշխարհն Հոռոմայեցւոց ։ Եւ ի յահէ նորա հնազանդեցան նմա ամենայն արեւմուտք . զի էր այր յաղթանդամ եւ քաջ ի պատերազմունս ։ Իսկ Մոնոմախն ամենայն Յունօքն գնաց ընդդէմ նորա ի պատերազմ . եւ յանկարծակի եհաս մահ Մանեակին . եւ խաղաղացաւ տունն Յունաց ։*

*Զայսու ժամանակաւ անօրէն Սարգիսն, որ էր յարեւելս, ազդ առնէր Մոնոմախին և ասէր « կոչեա՛ զԳագիկ պատճառանօք սիրոյ ի Կոստանդնուպօլիս, եւ մի՛ թողուր ելանել ի քաղաքէն մինչև զքաղաքն Անի առցես ի նմանէ » ։ Եւ արմատացաւ ի սիրտ նորա այս սերմն չարութեան առ ի բառնալ զթագաւորութիւնն Հայոց ։ Եւ գրեաց թուղթ առ Գագիկ՝ արքայն Հայոց, եւ կոչէր առ ինքն մեծամեծ երդմամբ տուեալ միջնորդ զսուրբ խաչն եւ զաւետարանն Քրիստոսի ։ Եւ լուեալ Գագիկի ոչ կամեցաւ*

գնալ . իսկ անօրէն Սարգիս հանգերձ համախոհօքն իւրովք մատեան առ Թագաւորն, եւ քաջալերէին զնա ասելով « է՞ր վախես գնալ ո՛վ Թագաւոր՝ եւ երկմտիս յայս մեծ երդմանս . եւ թէ առ մեզ ունիս կարծիս՝ ահա անձինք մեր մեռանելոյն վասն քո » : Եւ դրին միջնորդ զՏէր Պետրոս . բերին զսուրբ խորհուրդն, թացին անդ զգրիչն . եւ արարին մեծ երդումն յաւուր յայնմիկ :

Յայնժամ անվախ եղեւ Գագիկ . եւ գնաց ի Կոստանդնուպօլիս . եւ ամենայն քաղաքն հրամանօք Թագաւորին՝ մեծ խնդութեամբ ելին ընդդէմ նորա, եւ մեծ պատուով ընկալան զնա, որպէս վայել էր Թագաւորի : Իսկ ուրացողքն Քրիստոսի որք արեամբն Աստուծոյ կապեցին զերդումն, առաքեցին առ Մոնոմախն զքաղաքին Անւոյ քառասուն բանալիք եւ գիր զկնի թէ՝ ամենայն արեւելք քո եղեւ : Կոչեաց Թագաւորն զԳագիկ, եւ զբանալիքն եւ զթուղթն առաջի նորա եդ եւ ասաց թէ՝ զամենայն արեւելք քո ետուն ինձ : Եւ ասէ Գագիկ ցՄոնոմախն « Թագաւոր Հայոց ե՛ս եմ . եւ ես ո՛չ տամ զԱնի ի քեզ . զի սուտ երդմամբ ածեր զիս ի տեղս» . և երեսուն օր պնդեալ Գագիկ ոչ հաւանէր : Եւ յորժամ ճարակ չգտաւ՝ ետ զՀայք ի ձեռս Յունաց : Եւ ետ Մոնոմախն Գագկայ զԿալօն պաղատ եւ զՊիզու : Եւ յղեաց Գագիկ ի քաղաքն Անի, եւ

ինչք զոր ունէր՝ ետ բերել ի Յոյնս . եւ կայր պան_
դուխտ ի մէջ անապատոյն եւ չար ազգին ։ Բայց ուր
հասանէր՝ մեծ նեղութիւն արկանէր ազգին Յունաց .
զի որպէս Թագաւոր անհարկու կայր ի մէջ նոցա ։

Իսկ ի մէկ այլ տարին, ի թուին 493 առաքէր Մօ_
նոմախոն կուրտ մի Պաստականանոս անուն՝ շատ զօրօք
յարեւելս ի խնդիր քաղաքին Անւոյ. որ եկեալ հասանէ
ի դուռն քաղաքին ։ Եւ ազգն Հայոց որ էին ի քաղա_
քին, չհաւանեցան տալ զքաղաքն . այլ ուզէին զԳա_
գիկ՝ Թագաւորն իւրեանց . եւ միաբան ելան ի կռիւ
ընդ զօրուն Յունաց, եւ կոտորեցին եւ փախուցին .
եւ շատ աւարաւ մտան ի քաղաքն ։ Եւ Պաստականա_
նոսն ձմերեաց յՈւխտիքն, ի գաւառն Թէոդուպօ_
լեաց ։ Յայնժամ զօրքն Հայոց իբրեւ տեսին թէ՝ Թա_
գաւորն իւրեանց Գագիկ այլ ոչ եկանէ յարեւելս,
ժողովեցան ի գերեզմանս Հայոց Թագաւորացն, եւ
լացին երեք օր զանտիրանալն իւրեանց, եւ անէծս
կարդային նենգաւորացն Գագկայ ։ Այսպէս յուսահա_
տեալք տուեցին առ Պաստականանոսն, եւ կոչեցին
զնա, եւ ետուն զԱնի ի ձեռս նորա ։ Աստանօր
բարձաւ Թագաւորութիւն Հայոց, եւ անկաւ տէրու_
թիւն ազգին Բագրատունեաց ։

Ի թուին 494 եղեւ խիստ շարժ, եւ փոխեցաւ զոյն
լուսաւորացն ի կարմրութիւն, եւ մառախուղ ունէր
զերեսս երկրի . եւ ի շարժէն եկեղեցիք եւ մեծ շին_

տանջք խախտեցան ։ Եւ Եզնկայն առ հասարակ փլաւ , եւ պատառեցաւ գետինն եւ եկուլ բազում տուն եւ կանայս . եւ շատ օրեր գայր ձայն նոցա ի խորոց անտի ։ Ցայսմ ամի խաղացեալ զօրքն Յունաց գնացին ի վերայ քաղաքին Դունայ. եւ կռուեալ ընդ այլազգիսն՝ յաղթեալ կոտորեցան անդ . ընդ որս եւ մեծ սպարապետն Հայոց պարոն Վահրամ եւ իւր որդին Գրիգորն սպանան ի կռուին ։ Ի նոյն ամի շարժեալ ի տանէն Պարսից երեք ամիրայ . եւ շատ զօրօք եկին ի սահմանս Մօսլայ . եւ տէրն Մօսլայ շատ Արաբացուօք գնայ ի վերայ նոցա. և խառնեալ ընդ միմեանս՝ սպանանէին զիրեարս . ապա յետոյ Պարսիկն փախոյց զՄօսլացին ։ Յայնժամ տէրն Մօսլայ ձայն տուեալ ի Տաճկաստան՝ ժողովեաց զօրս բազումս, եւ արար զնոսա փախստականս, եւ դարձոյց զգերութիւն իւր եւ զնոցայն՝ եւ խիստ վարեաց զնոսա մինչ ի սահմանս Համձիթոյ ։ Իսկ փախստականքն դիմեալ յաշխարհն իւրեանց՝ շատ գերութիւն եւ հեղումն արեանց առնէին ի Քրիստոնեայսն՝ ընդ որ գնային . եւ հասեալ մինչեւ յԱրճէշ՝ քաղաքն Հայոց, եւ առաքեալ առ կատապանն Յունաց, որ կայր անդ, խոստացան նմա շատ ինչք զի խաղաղութեամբ թողցէ զնոսա գնալ ։ Իսկ նա ոչ առ յանձն. այլ ելեալ ընդդէմ նոցա ի պատերազմ . եւ յաղթեալ ի նոցանէ՝ կոտորեցան զօրքն Յունաց . եւ կատապան կիր

Ստեփանէ բռնութեան. եւ տարան զերի ի Հեր քաղաք, եւ անդ մեռաւ։

Յայնժամ առաքէր Մոնոմախն կուրտ մի Մելարխ (30) անուն՝ զօրօք բազմօք ի վերայ Դունայ քաղաքին. եւ էր ձմեռն. որ եկեալ՝ ի սաստիկ անձրեւէն իրք չկարաց առնել. այլ դարձաւ յետս։ Իսկ յամառն եկն Մելարխ ի վերայ Դունայ եւ պաշարեաց զնա, եւ չկարաց առնուլ. ապա աւերեաց զաւանս գաւառին եւ դարձաւ։

Եւ ի սոյն ժամանակի այր ոմն ի քաղաքէն Անդրիանուպօլսէ՝ այր քաջ որ կոչէր Թոռնիկ, յառնէ ի վերայ Մոնոմախին. եւ զօրօք արեւմտից գայր ի վերայ քաղաքին Կոստանդնուպօլսի. եւ մեծ տագնապ առնէր զքաղաքն, մինչ կալան քարով զդուռն քաղաքին։ Իբրեւ չկարացին կալ ի դիմի՝ գրեցին առ Թոռնիկ սուտ երդումն ըստ իւրեանց սովորութեանն՝ դնել զԹոռնիկ կեսարոս ասելով թէ՝ զկնի մահուն Մոնոմախին Թոռնիկ լիցի թագաւոր։ Եւ եկին պատրիարքն եւ իշխանքն առ Թոռնիկն՝ եւ երդմամբ դիրն ուխտ ընդ նմա. եւ եղեւ խաղաղութիւն. եւ ածին զԹոռնիկն Կոստանդնուպօլիս. եւ յետ աւուրց հանին զաչս նորա։

Ի թուին 498 յաւուրս Մոնոմախին եկին հրամանօք Տողրիլ՝ սուլտանաց Պարսից, զօրագլուխք երկու չատ զօրօք, եւ եկին ի Հայք։ Եւ այս վասն այնորիկ

եղև. զի զզօրս քաղձն վերոյին Յոյնք և զիրսն ի տեղի նոցա կուրտ զօրագլուխք. և այնով կամէին պահել զտունն արևելից: Եւ յորժամ իմացան այլազգիքն եթէ՝ անտէր է աշխարհն Հայոց, եկին ի վերայ քաղաքին որ կոչի Արծն. և առին զնա անպատրաստ և կալեալ անչափ գանձով և մարդով. և սկսան կառուել ընդ նմա: Եւ եկեալ քաղաքացիքն և խիստ կռուով զմիմեանս կափէին, քանզի չունէին տեղի փախչելոյ կամ յոյս օգնութեան. նա զմահ ատեաին յոյս. և ի խիստ պարկութենէ անօրինացն փախեան. և այլազգիքն զհետ պնդեալ մտան սրով ի քաղաքն, և մաչեցին իսպառ սուսերի զամէնն. և լցան ոսկւով և արծաթով և ազգի ազգի դիպակօք: Եւ անդ քոր եպիսկոպոս մի Դաւիթ անուն. առին զգանձս նորա-պարծին քառասուն ըղտու. և հարիւր վեցին (31) եղանց եղանէր ի տանէն: Կայր ի քաղաքն եկեղեցիք եօթն հարիւր. և փարթամ էր և վայելուչ քաղաքն այն, զոր անցուցին ազգն անօրինաց սրով. և չառաք անթիւ Թեացին, զորս կերան զազանք և թռչունք. և առաւօտ կանայք տղայօք գնացին զերի յաշխարհն Պարսից յանդին ծառայութիւն: Եւ այս եղև սկիզբն կորստեան աշխարհիս Հայոց. և այս էր առաջին քաղաք որ առաւ սրով ի Հայոց: Յայամհետէ ըսեցէ՛ք մի ըստ մտչէ զայլն զոր պատմեմք:

Իսկ Մոնոմախն իբրև լուաւ զայս համբաւ՝ յղար-

կեաց զօրս յարեւելք . եւ եղեր զօրագլուխ զԳրիգոր Պահլաւունի զմագիստրոսն՝ զորդին Վասակայ, եւ զԿամսարեանն եւ զքաջն Լիպարիտ՝ զեղբայրն Որբեա-տին, զի սպանին զքաջսն ի թշնամեաց :

Ի թուին 498 գրեաց Մոնոմախոսն առ կաթողիկոսն Տէր Պետրոս, եւ կոչեաց զնա : Եւ նա գնայր մե-ծաւն ի զինչերի հանդերձ՝ երկաթէ ամանովք թաղեաց ի գետն, որ չպատարագէր եկեղեցին Հայոց ի սուրբ ձիթոյն . եւ ինքն գնաց ապաստոք առն խորոյ՝ երեք հարիւր մարդով եւ եպիսկոպոսօք . եւ ի մտանելն նո-րա ուրախացաւ քաղաքն ամենայն ի հանդիպումն նո-րա . եւ մեծ փառօք տարան զնա ի սուրբն Սոֆի . եւ եկին առ նա թագաւորն եւ պատրիարքն : Եւ հրա-մայեաց իջուցանել զնա յաղուոր տուն, եւ տալ ծախս յամէն աւուր ի պէտս նոցա : Օր մի գնաց առքը հայ-րապետն առ թագաւորն . եւ ելաւ թագաւորն ի յառաջ նմա, եւ նստուցանէր զնա ի յաթոռ ոսկի : Եւ երբ եկաւ Տէր Պետրոս, էառ զաթոռն ածէր Եղիսէ . եւ ծառաներն չթողէին . եւ չկարացին առնուլ ի նմա-նէ : Զոր հարցաւ թագաւորն ցածէր Եղիսէ . եւ նա ասէ « ո՛վ թագաւոր՝ Աթոռ հայրապետական է, չէ՛ պարտ նստիլ ի վերայ այլ մարդոյ » : Եւ թագաւորն հրամայեաց թողուլ : Եւ օր աւուր փառօք տեսանէին զնա . կեցաւ ամիսս չորս՝ եւ դարձաւ ի Հայս մեծ պատուով :

Ի թուին 502 եղաւ սքանչելիք յԱնտիոք․ քանզի էին անդ Ասորիք չարք բնակեալք՝ ոսկւով և արծաթով․ եւ ամէն ժամ կնկով եւ աղայով զարդարած երթային յեկեղեցին յորս տօնից ։ Զչարեցան Յոյնքն ընդ նոսա․ եւ այր մի Ասորի հրապուրեալ ի Յունաց՝ եղև ի կրօնս նոցա, եւ սկսաւ չարախօսել զազգէն իւր թէ՝ չունին ուղղափառ հաւատս եւ դաւանութիւն զոր ունի կաթողիկէ եկեղեցի ։ Եւ վասն այս նախանձու միաբան պատրիարքն ազգօքն հրամայեաց զաւետարանն Ասորւոց հրով այրել․ եւ յորժամ ձգեցին ի հուրն՝ ձայն գայր ի յաւետարանէն, եւ թռչէր ի կրակէն ։ Իսկ նոքա յանդգնեալ երկու անգամ ձգեցին զաւետարանն ի հուրն․ եւ դարձեալ ողջ ելանէր ի հրոյն ։ Նա՝ երրորդ անգամ արկին կատաղի լրբութեամբ․ և յերրորդ անգամն այրեցաւ աւետարանն ։ Եւ իբրեւ այրեցաւ՝ դարձաւ պատրիարքն մարդովն յեկեղեցին սուրբ Պետրոս․ գոչեաց եկեղեցին ի ձայն մեծ՝ եւ դղրդաց քաղաքն ամենայն ։ Իսկ ի միւս օրն անկաւ հուր յերկնից ի վերայ եկեղեցւոյն սրբոյն Պետրոսի՝ եւ այրեցաւ ի հիմանէ քարն․ եւ պատառեցաւ խորանն, եւ զսուրբ սեղանն տարաւ յանդունդս, զոր կազմեալ էր ոսկւով մեծն Կոստանդիանոս․ եւ այլ չկարացին գտնուլ ։ Արդ յորժամ այս եղև՝ բեկեցան քաղաքացիքն, և սկսան աղօթել առ Աստուած ։ Եղաւ պատրիարքն քահա-

նայիւք եւ ժողովրդօք, շրջէր ի քաղաքն աղօթիւք · եւ զշէտ գնային ի մէյտանն, ուր փոքր կամուրջն էր ։ Յանկարծ գոչեաց գետին եւ շարժեալ ի կէս օրն՝ պատառեցաւ գետինն, եւ եկուլ զպատրիարքն եւ բիւր մի ի մարդկանցն. եւ հնդետասան օր գայր ձայն նոցա ի յանդնդոց . եւ ապա կնքեաց երկիրն՝ անշնչացոյց զնոսա ։

Ի թուին 503 շարժեցաւ Ցօղրիլ՝ սուլտանն Պարսից, եւ եկն շատ զօրօք ի Հայք, ի քաղաքն Բերկրի եւ էառ զնա ։ Եւ եկն ապա յԱրճէշ, եւ յոյժ նեղէր զքաղաքն ութ օր . եւ քաղաքացիքն շատ ընծայիւք ուզեցին զհնազանդութիւն . եւ հաւանեցուցին զնա նախ առնուլ զՄանծկերտ ։ Եւ նա գնացեալ բանակէր ի տեղին որ Քարգլուխ ասի . եւ պատեալ զքաղաքն նեղէր կռուով. Էր գլխաւոր քաղաքին պարոն Վասիլ՝ որդի Աբլղարայ, այր քաջ. եւ սկսան փորել զհիմն քաղաքին ։ Զոր իմացեալ քրիստոնէիցն փորեցին զէմ նոցա . եւ կալեալ զնոսա սպանին ։ Ապա զայրացեալ սուլտանն՝ յղեաց զօրս ի Բաղէշ, եւ ետ բերել զմեծ բաբանն զոր Վասիլ կայսրն վասն քաղաքին Հերայ էր շինեալ . եւ եդեալ անդ հնգետասան օրիւ՝ ահաւոր բարձրութեամբ . եւ յորժամ կանգնեցին՝ դողաց քաղաքն յահէ նորա ։ Յայնժամ երէց մի գտաւ ի քաղաքն փոքր բաբան մի, և կանգնեաց ընդդէմ նորա . եւ յառաջին քարն եզարկ

գնաս ի խոզանակն եւ երեկ . և զօրացան քաղաքացիքն : Ապա յետ աւուրց այլազգիքն նորեցին զքաղաքն . և սկսան հարկանել զպարիսպն մեծամեծ քարամբք . եւ զարհուրեցաւ քաղաքն : Յայնժամ ձայնեաց պարոն Վասիլ ի քաղաքն թէ՝ ով ելնէ եւ այրէ զքարաքանն, նա տամ խուրեան շատ ոսկի եւ արծաթ, եւ ի թագաւորէն փառս եւ իշխանութիւն . եւ թէ ինքն մեռանի՝ որդիքն եւ ազգն ժառանգեն զխոստումն » : Եւ եկն յառաջ Փռանկ մի և ասաց « ես այրեմ զնա . եւ զարիւն իմ հեղում վասն քրիստոնէից զի ես չունիմ զոք որ լան զիս » : Եւ ետուն նմա ձի աղուոր եւ զրահ եւ սաղաւարտ . եւ հեծաւ եւ կապեաց յինքն փաթ երեք շիշ . եւ կապեաց թուղթ ի ծայր ուլմբին . եւ խնդրէր աղօթս յամենեցն . գնայր ի մէրայ այլազգեացն . եւ նոքա գիտէին թէ՝ թղթաւոր է . եւ չխօսեցան ընդ նմա : Իբր ժամն կէսօր եւ շող . եւ ամենայն արք պատերազմին ննջէին ի խորանս իւրեանց . եւ երեկ Փռանկն առ քարաքանն . եւ նոքա կարծէին թէ՝ ընդ մեծութիւն նորա հիանայր : Եւ եհան զմէկ շիշն, եզարկ ի քարաքանն . եւ շոյտ շուրջ առեալ զնովաւ՝ հարկանէր զերկրորդն և զերրորդն . եւ վառեցաւ քարաքանն բոլոր : Եւ Փռանկն դարձաւ ի փախչել՝ եւ ամենայն բազմութիւն զօրացն ի հետ, եւ անկաւ անվնաս ի քաղաքն . եւ ետուն նմա ինչս բազումս : Մոնոմախն լուեալ տարաւ զնա ի Կոս-

տանդնուպօլիս . եւ եառ նմա իշխանութիւն մեծ ։ Իսկ սուլտանն զարմացաւ ընդ գործ Փռանկին . եւ ուղէր ի պարոն Վասլէն զի տեսցէ զնա . եւ մեծ երդմամբ խոստանայր տալ պարգեւս նմա . և պարոն Վասիլն չկամեցաւ տալ ։ Ապա սկսան փորել ներքեւ պարսպին . եւ քաղաքացիքն դէմ նոցա փորեցին . եւ երկաթէ ճանկօք հանեին ի դուրս եւ սպանեին ։ Եւ առին խոզ մի, դրին ի բաբանն և ձգեցին ի բանակն . եւ ձայնեցին ի սուլտանն եւ ասեն « պատկուէ ընդ խոզդ՝ եւ տամք զՄանծկերտ պտոյգ քեզ » ։ Եւ նա եղաւ ամօթով, եւ սպան զգերոզն . եւ գնաց յաշխարհն իւր ։

Ի թուին 504 մեռաւ Մոնոմախն. և թագաւորեաց քեննեկալն իւր կիր Թոդոռան (32). եւ կեցաւ թագաւոր ամս երկու և ամիս երեք, և մեռաւ . եւ նստաւ թագաւոր Միխայէլ ալեւորն ։ Ելաւ յայսմ ամի իշխան ոմն հակառակ Միխայէլին . եւ էառ զօրօք զԿոստանդնուպօլիս եւ թագաւորեաց ։ Եւ յետ քիչ ժամու յղարկէր եւ բերէր զՏուկն Ուրհայու զՏուկիծն, եւ եդիր թագաւոր . եւ ինքն միակեաց եղաւ ։

Ի թուին 505 փոխեցաւ առ Քրիստոս կաթողիկոսն Տէր Պետրոս՝ կացեալ յաթոռն ամս երեսուն եւ երկու (33) . եդիր կաթողիկոս զՏէր Խաչիկն ։

Յայսմ ամի եղաւ ամիրայ մի Դինիեար (34) անուն. եւ եկն, աւերեաց զքաղաքն Մելտինի. եւ էառ շատ

գերի եւ գանձ. եւ եկն, ձմերեւոց ի Հանձիթ ։ Իսկ ի լինել գարնան գնաց ի գաւառն Տարօնոյ. եւ իջաւ առ ստորոտով Տորոսի մերձ ի Սասունք ։ Տեսաւ զայն իշխանն Հայոց պարոն Թոռնիկ՝ որդին պարոն Մուշեղայ. և զօրօք հասանէր ի վերայ այլազգեացն. եւ խառնեցան յիրեարս ։ Յայնժամ համբարձ քաջն Թոռնիկ զաչս իւր ի վանք սուրբ Կարապետին եւ ասէր « կլա՛ կլա՛ (Գլակայ) վանից սուրբ Կարապետ՝ հասի՛ր յօգնութիւն մեզ, եւ արա՛ զօրս զայս երեւելի ի վերայ հաւատացելոցս ի քեզ »։ Եւ քաջապէս վարեաց զնոսա Աստուծոյ կարողութեամբն, եւ կոտորեաց յոյժ. եւ էառ զառ եւ զգերութիւնն քրիստոնէից. եւ դարձաւ ուրախութեամբ ։

Ի սոյն ամի՝ ի ձմեռն երեկ խիստ ձիւն վաթսուն օր յամենայն տեղիս. գիշերն գայր, ցերեկն հալէր. եւ էր ջուրն կարմիր եւ լեղի ։ Եւ յայս սաստէս եղեւ սով վայրի անասնոց եւ թռչնոց, եւ չգտանէին կերակուր ։ Եւ նեղեալք ի սովոյն դիմեցին ամէնն ի մարդիկ եւ ի շէնս. եւ նոքա անխնայ կոտորէին զնոսա ։ Իսկ ողորմածքն կերակրէին զնոսա ի տունս իւրեանց եւ արձակէին ։ Եւ ամենայն մարդ ի գութ ողորմութեան շարժէր ի վերայ նոցա ։ Եւ տէրն Նփրկերտոյ մեծ ամիրայն Նսրտօրն յամէն օր հրամայէր քառասուն քուրձ ցորեն եւ քառասուն գարի եւ քառասուն կորեկ եւ շատ խոտ եւ յարդ

ճապղէր ի վերայ գաւառաց, որ ունէին Թուչանք եւ անաստունք ։ Եւ յայս տարիս եղեւ սով սաստիկ ընդ ամենայն երկիր . վասնզի ի պակասութենէ ձմռանն չըկարացին ցանել ։

Ի Թուին 508 շարժեցաւ ամենայն տունն Պարսից . եւ շատ զօրօք գային ի վերայ քրիստոնէից . եւ շատ գաւառս ի սուր եւ ի գերութիւն մատնեցին ի Հայոց . եւ եկին ի Սեւաստ ։ Իսկ որդիքն Սենեքերիմայ՝ պարոն Ատոմ և Ապուսահլ յառաջ իմացան զգալն, փախեան ի Խաւատանէքն ։ Եւ Տաճիկքն յառաջ չհամարձակեցան մտանել ի քաղաքն . զի հեռու տեսանէին սպիտակ զգմբէթս եկեղեցեացն . եւ կարծեցին թէ վրանք զօրացն Յունաց է ։ Իսկ յորժամ իմացան թէ՝ դատարկ է քաղաքն ի զօրաց, բոլոր պատեցին եւ սրով կոտորեցին զբազմութիւն քաղաքին ։ Այր եւ կանայք պատուականք, քահանայք և սարկաւագք անկեալ ի մէջ արեանցն՝ ապաժոյժ թաւալէին . եւ ոչ ոք էր որ խնայէր կամ ծերի ողորմէր . այլ դիզեալ կային իբրեւ զփայտակոտոր . եւ ամենեքեան թաթաւեալ կային յարեան ճապաղիս ։ Հրով այրեցին զքաղաքն, եւ նստան ի նմա ութ օր . լցան անչափ գանձով եւ աւարաւ եւ անհամար գերութեամբ գեղեցկատեսիլ աղջկանց եւ մանկանց ։

Եւ ո՞վ կարէ պատմել զանցսն որ անցին ընդ քրիս֊

տոնեայքն յազգային Մահմետի յանտիրութենէ եւ ի
չար ազգէն Յունաց, որ խրեանց չար եւ անիրաւ
բնութեամբն խաւար ածին Հայոց ազգին ։ Քանզի
շատ ջանիւ քակեալ հանին յաշխարհէն Հայոց զյաղ֊
թող թագաւորսն, որք արիական ջանիւ հալածէին
զզունդս անօրինացն, որպէս բազէ զերամս կաքա֊
ւուց. եւ փոխանակ նոցա կուսակալք եւ գաւառա֊
պետք զկրտերն սահմանեցին ի տեղի քաջացն Հա֊
յոց. եւ այլ չխօկային գործ քաջութեան կամ պա֊
տերազմի ։ Բայց թէ քաջ զօրական զտանէին ի
Հայոց, զաչքն հանէին. եւ խրեանք, որպէս տկար
շունք որ չկարեն պահել զհօտն ի գայլոց, այնպէս
փախչէին, և թողուին զաշխարհն թշնամեացն յաւար
եւ ի գերութիւն ։ Որ ի մէկ տարին հասան մինչ ի
դուռն Կոստանդնուպօլսի. եւ առին զամենայն քա֊
ղաքսն ծովեզերոյն եւ զկղզիս նոցա. եւ արարին
զնոսա զէտ զընտանեաց ի Կոստանդնուպօլիս ։ Եւ
յիրաւի կրէին զայս. զի փոխան զրահիցն զոր կռուող
քաջքն հագնէին, նոքա զծոյս եւ զստորոտս եւ զթե֊
զանիս հալաւին մեծացուցանէին. եւ փոխան սաղա֊
ւարտիցն զծայր գտակացն պռացնէին. եւ փոխան
արանց պատերազմողաց զկրտերն հոտդէին. եւ
սկսան ուտել եւ ըմպել. եւ սուտ հաւատոյ քննու֊
թիւն առնել ընդ ամենայն ազգս. եւ բարձրամիտ
հպարտացեալ՝ զամենայն ազգս քրիստոնէից ատեցին

զէտ անհաւատ . եւ տուտ անուամբ զարգարեցին զանձինս՝ առելով զընական անունն որ կոչի Յոյն, և առեալ ի վերայ իւրեանց զանուն Հոռոմց՝ կոչին Հոռոմ ։ Եւ փոխան զինուք զԹշնամիս հարկանելոյ, զլեզուս սրեալ՝ զազգս քրիստոնէից սկսան աղճատել, եւ զիւրեանս միայն կարծեն քրիստոնեայս . եւ այսպէս չար կամօք նոցա մատնեցան ամենայն հաւատացեալք ի սուր եւ ի գերութիւն ։

Որ եւ ղայսու ժամանակաւ խորհեցաւ Տուկիծն խափանել զհայրապետութիւն յազգէն Հայոց, զոր արարն իսկ . և տարաւ զկաթողիկոսն զՏէր Խաչիկն յետ մահուան Տէր Պետրոսի հանդերձ եպիսկոպոսօք ։ Խնդրէին ի նմանէ զգանձն Տէր Պետրոսի . եւ պահեցին յաքսորս երեք տարի ։ Յարուցանէր հալածանս քրիստոնէից . եւ առնէր քննութիւն հաւատոյ . եւ կամէր ամենայն ջանիւ դարձուցանել զՀայոց քրիստոնեայսն ի ղաւանութիւն Քաղկեդոնի ։ Յայնժամ Թագաւորն Հայոց Գագիկ եւ որդիք Սենեքերիմայ՝ Ատոմ եւ Ապուսահլ եւ իշխանք Հայոց գունդ հեծելոյ գործեալ՝ հանին զկաթողիկոսն զՏէր Խաչիկ . եւ նստուցին յաթոռ հայրապետութեան ի Թաւբլուր, ի սահմանս Կոկիսոնի ։ Եւ կացեալ էր անդ (ի Կոստանդնուպօլիս) ամս երեք ։

Ի Թուին 511 գայ հրամանօք Տօղրիլ՝ սուլտանաց Պարսից, զօրագլուխ մի զօրօք. և հասեալ ի գաւառն

Կամախոյ եւ յԱրկնի՝ արարին անթիւ կոտորուածս.
եւ առին շատ գերի ։

Ի թուին 513 Ալպասլան սուլտանն եկն շատ զօ-
րօք ի վերայ քաղաքին Անւոյ, եւ պատեաց զնա
շուրջանակի ։ Քաղաքացիքն ելին ընդդէմ նոցա ի
կռիւ. եւ անօրէնքն բազմութեամբն յաղթեալ դար-
ձուցին (զնոսա) յետս եւ արգելին ի քաղաքին. եւ ի
յամել կռուոյն բեկեցան (քաղաքացիքն)՝ ոչ ունելով
օգնութիւն ուստեք. միայն յաղօթս ապաւինեալ
զԱստուած խնդրէին յօգնութիւն. եւ էր քաղաքն
լցեալ բազում ամբոխիւ ։ Եւ բաբանօք փլուցին
զպարիսպ քաղաքին, և չկարացին մտնուլ ի քաղաքն.
խորհեցան դառնալ յետս ։ Իսկ իշխանքն զոր դրեալ
էին պահապան քաղաքին՝ պարոն Սմբատ՝ հայր Բա-
գարատայ, եւ պարոն Գրիգոր՝ որդին Բակուրանայ,
սկսան ամրանալ ի կլայն. եւ սուլտանն եւ զօրքն
կամեցան գնալ ։ Իսկ քաղաքացիքն յամրանալ իշխա-
նացն բեկան. և ամենայն որք ի փախուստ դարձան ։
Եւ գլխաւորք քաղաքին անկանէին ի վերայ հողոյ
թագաւորացն, լային դառն զանտիրանալն իւրեանց ։
Եւ իմացան անօրէնքն, դարձան յետս, եւ մտան ի
քաղաքն. եւ գազանաբար յարձակեալ՝ սրով սկսան
կոտորել զամենեսեան. եւ առին գերի զկին եւ
զտղայս. եւ լցան աւարաւ. ձգեցին զմեծ խաչն ի
գմբեթէն ի վայր. ձգեցին զպլոր կանթեղն որ էր

կախած ի մէջ եկեղեցւոյն, եւ լուսեցաւ, զոր բերեալ էր Սմբատ տիեզերակալն ընդ բիւր մի ոսկի դեկանի. և ունէր կշիռս երկոտասան լիտր ։ Յորժամ ձգեցին զխաչն՝ եղև որոտումն և անձրև յոյժ, և եղից զգլխա-կունս կատորածին ի գետն, եւ մաքրեաց յարենէ զքաղաքն ։ Իսկ սուլտանն յոյժ ախտանեաց զկոտորել կանթեղին զի էր կարի գեղեցիկ ։ Եւ զխաչն տարան ի Նախիջուան, դրին առաջի դրան մզկիթին. եւ որ մտանէր եւ ելանէր՝ կոխէր զնա ։

Ի ժամանակին յայնմիկ էր Գագիկ ի Կարս. եւ յուղարկեաց առ նա սուլտանն գալ ի հնազանդու-թիւն ։ Եւ էր Գագիկ իմաստուն. խորհեցաւ զերծա-նիլ ի նմանէ խաղաղութեամբ. հագաւ զգրահ սև զէտ արգաւոր, և նստաւ ի վերայ սև բարձի ։ Եւ երբ ետե-սաւ զնա դեսպանն՝ հարցաւ եւ ասէ « Թէ դու Թա-գաւոր ես, է՞ր ես սեւ հագեր » ։ Եւ ասէ Գագիկ « յորմէ հետէ մեռաւ բարեկամն իմ Տողրիլ սուլ-տանն՝ եղբայր Ալփասլանայ, ես սև եմ հագեր. քանզի խիստ սիրէաք զիրեարս » ։ Եւ դարձեալ դեսպանն՝ երթեալ պատմեաց սուլտանին. եւ նա լսեց եւ հիա-ցաւ յոյժ. եւ սիրեաց զԳագիկ վասն բարեկամու-թեան եղբօրն. և եղաւ՝ ամէն հեծելովն եկն ի Կարս առ Գագիկ ի տես. եւ արար ընդ նա սէր եւ ուրա-խութիւն մեծ. եւ հագոյց նմա հալաւ թագաւորա-կան ։ Եւ արար Գագիկ պատիւ սուլտանայ և զօրաց

նորա ։ Զայս ևս յետ արար Գագիկ · եւ զերծաւ խաղաղութեամբ ։

Զկնի սակաւ աւուրց դարձոյց Գագիկ զԿարս ի Յոյնս · և նոքա տուին նմա զԾամնդաւ և զԿեսարիա և զԽաւատանէքն ։ Արդ այսպէս քանդեալ տապալեցաւ տունն Հայոց ։ Եւ կատարեցաւ առ մեզ բանն մարգարէին որ ասէ « երկիր ձեր աւերակ · քաղաքք ձեր հրձիգ · զաշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն » ։ Եւ զնոյն բանս ասաց երանելի կաթողիկոսն սուրբն Ներսէս յորժամ անէծ զԱրշակ և զորդին զՊապ ։ Նա այսպէս անիծեաց « Թէ մի պատկանեսցի լուծ ծառայութեան ի պարանոցէ ձերմէ հանապազ · զվայելուչ աշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն · և հարկ տան որդիք որդւոց ձերոց անօրինաց » ։ Այս ամենայն վասն չար գործոց իւրեանց · զի չատ խորատէր զնոսա · եւ նոքա ոչ լսէին ։ Նա տրտմեալ անէծք եհան · եւ յիւր փոխումն առ Քրիստոս՝ պատմեաց զինչ գալոց էր ի վերայ աշխարհին արևելից ։ Եւ կրեցաք զայս կորուստ վասն մեղաց մերոց ի թոյլ տալոյ կամացն Աստուծոյ ։

Ի սոյն ամի մեռաւ կաթողիկոսն Տէր Խաչիկ · եւ Գագիկ եդ կաթողիկոս զՏէր Վահրամ՝ այր սուրբ եւ գիտնական ։ Սա է որ Գրիգորիս վկայասէր կոչեցաւ ։

Յայսմ ժամանակի թագաւորն Յունաց Տուկիծն

եւ պատրիարքն Յունաց եւ ամենայն կղերիկոսքն խորհուրդ արարեալ խորհէին եղծանել եւ բառնալ զկարգս եւ զաւանդութիւնս Հայոց եկեղեցեաց. եւ առաքեն ի Սիւաստ եւ կոչեն զորդիս Սենեքերիմայ՝ զԱտոմ եւ զԱպուսահլ ի Կոստանդնուպօլիս։ Եւ նոքա ծանուցեալ զնենգութիւն նոցա, եւ առեալ ընդ իւրեանս զվարդապետն Յակոբ Քարափնեցի՝ գնացին ի Կոստանդնուպօլիս։ Յառաջ պատուով ընկալաւ զնոսա Թագաւորն. եւ զկնի աւուրց սկսաւ յայտնել զչար խորհուրդն եւ ասէ « հրամայէ Թագաւորութիւնս մեր զի դուք եւ ամենայն իշխանք Հայոց առնուք յանձն զմկրտութիւն Յունաց ազգին »։ Նոքա պաշարեալ ի մեծ տարակուսի՝ ասեն ցԹագաւորն « մեք առանց Գագկայ՝ որդւոյ Աշոտոյ, ոչ կարեմք տալ պատասխանի, զի այր քաջ է եւ Թագաւոր եւ փեսայ մեր. առաքեա՛ եւ կոչեա՛ զնա. զի թէ առանց նորա առնեմք զայս՝ հրով այրէ զմեզ և զազգն մեր »։ Թագաւորն չկամեցաւ զայս առնել. քանզի հզօր էր Գագիկ ի գիտութիւն իմաստից. իսկ Ատոմ եւ Ապուսահլ յղեցին ի ծածուկ եւ իմաց արարին Գագկայ։ Եւ Թագաւորն Տուկիծ արար քննութիւն ընդ վարդապետն Յակոբ. եւ լսեց ի նմանէ շատ պայխոսն (պատասխանի), բայց սակաւ մի առակաւ յաղագս երկու բնութեան՝ որ ասէին ունել Քրիստոսի, ի կողմն Յունաց դարձաւ։ Եւ ընդ

ամենայն բանս նորա հաճեալ Թագաւորն՝ հրամայեաց այնր ի վերայ գրել զգիր միաբանութեան ընդ Հայս եւ ընդ Յոյնս . եւ ետ դնել զգիրն ի սուրբն Սոփի, որպէս թէ միաբան եղեն Հայք եւ Յոյնք ։ Եւ նոյնժամայն որպէս զարծիւ հասաւ Գագիկ ի Կոստանդնուպօլիս . եւ լուեալ Թագաւորն ուրախացաւ յոյժ ։ Մտաւ Գագիկ առ Թագաւորն Տուկիծ . եւ նա ետ բերել զգիր միաբանութեան, զոր երբ կարդաց Գագիկ՝ պատառեաց եւ ձգեաց առաջի Թագաւորին . ընդ որ յոյժ ամաչեաց Տուկիծ ։ Եւ ասէ Գագիկ ցՏուկիծն « ո՛վ Թագաւոր՝ այսպիսի արք բազում կան յաշխարհին Հայոց, եւ ոչ ունիմ զսոսա ընդ վարդապետս » . և շատ բանիւ յանդիմանեաց զվարդապետն եւ ասէ « ընդէ՞ր այսպէս իշխեցեր խօսել ընդ ամենայն Հայոց » ։ Եւ ասէ Թագաւորն (35) . « ո՛վ արքայ՝ ծանի՛ր զի ես որդի եմ Թագաւորացն Հայոց, եւ եմ Թագաւոր Հայոց . եւ ամենայն Հայք հնազանդ են ինձ . եւ ամենայն հին եւ նոր կտակարանաց հմուտ եմ . այսօր խօսիմ ընդ Յունաց վասն ուղղափառ դաւանութեան սուրբ Երրորդութեանն և մարդեղութեան Քրիստոսի, ըստ դաւանութեան սուրբ հարցն » ։ Եւ բազում բանիւ հաւանեցոյց զԹագաւորն եւ զպատրիարքն . եւ արարին սէր ։ Եւ շատ իրք օժտեաց Տուկիծն Գագկայ եւ որդւոցն Սենեքերիմայ եւ ամենայն իշխանացն Հայոց ։ Եւ

փառաւորեցաւ Գագիկ ընդ ամենայն վարդապետաց տանն Հայոց :

Յայսմ ժամանակի պայծառանայր գիտութեամբ սուրբ եւ ճոխաբան վարդապետն Գրիգորիոս Նարեկացին :

Յայնժամ ելաւ Գագիկ ի Թագաւորէն, եւ գնայր զայրացմամբ. եւ ընդ որ անցանէր՝ խայտառակել տայր զփառաւոր կանայս եւ զաղջկունս Յունաց, եւ զգանձ նոցա խլէր. քանզի եդ ի մտի բնաւ չմտանել ի Կոստանդնուպօլիս. և ոչ գնալ ի կոչն Յունաց. այլ խորհեցաւ գնալ առ Ալփասլան՝ սուլտանն Պարսից եւ տիրանալ աթոռոյ Թագաւորութեան իւրոյ, որպէս եւ կոչեալ էր զնա շատ անգամ. եւ նա վասն Քրիստոսի հաւատոցն արգելէր :

Էր յաւուրսն յայն մետրապօլիտ մի ի Կեսարիա Մարկոս անուն՝ յոյժ անուանի եւ փարթամ եւ հայհոյիչ աշխարհիս Հայոց : Նա շատ աղճատէր զՀայերն, եւ այնչափ, մինչ զի շանն անուն արմէն էր դրել : Իսկ Թագաւորն Գագիկ գիտէր զչարիս նորա, եւ սպասէր դիպող ժամու առնել չար գործոց նորա փոխարէն : Եւ յորժամ եկն ի Կեսարիա, էառ իջեւանս ի տուն Մարկոսի. եւ Մարկոս ընկալաւ զնա ուրախութեամբ յոչ կամաց : Իբրեւ ճաշեցին և ուրախացան ի գինի, ասէ Գագիկ ցՄարկոս « լսել եմ թէ մեծ շուն ունիս, եւ կամիմ տեսանել զնա » :

Ջայնեայ մետրապօլիտն գլուխն եւ ասէ « արմէ՛ն, արմէ՛ն » եւ եկն չունն ։ Եւ ասէ Գագիկ « արմէ՞ն է անուն շանդ » ։ Ասէ Մարկոս « վասն բազում զօրութեանն կոչեմք զնա արմէն » ։ Եւ ակնարկեաց Գագիկ զինուորացն . եւ նոքա կալան զգլուխն եւ ածին ի քուրձ մի զոր յառաջ սարեալ էին ։ Տեսեալ զայն Մարկոս՝ բարկացեալ խլէր զգլուխն ։ Եւ քմծաղրեալ Գագկայ՝ հրամայեաց բռնել զգլուխ Մարկոսն եւ ածել ի քուրձն ընդ շանն ։ Եւ նոքա արարին այնպէս . կապեալ զբերան քրձին սկսան դալար փայտօք ծեծել զգլուխն. և շունն բարկացեալ լափէր զՄարկոս, մինչև սատակեաց զնա ։ Եւ հրամայեաց (Գագիկ) թալնել զտունն . եւ էառ զգանձս նորա զարծաթ եւ զոսկի եւ զանասունս եւ զձիս եւ զջորիս . եւ գնաց ի տուն իւր ։ Զայս այսպէս իշխեաց գործել թագաւորն Հայոց Գագիկ ի մէջ Յունաց . եւ ոչ գնաց ի Յոյնք եւ ոչ՝ ի կոչն նոցա ։

Արդ յաւուրս Գագկայ Շահնշահի՝ արքայի Հայոց, եղեւ նշան զարմանալի վասն սուրբ խորհրդոյն ի վանքն Պիզու, զոր շինեաց Գագիկ՝ արքայ Հայոց. զի յաւուր սուրբ Պենտէկոստէին մասն ի սուրբ խորհրդոյն անկեալ էր առաջի սուրբ սեղանոյն անգիտութեամբ . եւ ի միւս օրն տեսին երազ ի գիշերի երկու արժանաւոր կրօնաւորք . եւ եկին յառաջ քան զհարցըն՝ ասեն հօր վանայն եւ ամենայն սուրբ եղբարցն

զօրաւորութիւն երազին ։ Ոմն ասէր « տեսայ զկանթեղն որ կախեալ կայ ի գմբէթ եկեղեցւոյն՝ զի անկեալ էր առաջի սուրբ սեղանոյն, եւ մնաց անշիջանելի լոյսն ի նմա »։ Մէկ այլն ասէր « տեսայ զի աստղ մի մեծ անկեալ էր յերկնից առաջի սուրբ սեղանոյն, և լոյսն առաւել բորբոքէր ի նմա »։ Զարմացան ամենեքեան. ապա և հայր վանացն գիտաց հոգւովն եւ ասէ. « տեսէք, մահն է անկեր առաջի սուրբ սեղանոյն »։ Եւ նոյնժամայն մոմեր վառեցին. եւ առեալ դողալով՝ գոհացան զԱստուծոյ ։

Ի թուին 516 մեռաւ թագաւորն Յունաց Տուկիծըն. եւ մնաց նորա որդի մի Միխայէլ անուն. եւ եկաց աթոռն տարի մի անթագաւոր ։ Եւ թագուհին, որոյ անունն էր Եւդոքսիա յետ մէկ տարւոյ, որ ինքն ունէր զթագաւորութիւնն, եբեր ի ծածուկ իշխան մի անուն Ռոմանոս, եւ մականունն՝ Տիոժէն. եւ ամուսնացաւ ընդ նմա. և պահեաց զնա ի սենեկին. և կոչեաց զկեսարսն՝ զեղբայր Տուկիծին. և ասաց փորձելով « զինչ տրասցուք, զի աթոռ թագաւորութեանս անտէր կայ, եւ Միխայէլն տղայ է ». եւ պատրողական բանիւք կամէր կորուսանել զնա ։ Ասէ կեսարսն « ինձ զինչ փոյթ է այդ. զի ես եւ որդիք իմ ծառայք քո եմք. եւ դու քո կամօք ում կամիս՝ տուր զթագաւորութիւնդ »։ Եւ զարմացաւ թագուհին ընդ իմաստութիւն նորա և ասէ « արի, մուտ ի

սեննեակն, եւ երկի՛րպագ Թագաւորին »: Եւ նա մտեալ երկիրպագանէր, եւ գոհանայր զՏեառնէ. չխօսեցաւ հակառակ նմա: Եւ վաղիւն տարեալ զՏիոժէնն ի սուրբ Սոփի՝ օծեցին Թագաւոր բազմ-ամբոխ ժողովով:

Յայսմ ամի շարժեալ Ալպասլան սուլտանն ահա-գին զօրօք՝ գայր, հասանէր ի վերայ քաղաքին Մանծ-կերտոյ. եւ չկայր պահող: Նա ի մէկ օրն էառ զնա, եւ կոտորեաց զամէնն վասն առաջին հայհոյութեան եղբօրն իւր Տօղրիլ սուլտանայ: Եւ ելաւ անտի եւ երեկ յԱմիթ. եւ սիրով բնակեցաւ ի դուռն քաղա-քին: Եւ ծնաւ կին նորա որդի. եւ կոչեաց զանունն նորա Դուդուշ. և գայր, հասանէր մինչև ի սահմանս Ուռհայոյ. եւ բազում քաղաք եւ բերդեր էառ:

Յայսմ ամի զգեցաւ Տիոժէնն հանդերձ աբեղայի. եւ ըմբռնեալ զնա Յունաց փորեցին զաչս նորա: Եւ նստաւ Թագաւոր Միխայէլն՝ որդի Տուկիծին. եւ եղև այր բարի, ողորմած եւ աստուածասէր, կացեալ Թագաւոր ամս չորս: Եւ ոխացեալ ատէր զնա Թա-գուհին վասն մաքրութեան վարուց իւրոց, զի էր պարկեշտ ի ցանկութիւն մարմնոյ. եւ տուփացեալ յիշխան մի որում անուն էր Վոտոնիատ՝ (36) յա-րուցանէր զնա ի վերայ Միխայէլին, ընդ նմին եւ զամենայն Կոստանդնուպօլիս: Զոր երբ տեսաւ Մի-խայէլն՝ չեկաց հակառակ նոցա. այլ յայտնի անիծեաց

զԹագուհին. և Թողեալ զԹագաւորութիւնն՝ կրօնաւորեցաւ ի վանս ճգնաւորաց ։ Եւ Թագաւորեաց Վատոնիատն և էառ զկին Միխայէլին աղտեղութեամբ և պոռնկութեամբ. և գործեցաւ այս ի 525 ։

Ի Թուին 526 մեռաւ կաթողիկոսն Տէր Վահրամ ։ Իսկ Թագաւորն Վատոնիատ մի տարի եկաց Թագաւոր. եւ զղջացաւ յոյժ վասն նենգութեանն, զոր արար ասուրբ Թագաւորին Միխայէլին ։ Ապա նստոյց Թագաւոր զՄելիտինեանոս անուն. եւ ինքն կրօնաւոր եղև ։

Ի Թուին 528 եղև սով սաստիկ ընդ ամենայն աշխարհ հաւասար ։ Եւ այս վասն Թուրքին տարածելոյ եղև ընդ ամենայն երեսս երկրի. քանզի յաւերմանէ նոցա փախեաւ ամենայն վաստակ երկրագործաց. և վասն այսորիկ տարածեցաւ սով ընդ ամէն երկիր. եւ ոչ գտանէին հաց կամ հանգիստ բայց միայն յՈւռհայ և ի սահմանս Անտիոքու և յաշխարհն Կիլիկեցւոց ։ Որ եւ անդ գային յամենայն գաւառաց. եւ լցաւ մարդով զէտ մարախ բազմախիտ. եւ արք եւ կանայք փառաւորք մուրային աղքատապէս, եւ ի խիստ սովոյն մեռանէին ։ Եւ լցաւ երկիր դիակամբք մեռելոց. եւ ոչ ոք Թաղէր քանզի լքան ի շատութենէն. եւ մեռանէին ի լերինս, եւ լինէին կերակուր գազանաց եւ Թռչնոց ։ Եւ վասն մեզաց մերոց այսպէս եղև սկիզբն աւերման տանն արևելից ։

Յայնժամ ամի գնաց Գագիկ՝ արքայ Հայոց, հաղար հեծելով ի քաղաքն Տարսուս առ պարոն Ապլղարիպ իշխանն յաղագս խնամութեան բանի՝ կոչմամբ Ապլղարիպին. եւ վասն պատճառի ինչ չեղեւ խնամութիւն։ Եւ դարձաւ Գագիկ մնչելով եւ բարկութեամբ. եւ եկեալ էջ ի դաշտն Արծիաստու մերձ ի բերդն որ կոչի Կիզիստռէ, զի էին բերդատէրքն երեք եղբարք՝ իշխանք հոռոմ, որդիք Մանտալէի։ Եւ Գագիկ թողեալ զզօրան մոլորեցաւ ի ճանապարհէն երեք մարդով. եւ ելան երեքեան առ նոսա։ Իսկ նոքա նենգութեամբ յառաջ քմին ձգեցին յիսուն հեծեալ Գագկայ։ Եւ յորժամ մերձեցան ի բերդն՝ գային իշխանքն ի բարեւ նմա. և Գագիկ խոնարհեալ ի ձիոյն կոչէր զնոսա ի համբոյր։ Յորժամ մերձ եղեն ի համբոյր՝ գլկեցին զվիզն Գագկայ, եւ քաշեցին ի ձիոյն ի վայր. և ելեալ որ ի քմին էին՝ բռնեցին զԳագիկ եւ ածին ի բերդն։ Իմացան զայս զօրքն նորա եւ ցրուեցան։ Յետ ութ աւուր ժողովեցան ի վերայ բերդին ամենայն զօրքն Հայոց՝ Գագիկ՝ որդին Աբասայ, եւ ամենայն ցեղն Սենեքերիմայ՝ պարոն Ատոմ եւ պարոն Ապուսահլ եւ ամենայն իշխանք Հայոց. եւ շատ օրեր պատերազմեալ չկարացին առնուլ վասն ամրութեանն։ Իսկ իշխանքն որ բռնեցին զԳագիկ՝ չհամարձակեցան թողուլ զնա յահէ նորա. հայնց որ Ֆիլարտոս՝ տէրն Անտիոքու,

գրեալ առ նոսա եւ ասէ թէ « Է՞ր համարձակեցայք ընդ Թագաւոր մարդ գործել զայդ. ապա թէ թողուք և թէ ոչ՝ կորուստ ձեզ գործեցիք » ։ Յայնժամ անօրէն իշխանքն խեղդեցին զԹագաւորն Հայոց զԳագիկ, եւ կախեցին ընդ պարիսպն ի վայր օր մի . եւ ապա հանեալ Թաղեցին զնա ի դրուց բերդին ։ Եւ մէկ մի Բանիկ անուն, ասէին, գողացաւ զմարմին Գագկայ և տարաւ ի քաղաքն և յազգն իւր ։ Եւ արարին կոծ մեծ ի վերայ նորա ազգն Հայոց . եւ Թաղեցին զնա ի վանքն Պիզու ։ Եւ մնաց իւր աւագ որդին Յովհաննէս ։ Աստանօր խափանեցաւ թագաւորութիւն ի տանէն Հայոց եւ յազգէն Բագրատունեաց ։

Ի թուին 530 ձեռնադրեցին կաթողիկոս Հայոց զարքեպիսկոպոս Անոյ զՏէր Բարսեղ ։

Ի թուին 540 եղեւ շարժ սաստիկ ընդ ամենայն երկիր յամսեանն Սեպտեմբերի, եւ արար շատ վնաս ի Մծբին եւ յԱնտաք . եւ բազումք սպանան ներքոյ տանց իւրեանց ։

Ի թուին 541 եղև մահտարաժամ ընդ ամենայն երկիր . եւ ոչ կարէին թաղել զմեռեալսն ։ Եւ յորժամ սպանաւ Գագիկ, նա եւ զօրքն եւ իշխանքն ցիր և ցան եղեն ։ Եւ մէկ մի յիշխանացն, զոր պարոն Կոստանդին ասէին, որդի պարոն Ռուբենի (37) ։ Սա երեկ ի լեառն Տօրոս, եւ քաջութեամբ խլեց զմեծ մասն լերինն, որ է առաջին բերդ Վահկայն ։

Ի թուին 549 հանգեաւ ի Քրիստոս մեծ իշխանն պարոն Կոստանդին : Եւ յառաջ քան զմեռանելն նորա եղև զարմանալի նշան ի բերդն սորա Վահկայն. ցոլաց կայծակն ի մածառոստանն (38). եզարկ զարծաթի սիւնին. և տարաւ ի տան ի մէկ այլ կողմն, ու մնոյց եօթն սկաւտեղի ներքև. յորում աւէին զայն գուշակումն մահուան պարոն Կոստանդնի. որ և ի նոյն ամի մեռաւ. և թաղեցաւ ի սուրբ ուխտն Կաստաղոն : Եւ եղև պարոն որդին իւր Թորոս : Ի սոյն ամի եղև սով ընդ ամենայն երկիր, և ի քաղաքն Ուրհայ նեղութիւն մեծ զի տարի մի անձրև չերեկ. ա՜յնչափ խստեց սովն, մինչ կիւն մի յոյն խաշեաց զիւր տղայն եւ կերաւ, եւ տաճիկ մի զիւր կինն կերաւ. վասն զի երեկ Աստուած զզօրութիւն հացի. ուտէին և չկշտանային : Եւ ի նոյն տարւոջ եղև յԱստուծոյ առատութիւն կերակրոց եւ ըմպելեաց :

Ի թուին 555 փլաւ սուրբ Սոփին ի քաղաքն յՈւր-հայ. եւ երևեցաւ աստղն գիսաւոր :

Ի սոյն թիւ 555 եղեւ նշան սոսկալի ի յաշխարհն Հայոց, ի գաւառն Վասպուրականի. զի հուր ցոլաց յերկնից, եւ անկաւ ի ծովն Վասպուրականի մեծ որոտմամբ. և սատակեցան ամենայն ձկունք ծովուն. եւ հոտեցան վայրքն ի հոտոյն, եւ ի տեղիս տեղիս պատառեցան : Ցայսմ ամի խնդրեցաւ վրէժ արեանն Գագկայ ի սպանողաց իւրոց. եւ այսպէս եղև : Ու-

նէին որդիքն Մանտալէի բերդ մի ամուր մերձ ի Զկնջուրն՝ լեռնահայեաց ի Գամրաց աշխարհին. եւ դեռ կենդանի էին երեքին եղբարքն ։ Եւ անուն բերդին Կիզիստռէ՝ խիստ ամուր. եւ մէկն ի նոցանէ ունէր ընդ պարոն Թորոսի սէր և միաբանութիւն՝ ընդ որդւոյն Կոստանդնի որ էր տէր Վահկային ։ Եւ խոստացեալ էին Թորոսի տալ ի նա զբերդն զայն զի մերձ եւ սահմանակից էր նորա ։ Եւ ելաւ իշխանն Հայոց պարոն Թորոս սակաւ զօրօք, եկն առ նոսա սիրով. եւ իջեալ ի սահմանքն իմաց արար նոցա զգալն իւր ։ Յայնժամ մէկ եղբայրն էառ ընծայս, և գայ առ պարոն Թորոս, եւ դաշնակ մի պատուական և հալաւ մի դնէր առաջի ։ Յորժամ կերան և խմեցին յիշեաց պարոն Թորոս զխոստումն բերդին զոր ունէին յառաջ, եւ ուզէր կատարել. եւ նա ստեալ երդմանն ասէ « չկարեմք տալ զի մեր հայրենիք է »։ Յորժամ տեսաւ պարոն Թորոս թէ խաբեցաւ ի նոցանէ՝ ասէ սրտմտութեամբ « արի, ա՛ռ զքո ընծայքդ եւ գնա՛. եւ յայսմհետէ պատրաստ կացէք յինէ »։ Եւ դարձաւ պարոն Թորոս դիմօք ի տուն առաջի աչաց նորա ։ Իսկ ի գիշերին դարձաւ յետս ծածուկ, եւ եդիր զհետևակսն շուրջ բերդին. եւ ինքն հեծելովն հեռանայր ։ Ի լուսանալ առաւօտին ելին բնակիչք բերդին՝ ամէն մարդ յիւր գործն. եւ յանկարծակի տեսան զքմին, և փախչէին դար ի վեր ի բերդն

եւ պարոն Թորոսն վարէր զնոսա. որ ոչ ժամանեալ ի բերդն՝ զներքսի դուռն փակեցին ընդդէմ հետեւակացն, եւ զդրուցին չկարացին փակել. Հետեւակն խլեց զդուռն. և հուր բորբոքեցին ի բերդն, և յոյժ բոընկեց: Վախեցան բնակիչք բերդին, բացին զգաղտ դուռն, եւ սկսան փախչել: Պարոն Թորոս խիստ ուրախացաւ, եկաւ, մտաւ ի բերդն. ապա սկսաւ քըննել զգանձս նոցա. քանզի ամենայն գաւառին ոսկի եւ արծաթ անդ էր ժողովեալ: Եւ ասէ պարոն Թորոս ցորդիսն Մանուալէի «բերէ՛ք զԹուրն Գագկայ և զպատմուճանն Թագաւորական». և նոքա բերին: Եւ տեսեալ պարոն Թորոս և զօրք իւր լացին դառն: Եւ սրտմտեալ պարոն Թորոս հրամայեաց ցուցանել զտունն գանձուցն իւրեանց. եւ նոքա ոչ ցուցանէին: Եւ ասաց չարչարել զնոսա. և մինն նեղեալ ի չարչարանացն անկաւ ընդ բերդն ի վայր և մեռաւ: Եւ սկսաւ զաւագ եղբայրն չարչարել. եւ նա լրբենի երեսօք ասէ «դու հայ մարդ ես. եւ մեք հոռոմ իշխանք՝ ի՞նչ պացխուն տաս մեր Թագաւորին որ կուդատես զհոռոմ մարդ»: Յայնժամ բարկացաւ պարոն Թորոս և ասէ «և դուք որ զայր հզօր և զօծեալ Թագաւոր սպանիք՝ ի՞նչ պացխուն տայք Հայոց ազգիս». եւ էառ կռան մի ի ձեռն, գնաց ի վերայ լալախառն, եզարկ զնա ի գլուխն եւ սատակեաց: Յայնժամ գոհացաւ պարոն Թորոս զԱստուծոյ որ ար֊

ժանի արար զինչն առնուլ ի Նոյանէ զկրէժ արեանն Գագկայ․ քանզի մեծ հայրն նորա Ռուբէն յիշխանութեան Գագկայ էր ։ Այպս էառ բազում գանձս ոսկի և արծաթ և զմէկ եղբայրն, և եկն ի Վահկայն․ և զյնակիչան բերդին բնակեցոյց առ ափն գետոյն Պառատխոյ, որ այժմ Արակկա կոչի անուն աւեղեացն ։

Ի թուին 561 մեռաւ մեծ իշխանն Հայոց և տէրն Հռոմկլային զօղ Վասիլն․ եւ եղեւ սուգ մեծ ամենայն Հայոց․ զի Թնացեալ իշխանքն Հայոց առ նա էին ժողովեալ․ և աթոռ հայրապետութեան Հայոց անդ եղաւ ։ Եւ էր խոստովանահայր նորա Տէր Բարսեղ կաթողիկոսն, զոր եզ հոգաբարձու ընչից իւրոց․ և յանձնեաց (Նմա) զնետ ի յիւր տեղն զորդայ Վասիլն որ էր սնեալ ի տանն որպէս զիւր որդի ։ Եւ յայսմ ամի մեռաւ Տէր Բարսեղ․ և զդին կաթողիկոս զՏէր Գրիգորիս ։

Ի թուին 563 շարժեցաւ երկիր ի բարկութենէն Աստուծոյ յամսեանն Մարերի ի տօնի Գիւտ խաչին, ի մէջ գիշերի երերայր երկիր, և գոչումն և որոտումն լինէր յանդնդոյ․ խռովեցաւ ծովն․ հեծծային լերինք և բլուրք․ և շատ քաղաքք կործանեցան ։ Փլան Անտաք, Մսիս, Հասանմսուր, Քեսուն, Ապլաաթայն (39), Ռապան, Սամուսատ, եւ Մարաշ հիմն ի վեր շրջեցաւ․ եւ կորեան ոգիք քառասուն հազար ։ Եւ ի Սև

ըստան, յանապատն Բարսեղեանց ժողովեալէին եկեղեցի օրհնել վարդապետք եւ կրօնաւորք . յորոց վերայ փլաւ եկեղեցին եւ սպան երեսուն աբեղայ եւ երկու վարդապետ ։ Ցայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս վարդապետն Գէորգ Մեղրիկն ։ Սա եդ զկանոնս ի Դրազարկն . և ինքն անդ թաղեցաւ ։

Ի թուին 564 եղև նշան սոսկալի ի յԱմիթ՝ քաղաքի Տաճկաց . զի հուր էջ յերկնից ի վերայ իւրեանց մզկթին . եւ վառէր քարն զէտ փայտ . եւ ամենայն քաղաքն անդ կուտեցաւ անցնել զկրակն, և չկարացին, զի չէր զգալի կրակն. և բորբոքեալ այրեաց զաղօթարանն զայն ։ Ի սոյն ամի եկն Բազուխն (40) բազում զօրօք ի վերայ Սեհլին որ էր Ցուանկաց . եւ էառ զՍիզարն . և աւերեաց զերկիրն Անտաքու ։

Ի թուին 570 կոտորեաց թագաւորն Վրաց զմեծ ամիրայն Պարսից որում անէին Խազի (41). որ եկն յաշխարհն Վրաց, որ էր համարն հարիւր յիսուն հազար ։ Ի սոյն ամի եղեւ պատերազմ թռչնոց ի դաշտն Մելտինոյ . ժողովեցան արագիլք և կռունկք եւ արօսք, եւ կռուեցան ընդ իրեարս . եւ յաղթեաց կռունկն և փախոյց զնոսա ։

Ի թուին 578 մեռաւ պարոն Թորոս՝ որդին Կոստանդնի և թոռն Ռուբենայ . և էառ զիշխանութիւնն եղբայրն իւր պարոն Լևոն ։

Ի թուին 581 պարոն Լևոն էառ զքաղաքն Կիլի-

կեցուց զՏարսոն և զԱտանա և զՄսիս․ և յարեան ազգն Ֆռանկաց ի վերայ նորա․ և անձնըհոտիր լինելով տապալեցին զերկիրն ։

Ի Թուին 582 զՄսրայ (42) երկիրն առին և աւերեցին զօրքն Հայոց ։

Ի Թուին 584 պարոն Լևոն էառ զՍարուանդի քարն․ և եղև խռովութիւն ի մէջ Ֆռանկնոյն և պարոն Լևոնի ։ Եւ եղև պարոն Լևոնն և իւր քեռորդին ի մի կողմն, եւ Թագաւորն Երուսաղէմի եւ Անտիոքայ՝ ի մի կողմն․ և աւերեցին զերկիրս Կիլիկեցւոց ։ Եւ ազգն Թուրքին զկնի նոցա գերեաց զազգն Քրիստոնէից անհամար և չատ ։

Ի Թուին 585 պարոն Լևոն խանգարեաց զպարոն Պաղտին՝ տէրն Մարաշայ ։ Եւ յետ երեք տարւոյ որդի Պեմնդին Պայմունդն՝ տէրն Անտաքայ, կալաւ զպարոն Լևոն ։ Եւ որդիքն Լևոնի յարեան միմեանց հակառակ․ և կալեալ զեղբայրն (իւրեանց) Կոստանդին՝ հանին զաչքն ։ Եւ յետ երկու ամսոյ էառ (Պայմունդն) զորդիսն պարոն Լևոնի պատանդ, եւ զին փրկութեան հազար դեկան, եւ զՄսիս եւ զԱտանա եւ զՍարուանդի քարն, և արձակեաց զԼևոն ։

Յայսմ ամի եւ Թագաւորն Յունաց Պերիկոժէնն (43)․ և եկն, էառ զԽալիճն և զԱնաւարզա և զԼամբրոյն և զԱմոյքն և զՑախութան և զամուր ամրոցանիս նորա․ եւ եա բանեւ զկին եւ զորդիս պա-

րոն Լևոնի . և ինքն պարոն Լևոն եկն առ Թագաւորն . և նա յղեաց զնա ընտանեօք ի Կոստանդնուպօլիս, և զպատկեր սուրբ Աստուածածնին Անաւարզայ : Եւ Թագաւորն եկաց ի Կիլիկիայ տարի մի և վեց ամիս . և գնաց մինչ ի Հալպ և ի Միղարն . ոչ ինչ արիութիւն եցոյց :

Ի թուին 587 եկն Ահմէտ մէլիքն . և առ զԼևոնին տեղիքն ի Հոռմէն՝ զՎահկայն և զԿապանն և զԿարմիր լեառն :

Ի թուին 588 մեռաւ պարոն Լևոն ի Կոստանդնուպօլիս :

Ի թուին 589 ել Պերփերոժէնն ի վերին կողմն Պոնտոսի և Գամրաց . և բնակիչք Տօրոսի ի նա ապաստան եղեն . և մտեցին ի Թուրքէն . և յորժամ գնաց Թագաւորն՝ Մնացին ցիր և ցան, և եղեն փախստական . և Մնաց երկիրն Լևոնի աւեր :

Ի թուին 590 գնաց կաթողիկոսն Տէր Գրիգորիս ի յԵրուսաղէմ : Եւ եկն առ նա Լեկաթն (44) . և խօսեցան ընդ միմեանս բան հաւատոյ : Եւ զոր ասաց հայրապետն՝ հաւանեցաւ Լեկաթն . և մեծարեցին զՏէրն ի տօնի զատկին :

Ցայսմ ամի մանուկ մի Թորոս յորդւոյն Լևոնի՝ որդւոյ Կոստանդեայ, զոր առաքեաց Թագաւորն կապանօք ի Կոստանդնուպօլիս : Այս Թորոս փախեաւ ի ծառայութենէ . գայ ի սահմանս Վահկային

ծածկեալ զինքն թէ ո՛վ էր իմաստութեամբ քիչ քիչ ձգէր առ ինքն արս աջողակս ի քահանայից և յաշխարհականաց . քանզի էր այր խոհեմ և զգօն և ի կռիւս յաջողակաձեռն, տեսանե թխամորթ, երկայն և գեղեցիկ և աչարկու, գանգրահեր, և լի ամենայն շնորհօք ։ Որ և օգնութեամբն Աստուծոյ ի քիչ օրեր տիրեաց հայրենեաց իւրոց . եւ էառ զՎահկայն եւ զԱմուտայն և զՍիմանակլայն և զԱռիւծ բերդ ։ Իսկ յօրերս երեա կինն պարոն Ճօսլինին զՀռոմկլայն սուրբ կաթողիկոսին Տէր Գրիգորիսի ձեռնագրով զի մնասցէ աթոռ հայրապետութեան Հայոց . եւ կայ գիրն մինչև ցայսօր ։

Ի թուին 600 յամսեանն Նաւասարդի քսան երեք եկն ձիւն կարմիր մոխրախառն . եւ ի տարիս (յայս) էառ պարոն Թորոսն ի Հոռմէն զՄսիս և զԹիլն . և բռնեց զդուքն Թոմաս ։ Եւ դուքն Անդրոնիկէ, որ ունէր զպահպանութիւն Կիլիկեցւոց աշխարհին, հրամանաւ թագաւորին Յունաց եկն երկոտասան հազար հեծելով ի վերայ պարոն Թորոսի, ի քաղաքն Մսիս, և նախատանօք ձայնէր առ Թորոս և ասէր « Թէ ահա՛ ունիմք զերկաթի կապանք հօրն քո Լևոնի . առվաւ կապեմք զքեզ և տանեմք ծառայ» ։ Երբ լսեց զայն պարոն Թորոս՝ չկարաց համբերել . այլ յուսացաւ յԱստուած . ժողովեաց զզօրսն իւր . և պատառեաց զպարիսպ քաղաքին Մսիսոյ . եւ ի գիշերի յարձա-

կեալ առիւծաբար ի վերայ նոցա՝ կոտորեաց զնոսա եւ խանգարեաց ։ Եւ մեռան ի կուրին առաջի դրան քաղաքին պարոն Սմբատ՝ տէր Պապառոնին , պարոն Վասիլ՝ տէր Բարձրբերդոյ, և պարոն Տերին և պարոն Տիգրան որ էին ի կողմն Յունաց թագաւորին ։ Եւ զթուլամորթ Յոյնսն կալեալ ի դաղարել կուռոյն՝ մերկացնէին և թողէին ։ Եւ տիրեաց պարոն Թորոս Մսիսայ անհոգութեամբ և ամենայն գաւառաց նորա ։ Բայց պարոն Օշին՝ տէր Լամբրոնին, կտրեց գին անձին իւրոյ ոսկի դեկան քառասուն հազար եւ ետ զքսան հազարն . եւ կիսոյն գրաւական երետ զտղայ որդին իւր Հեթում առ պարոն Թորոս . և ինքն ազատեալ գնաց ի տուն իւր ։

Իսկ Հեթում կացաւ առ պարոն Թորոս · և սիրեց զնա Թորոս զի էր տեսականն գեղեցիկ՝ և իմաստուն ։ Եւ առաքեաց պարոն Օշին և ուզեց առնել խնամութիւն ընդ իրեարս, զի տայէ պարոն Թորոս զդուստրըն տղային Հեթմոյ . եւ քսան հազար դեկանն զոր պարտ էր ի գնոջէն՝ ի նա մնայր, հաշուէ՛ թէ պռոյգ երետ իւր դստերն ։ Եւ կամեցաւ պարոն Թորոս, և մկրտէր զՀեթում զի անկնունք էր . եւ այն էր ձիաւոր . եւ պսակեաց ընդ դուստրն իւր . եւ յղարկեաց առ հայրն,ի Լամբրոն ։

Յետ այս յաղթութեանս, զոր արար պարոն Թորոս, հեծծէին Յոյնք նախանձով . եւ զի ի·րեանք

չկարէին քէնխնդրել, յորդորէին (զՄաքսուտ) սուլտան Իկոնիոն. տային շատ գանձ եւ ասէին «ազատ զԹորոս բնաջինջ և զազգն իւր»։ Եւ եկեալ Մաքսուտըն, դայր ի վերայ պարոն Թորոսի՝ պատերազմ ի շատ ընչիւն որ տուին։ Իսկ պարոն Թորոս էառ զզօրս իւր՝ գնաց ընդդէմ նոցա։ Իմացան Տաճիկքն եւ զարմացան ընդ համարձակութիւն նորա։ Եւ առաքէ սուլտանն առ պարոն Թորոս եւ ասէ «ոչ եկի առնել զերկիր քո. այլ հնազանդեցոյց մեզ, եդարձո զերկիրն զոր առեր ի Հոռմէն. և մնաս սիրելի մեզ»։ Ձայս լսեց պարոն Թորոս եւ ուրախացաւ. եւ տանէ պատասխանի և ասէ «յանձն առնում հնազանդիլ քեզ, որպէս թագաւորի, վասն զի չես նախանձիր ընդ յառաջանալս մեր. այլ երկիր դարձնել ի Հոռոմն անհնարին է»։ Եւ լուեալ սուլտանն՝ ոչ նեղեաց զնա. այլ հաստատեաց պայման սիրոյ, եւ դարձաւ ի տուն իւր, և մնաց չարար։ Այս եղեւ ի թուին 602։

Դարձեալ եկն սուլտանն Իկոնիոյ յերկիրն պարոն Թորոսի միւսանգամ. և բանակեցաւ ի վերայ Թլին։ Եւ եղեւ բարկութիւն ի Տեառնէ ի վերայ նոցա. թէպէտ և ամառն էր, սակայն որոտմունք և հրաձգութիւնք լինէին, եւ հողմ ուժով որ զծառս շրջէր։ Եւ յահաւոր բարկութենէն ամէնն՝ յԱստուած ապաւինէին, եւ զողորմութիւն յԱստուծոյ խնդրէին։ Եւ յետ երեք աւուր խաղաղացան երկինք և երկիր. և

սուլտանն դարձաւ ամօթով, եւ մարեցաւ ամիս տասն, եւ մեռաւ. եւ եդ յաթոռն զորդին իւր Խլիճ Ասլան :

Այս Խլիճ Ասլանս ունէր ընդ պարոն Թորոսն անպարտ սէր. եւ առաքեաց դեսպան յԵրուսաղէմ և յԱնտաք. և առ պարոն Թորոսն առաւել ամրացոյց զսէրն : Գործեաց և այլ գործ պարոն Թորոս. քանզի բըլրինձն Անտաքոյ Ռընաղտն յորդորմամբ Թորոսի և ինքն պարոն Թորոս կազմեցին նաւս և գնացին ի կղզին Կիպրոսայ, և զէտ ի վերայ Թուրքի գնացին. զի գտին զնոսա անհոգ, և աւերեցին զքաղաքս, եւ զգեօղս նոցա դատարկ թողին ի կումզէ, եւ խայտառակ խարտեաղ զնոսա, եւ շատոց կտրեալ զձեռս եւ զոտս և զականջս և զքիթ՝ ոչ թէ աշխարհականաց (միայն), այլ եւ եկեղեցականաց բազմաց, թողին զնոսա և գնացին : Զոր երբ լսեց թագաւոր Յունաց Մանիլն՝ (45) բարկացաւ յոյժ. այլ առ ժամն ինք չկարաց առնել :

Ի թուին 613 սպանաւ պարոն Ստեփանէ՝ եղբայր պարոն Թորոսի, նենգութեամբ անօրէն դուքին Համուսին (46), որ ձայնեաց զնա սիրով. և բռնեցին և խաշեցին ի պղինձն : Եւ մնաց Ստեփանէի երկու տղայ՝ Ռուբէն եւ Լևոն : Իսկ եղբայրն նորա պարոն Թորոս և պարոն Մլեհն զայրացեալ ընդ գործ նոցա՝ առին վրէժ արեան նորա հազարապատիկ յաւելուա-

ծով․ որոյ պարտական անմեղայն լիցի անօրէն դուքն յարդար դատաստանին Աստուծոյ։ Եւ յայնմ ժամանակի յաղթողն պարոն Թորոս կայր քաջութեամբ, և պահէր զգաւառս լեռնակողմանց Տօրոսի․ որոյ տիրէր զօրութեամբն Աստուծոյ․ և անուանեցաւ Սեբաստոս Միսայ և Անաւարզայ և Վահկային։

Իսկ եղբայրն նորա պարոն Մլեհն էր այր չարաբարոյ․ կուզէր որ սպանէր զպարոն Թորոս․ եւ յարեցոյց յինքն այլս ոմանս օգնականս իւրոյ չարութեան։ Եւ օր մի ելան երկուքն ի յորս ի մէջ Միսայ․ եւ կամէր Մլեհն զչար խորհուրդն իւր անդ կատարել, և սպանել զեղբայրն։ Եւ պարոն Թորոս գիտաց և կալաւ զպարոն Մլեհ․ և առաջի իշխանացն քշփեց խիստ զնա․ եւ ետ նմա շատ ոսկի եւ արծաթ, ձի եւ ջորի, եւ եհան զնա յերկրէն, եւ այլ չար չարար փոխարէն նմա։ Իսկ նա գնաց առ սուլտանն Հալպայ Նուրատինն, եւ եմուտ ի ծառայութիւն նորա։ Եւ նա ետ նմա զԿիւրոս (47) և զգաւառն իւր։ Իսկ կինն Ստեփանէի էր դուստր պարոն Սմբատայ՝ Պապառոնի տիրոջն, և քոյր պարոն Բակուրանայ, որ տիրեաց յետ սպանման պարոն Սմբատայ՝ հօրն իւրոյ, առաջև Միսայ դրանն, Պապառոնին։ Որ էառ զորդայքն իւր, և գնաց ի Պապառոն, առ իւր եղբայրն պարոն Բակուրան, և անդ սնուցանէր զորդայքն իւր։ Եւ էր նա կին իմաստուն, եւ անուն նորա Ռուիթա․ էր եւ

պարոն Վասակ՝ եղբայր Բակուրանայ, տէր բերդին Ակուսոյ եւ Լամոսոյ եւ կողմանց նոցա. եւ պարոն Բակուրան՝ տէր Պապառոնին, էր այր բարի և առատ և սիրելի Աստուծոյ և մարդոյ ։

Յայսմ ժամանակի որ էր Թուականն 616 Տէր Գրիգորիս ծերացեալ էր, և կալեալ էր զաթոռ հայ-րապետութեանն ամս յիսուն և չորս ։ Եւ ապա յաղ-մանէ Հօգւոյն ծողով առնէ եպիսկոպոսաց եւ վար-դապետաց և ամենայն վանականաց, և ձեռնադրէ ի տեղի իւր զեղբայր իւր զՏէր Ներսէս կաթողիկոս Հայոց մեծ աղաչանօք. զի հրաժարէր (նա) ի պատ-ւոյն. և էր լցեալ ամենևին շնորհօքն Աստուծոյ, զոր չկարասցի գրել զվարս նորա ։ Գնաց համբաւ նորա ի Կոստանդնուպօլիս և ի Հռոմ առ պատրիարքունքն եւ առ կայսերքն. եւ նովաւ հաստատեցան ամենայն ազգք ի դաւանութիւնն Հայոց ։

Ի Թուին 617 մեռաւ պարոն Թորոս՝ որդին Լեւոնի, տէրն Մախայ. որոյ ողորմեսցի Քրիստոս ։ Իսկ ի մեռանելն եղ պարոն Թորոս պայլ (48) տղային իւրոյ որ կոչէրն Ռուբէն զիշխանն պարոն Թոմաս. որ կալաւ զաշխարհն պարոն Թորոսին (49) տարի մի ։

Ի Թուին 618 էառ պարոն Մլեհն՝ եղբայր պարոն Թորոսի, օգնութիւն հեծեալ ի Հալպայ տիրոջէն. և շատ Թուրքով եմուտ յերկիր Կիլիկեցւոց. և տիրա-պետեաց իշխանութեան եղբօրն իւրոյ. եւ շատ առ

եւ աւար եառ ի ձեռս Թուրքին. եւ զիւր հակառակսն բռնեց, եդ ի բանտ. եւ բանտեալ զեպիսկոպոսունս՝ ատամնաթափ առնէր զնոսա ։ Ուր կարծէր թէ՝ գոյ ոսկի կամ արծաթ՝ խլէր և դնէր ի ջամբռ (50) լիր. եւ զկանանս համեստս խայտառակէր ազտեղի պոռնկութեամբ ։ Եւ լցաւ գանձուք և ոսկւով և արծաթով ի զրկանաց անմեղաց ։ Եւ էր այր գազանամիտ եւ չար եւ անողորմ. եւ ատէին զնա ամենեքեան, եւ ցանկային փախչիլ ի նմանէ. բայց առ ժամն չգտանէին տեղի ։

Ի թուին 619 ի Յունիսի քսան ինն եղև շարժ սաստիկ, և փլոյց զպարիսպն Անտաքու և Հալպայ. և փառաւոր տաճարն որ յԱնտաք էր, փլաւ եւ եսպան շատք ։

Իսկ յորժամ տիրեաց Մլեհն իշխանութեան եղբօրն՝ փախեաւ պարոն Թումաս որ պայլն էր, և գնաց յԱնտաք ։ Եւ զորդայն պարոն Թորոսի տարան ի Հռոմկլայն. եւ անդ մեռաւ ։ Եւ որդի պարոն Օշնի պարոն Հեթում, որ ունէր զդուստր պարոն Թորոսի ի կնութիւն, նա ատէր զնա. եւ յահէն պարոն Թորոսի ի կենդանութեանն իւրք չիշխէր առնել. իսկ զկնի մահուան հօրն եհան ի տանէն իւրմէ ։ Յաղագս որոյ զայրացեալ պարոն Մլեհն՝ գնաց, պաշարեաց զօրօք զԼամբրոն. և շատ նեղութիւն հասոյց ի բնակիչս նորա ։ Քանզի վաղուց հետէ Ռուբենեանք եւ

Հատ. Դ. ։ 

Հեթումեանք մախայլին ընդ միմեանս . եւ եղեւ այս կռւկին խառնութեան պատճառք . ըստ որում կախատ նեղէր զնոսա սրով և սովով :

Ի թուին 622 սուրբ լուսաւորիչն Տէր Ներսէս Կլայեցին փոխի առ Քրիստոս . եւ պատուիրեաց նստուցանել յաթոռն զՏէր Գրիգորիս մականուն տղայ :

Իսկ յետ եօթն ամի տէրութեան պարոն Մլեհին, որ էր թուին 624, իշխանք նորա սպանին զնա ի նոբաշէն քաղաքն Սիս վասն վատ բարուց նորա : Եւ տարքեն ի Պապառոնն, եւ բերեն զաւագ որդին Ստեփանէի զՌուբէն դնել յաթոռն, զոր անգամնդաղ առաքեաց քեռին իւր պարոն Բակուրան : Եւ եկն Ռուբէն, և տիրեաց հայրենեաց իւրոց : Էր նա բարեմիտ, առատ, տեսլեամբ գեղեցիկ, և ի զինուորութեան արի, եւ աջող ի նետելն : Եւ սկսաւ տալ պարգեւս ամենեցուն առատապէս . եւ էառ զգանձն պարոն Մլեհին, սկսաւ սփռել ի պէտս և յանպէտս . և առատ սեղանով անուշացնէր զսիրտ իշխանացն և զինուորացն . և ուր դիպէր՝ նոքօք զհոյլս թշնամեացն մղէր . որով էառ զԱտանա եւ զՏարսուս : Եւ օր մի արար պատիւ իշխանացն, եւ շնորհակալեցաւ ամենեցուն վասն երախտեացն զոր արարին նմա, եւ սպանին զհօրեղբայրն իւր, և դրին զնա ի տեղ նորա : Եւ այնորիկ առնել բարիս խոստանայր որ ձեռօք

եսպան զպարոն Մլեհն, թէ ծանիցէ ։ Եւ յարեան երկու մարդ խաբեալք և ասեն «մեք սպանաք ձեռաք մերովք զնա վասն սիրոյ քո » ։ Եւ նա խիստ շնորհա-կալեցաւ նոցա. և հրամայէր քար կապել ի վիզ նոցա և ձգել ի խորս ջրոյ ։ Եւ անուն էր մէկին Ջահան և մեկին՝ Ապլղարիպ որ էր նեբրէնի ։ Եւ յորժամ հաս-տատեցաւ Ռուբէն յիշխանութեանն՝ սկսաւ նեղել զՂամբրոն կապեալ եւ պաշարեաց ամս երեք. եւ յայժ-տառապեցոյց զնոսա վասն հին մախանացն, զոր յա-ռաջին ունէին ընդ միմեանս. բայց չկարաց առնուլ ։

Ի թուին 625 խաւարեցաւ արեգակն. եւ եղեւ տիւն գիշեր. և երևեցան աստեղք ։

Ցայսմ ամի Խըլիճ Ասլանն՝ սուլտան Իկոնիոն, խան-գարեաց զկիռ Մանիլն՝ զՅունաց թագաւոր, Իկոնին առաջի աւերեալ բերդին որ կոչի Մելտինիս եւ Կալեթող ։ Դարձեալ դաշն սիրոյ հաստատեաց ընդ նա ։

Ի թուին 626 մեռաւ կիռ Մանիլն. եւ թագաւո-րեաց որդի նորա Ալէքս ։

Ի թուին 627 ելաւ Անդրոնիկէն հակառակ Ալէք-սին, և եսպան զնա. և ինքն թագաւորեաց ։

Ի թուին 629 սպանին զԱնդրոնիկէն. եւ թագա-ւորեաց Անգելոսն ։

Ի թուին 630 գնաց պարոն Ռուբէն յԵրուսաղէմ շատ ծախսօք, և առ իւր կին զդուստրն Քարաքոյ տի-

բոլջն։ Եւ Լևոն՝ եղբայր նորա, վախեաց ի նմանէ վասն քաջութեան (51) ամանց, որ մատնէին զնա եղբօրն եւ ասէին թէ՝ խորհի յառնել հակառակ քեզ. փախեաւ, գնաց ի Տարսոն, և անտի ի Կոստանդնուպօլիս. և զօրութիւնն Աստուծոյ պահեաց զնա. եւ ընկալաւ բազում սէր ի թագաւորէն ։

Ի թուին 631 դարձաւ Լևոն ի Կոստանդնուպօլսէ, և եկն առ եղբայրն իւր պարոն Ռուբէն. և նա սիրով ընկալաւ զնա, եւ ետ նմա զԿապան ։ Իսկ պարոն Ռուբէն կայր պարապեալ վավաշոտ ցանկութեանց և պոռնկական խորհրդոց. և վասն այնր գնաց յԱնտաք ուտել եւ ըմպել ընդ պոռնիկ՝ կանայս ։ Ուր եւ Անտաքոյ բրինձն (52) բռնեց զնա և եդ ի բանտ. եւ իշխանք որ ի հետն էին՝ փախեան, և գնացին ի տունս իւրեանց ։ Եւ այս եղեւ ի թուին 634 ։ Ապա առաքեաց պարոն Ռուբէն ի քեռին իւր՝ ի պարոն Բակուրան՝ տէր Պապառոնին յղել պատանդ զի դիցէ փոխանակ իւր առ բրինձն, եւ ելեալ տացէ զին անձին իւրոյ։ Եւ նա առաքեաց զմայր պարոն Ռուբենի եւ այլս յազգականաց նորա ։ Եւ կտրեաց պարոն Ռուբէն զին իւր անձինն որ տայր զՄարուանդէքարն, զԹիլն եւ զՃկերն եւ հազար դեկան ոսկի. եւ արձակեաց զնա բրինձն ։ Եւ եկն ի տուն իւր, և ետ զոր խոստացաւն, և ազատեաց զպատանդսն ։

Ի թուին 636 մեռաւ պարոն Ռուբէն. և էառ զիշ-

խանութիւնն պարոն Լևոն՝ եղբայրն իւր, որ էր բարի և անմեղ բնութեամբ ։ Ի սոյն ամի Թուրքման ոմն անուն Ռոստոմ (53) ժողովեալ շատ Թուրքման, և եմուտ յաշխարհն Կիլիկեցւոց, և խրոխտալով կամէր բառնալ զքրիստոնէութիւն ։ Գնաց մինչև ի Սիս, և իջաւ առաջի քաղաքին յՂռօին, և ծածկեաց զերեսս երկրի ։ Յայնժամ աստուածազօրն պարոն Լևոն քչիկ կռուեալ ընդ նոսա՝ ձգեց յառաջ զգլխաւոր նոցա զՌոստոմ․ եւ ամենեքեան փախեան ։ Որ եւ զհետ մտեալ կոտորեաց զնոսա մինչև ի Սարուանդի քարն ։

Ի թուին 637 սպանաւ ամենազովելի ձիաւորն սիր Պաղտին Գունդստաբլն ի բերդն Պռականայ, ուր գնացեալ էր որ դողանայր զբերդն ։ Իսկ զկնի երկուց ամաց դողանայր պարոն Լևոն զբերդն Պռա-կանայ․ և սպան ի ներքս զերկերիւր մարդ ։

Ի թուին 638 էառ Սալահատին սուլտանն զԵրու-սաղէմ (54) ի քրիստոնէից ։ Զայս ժամանակաւ եկին որդիքն Ծորտուանելի ի Սասնոյ՝ քոյրորդիք Տէր Գրիգոր՝ կաթողիկոսի Հայոց, առ պարոն Լևոն, որք բարետեսք ։ Որ աւագին երետ (Լևոն) զդուստր եղբօրն իւրոյ Ռուբենի զանուանեալն Ալիծ, եւ ետ նմա զՄախս, որոյ անուն էր Հեթում․ և Շահնշահին երետ զՍելևկիա․ և կրտսեր դուստրն Ռուբենի Փի-լիպն կայր առ մայրն Լևոնի ։ Եւ էառ պարոն Լևոն

կին յԱնտաքու զդուստր եղբօր տիկնոջ բռնձին, զոր երետ տիկինն յօժարութեամբ նմա ։ Եւ պարոն Լեոն ուրախութեամբ էառ վասն երկիւղի բռնձին, յորմէ կասկածէրն հանապազ. զի տիկինն վասն ազգականութեան կնոջն Լեոնի պահեսցէ զնա ի չարէ բռընձին, որպէս եղև իսկ ։

Իսկ զկնի երից ամաց ի Մայիսի վերջատասանն փոխեցաւ ի Քրիստոս կաթողիկոսն Հայոց Տէր Գրիգորիս՝ մականուն տղայ, և թաղեցաւ ի Դրազարկն ։ Եւ նստաւ յաթոռն Տէր Գրիգորիս որ ասի Վահրամ, տղայ գոլով ։ Մեռան և մեծ իշխանքն՝ քոյրորդիքն կաթողիկոսին, պարոն Հեթում և պարոն Շահնշահն, ի մէկ ամիս՝ քեռին և քոյրորդիքն ։ Եւ զոր լուաք վասն մահուանն չկարեմ աստ գրել զի ասեն թէ պարոն Լեոն եղև պատճառ. այլ զճշմարիտն Աստուած գիտէ ։

Իսկ տղայ կաթողիկոսն Տէր Գրիգորիս յորժամ եղև կաթողիկոս՝ չհնազանդէր ամենեցուն զառաջինն. այլ ինքնիշխանութեամբ տանէր զհայրապետութիւնն ։ Յայնժամ մախացեալ ընդ նա աւագ մարդիկն՝ գրեն առ Լեոն թէ ոչ ունի սա իմաստութիւն վարել զհայրապետութիւնն, որպէս արժանն է. և չարախօսեցին զնմանէ երեք, չորս անգամ, մինչև շարժեցին զպարոն Լեոն ի կամս իւրեանց ։ Եւ նա առաքէ ի Հռոմկլայն զարքեպիսկոպոսն Սսոյ զՏէր

Յովհաննէս առնել ըստ իմաստութեան իւրում ։ Եւ նա գնաց անդ, եւ մտաւ առ կաթողիկոսն. եւ նա պատուով մեծարեաց զնա որպէս զհէւր ։ Իսկ նա ձեռն տալով սպասաւորացն, մինչ նստեալ էին ի սեղան ճաշոյն, ետ բռնել զդուռն բերդին. և տարածեցաւ աղմուկն ։ Իսկ կաթողիկոսն զարմացաւ եւ ասէ «Տէր Յովհաննէս՝ այս ի՞նչ իրք է» ։ Եւ նա ասէ «բռնած ես» ։ Յայնժամ անօրէնքն բռնեցին զնա և եղին ի զընտան և ամրացուցին ։ Իբրև եղաւ համբաւն ի դրուցին բերդն եւ ի ներքին շէնն՝ հասին ամէնն ի վերայ կլային ի յօգն հայրապետին իւրեանց. և երեք օր նստելով մարտեան, եւ ոչ ինչ կարացին առնել ։ Եւ ա՛ռ Տէր Յովհաննէս զկաթողիկոսն, եբեր առ պարոն Լևոն. եւ դրին զնա ի բերդն Կոպիտառայ առ ժամանակ մի ։ Իսկ Հռոմկլայեցիքն աղէկիզեալք ընդ անիրաւ դատապարտութիւն տեառն իւրեանց՝ յղեն առ նա ի ծածուկ զի թէ հնարեսցէ զելն իւր ի բերդէն՝ մատուսցեն նմա ձի, եւ տարեալ արասցեն զնա տէր բերդին եւ աթոռոյն իւրոյ ։ Եւ նա անկաւ ի բանս նոցա մանկաբար, կախուեցաւ կտաւով ի գիշերի իջանել. և կտաւն պատառեցաւ. և անկաւ և մեռաւ. և թաղեցին զնա ի Դրազարկն ։

Գործեցաւ այս ի թուին 643 ։ Եւ զկնի նորա դրին կաթողիկոս զՏէր Գրիգոր Ապիրատն որ էր որդի զօրավարին՝ եղբօր կաթողիկոսացն Գրիգորիսի եւ

Ներսէսի կլայեցւոյն, այր իմաստուն եւ գիտուն եւ ծեր ։

Եւ յաւուրքս ըմբռնեաց պարոն Լեւոն զորինձն, և եդ ի բանտ աւուրս ինչ ։ Եւ երեկ յԱքքայոյ Թագաւորազարմ իշխանն գոնդ Հենրի(55). և խնդրեաց զնա պարգեւս ի պարոն Լեւոնէ . և նա ետ նմա ։ Եւ հաստատեցին ուխտ սիրոյ ընդ միմեանս խնամութեամբ ։ Եւ ետ պարոն Լեւոն զդուստրն եղբօրն իւրոյ Ռուբենի զԱլիծն, զոր յառաջն տուեալ էր Հեթմոյ սասնցւոյ, աւագ որդւոյ բրնձին Ռեմնդին (56) այս պայմանաւս՝ որ թէ լինէր յիւրմէ կորիճ լինէր ժառանգ պարոն Լեւոնի. և զկնի մահուան հօրն իւրոյ Ռեմունդն լինէր տէր Անտաքու ։ Եւ հաստատեցին զայս գրով ։ Եւ էր որդի բրնձին առ պարոն Լեւոն . և կացեալ ժամանակ ինչ՝ մեռաւ . և մնաց կինն յղի, և ծնաւ կորիճ գեղեցիկ տեսլեամբ ։ Եւ ուրախացաւ պարոն Լեւոն. քանզի տղայ չունէր որ լինէր ժառանգ հայրենեաց իւրոյ . եւ ետ անուանել զնա զգուշութեամբ,. և մկրտեաց զնա յանուն եղբօրն Ռուբէն ։

Ի թուին 645 յղեաց Թագաւորն Յունաց պարոն Լեւոնի թագ պատուական . եւ խնդրէր ի նմանէ զմիաբանութիւն սիրոյ ։ Եւ նա ա՛ռ և ընկալաւ ուրախութեամբ ։

Եւ ի թուին 646 յղէ ի Կոստանդնուպօլիս ընծայիւք զարքեպիսկոպոսն Տարսոնի զՏէր Ներսէս Լամբ-

րոնայրն՝ զորդի պարոն Օշնի, եւ զմեծազարմ իշխանն պարոն Հալկամ, եւ զքեռին իւր՝ զեղբայր պարոն Բակուրանայ, եւ ի դրանէն իւրոյ զպարոն Պօղոս, որք գնային եւ ցուցին զկամս սիրոյ Լեոնի յօժարութեամբ առ նոսա ։ Եւ էր Տէր Ներսէս իմաստուն և գիտուն, և ամենայն իրօք զարդարած ։ Ժողովեցան առ նա իմաստունքն Յունաց, եւ խօսեցան ընդ նա շատ օրեր վասն հաւատոյ և եկեղեցւոյ կարգաց . զորս հաւանեցոյց զնոսա խելօքն իւր ։ Ի սոյն ամի մոլորեցան Յոյնք ի զատկէն ։ Եւ յայսմ ամի յղեաց Լեոն զարքեպիսկոպոսն Սսոյ զտէր Յովհաննէս յԱքքայ ի խնդիր թագին զոր թագաւորն Ալամանաց յուղարկէր նմա զհետ զօրացն որ եկեալ էին անդ . եւ եկն անտից արծվէսքն (57), որ եկեալ էր հրամանաւ Պապուն Հռոմայ ։

Ի թուին 647 Յունվարի վեց յոր Յայտնութեանն օծեցին զԼեոն թագաւոր Հայոց ի հնազանդութիւն եկեղեցւոյն Հռոմայ և Օնբրունին (58) Ալամանաց ։ Եւ եղև ուրախութիւն Հայոց . զի յաւուրս յետինս զանկեալ տէրութիւն իւրեանց տեսին կանգնեալ եւ նորոգեալ յերեսս Լեոնի՝ արքայի Հայոց ։ Ի սոյն ամի մեռաւ տէր Ներսէս Լամբրոնացին ։

Եւ արդ պա՛րտ է պատմել փոքր ի շատէ զոր ի տարաժամն վայելչացեալ էր Հայք ։ Զի էր արքայն Լեոն իմաստուն եւ հանճարեղ, զուարթ տեսով, եւ

առատաձեռն ի հեռաւորս եւ ի մերձաւորս, ի մեծամեծս և ի փոքունս, ի վանորս և յեկեղեցիս, յիշխանս և ռամիկս : Զարդարեաց զտօն Զատկաց մեծ ժողովով եւ մեծածախս սեղանով. եւ երևելի արար զօր տօնից Տեառն : Եւ ուր իմանայր թէ՝ գոյ այր իմաստուն եւ գիտուն եւ աջող ի գործ կամ ի զինուորութիւն կամ ի խօսս և ի պատասխանիս՝ յղէր և կոչէր խրատմամբ, և հանդուցանէր պարգևօք. յորոց մի եւ եմ Սմբատ սպարապետ Թարգմանող տառիս եւ պատմութեանս :

Եւ յօծումն Թագաւորին Լեւոնի էին եպիսկոպոսունք եւ իշխանք շատք. զոր քիչ մի գրեցի աստ առ ի գիտել կարդացողացդ :

Նախ՝ սկիզբն արարցուք յառաջնորդաց :

Տէր Գրիգոր կաթողիկոս որ մականուն ապիրատ : Տէր Դաւիթ՝ արքեպիսկոպոս Մսիսայ և առաջնորդ Արքակաղնոյ : Տէր Յովհաննէս՝ արքեպիսկոպոս Սսոյ և տէր Դրազարկուն : Տէր Մինաս՝ արքեպիսկոպոս Երուսաղէմի : Տէր Յովսէփ՝ արքեպիսկոպոս Անտիոքայ եւ տէր Յեսուանց վանիցն : Տէր Կոստանդին՝ արքեպիսկոպոս Անաւարզայ եւ տէր Կաստաղոնին : Տէր Վարդան՝ արքեպիսկոպոս Լամբրո-

նին և առաջնորդ Սկեւռուն : Տէր Ստեփաննոս՝ արքեպիսկոպոս Տարսոնի եւ տէր Մլիճոյն : Տէր Թորոս՝ եպիսկոպոս Սելեւկիոյ : Տէր Գրիգոր՝ եպիսկոպոս Կապանոյն եւ տէր Արեգնին : Տէր Աստուածատուր՝ եպիսկոպոս Մեծքրուն : Տէր Յովհաննէս՝ եպիսկոպոս Սանվէլեայ : Տէր Կոստանդին՝ եպիսկոպոս Փիլիպուայ : Տէր Ստեփաննոս՝ եպիսկոպոս Բերդուսին : Տէր Մխիթար՝ եպիսկոպոս Ընկուզուտին : Եւ շատ վարդապետք եւ հարք վանաց եւ քահանայք :

Իշխանք որ էին բերդատէրք՝ այս են :

Պարոն Ատան՝ տէր Պաղրասայ : Պարոն Օստէր՝ տէր Ճկերոյն : Պարոն Արագոյն՝ (59) տէր Համուսին : Պարոն Սմբատ՝ տէր Սարուանդի քարին : Պարոն Լեւոն՝ տէր Հարունոյն : Պարոն Հերի՝ (60) տէր Աչէոյն : Պարոն Ապլղարիպ գունդստաբլն՝ տէր Կուտոյ : Պարոն Պաղուին՝ տէր Ընկուզուտին : Պարոն Ստեֆ՝ տէր Թոռնկային : Պարոն Լեւոն՝ տէր Բերդուսին : Պարոն Գրիգոր՝ իւր որդին : Պարոն Աշոտ՝ տէր Կանչոյն : Պարոն Ապլղարիպ՝ տէր Ֆոռնոսոյ : Պարոն Տանկրէ՝ (61) տէր Կապնուն : Պարոն Կոստանդին՝ տէր Ճանճոյն : Պարոն Ճօֆրի՝ (62)

տէր Ճողկանն : Պարոն Ախմուն՝ տէր Մաքառ խաչին : Պարոն Սիմոն՝ տէր Ամուտոյն : Պարոն Ռուպերտ՝ (63) տէր Թիլին : Պարոն Թորոս՝ տէր Թլպասոյ : Պարոն Վասիլ մարաջախին՝ տէր Վանէրոյն : Պարոն Գէորգ՝ տէր Բարձրբերդոյ : Պարոն Կոստանդին՝ տէր Կոպիտառոյ : Պարոն Աժառոս՝ տէր Մոլէւոնին : Պարոն Սմբատ՝ տէր Կուկլկայ : Պարոն Հեթում՝ տէր Լամբրոնին : Պարոն Շահնշահ՝ տէր Լուլվայոյ : Պարոն Պապուռան՝ տէր Պապառու : Պարոն Վասակ՝ տէր Բերդկանն : Պարոն Տիգրան՝ տէր Պռականոյ : Պարոն Կոստանց՝ տէր Սելեւկիոյ : Պարոն Ճոսլին՝ տէր Սինտոյ : Պարոն Սիմոն՝ տէր Կոռիկոսի : Պարոն Ամանոս՝ տէր Ատառօսոյ : Պարոն Նիկեփոռ՝ տէր Վոռկիսոյ : Պարոն Խռափ՝ տէր Լաւզատոյ : Պարոն Հալկամ՝ տէր Լամօսոյ եւ Ժամնկանն եւ Անամօռին : Պարոն Հերի սեւաստոս՝ տէր Նոր բերդոյ : Պարոն Պաղտին՝ տէր Անդուչծին եւ Կուպային : Պարոն Կեռսակ՝ տէր Մաղվոյ եւ Սիկոյ : Պարոն Միխայլ՝ տէր Մանովշատին եւ Ալարոյ : Պարոն Կոստանդին՝ տէր Լագռաւենոյ : Պարոն Նիկեփոռ՝ իւր եղբայրն : Պարոն Կիռ Վարդ՝ տէր Աղօլին եւ Կոտրատոյ :

Եւ յետ մահուան Պամունդ բրնձին շատ իշխանք եկին յԱնտաքու ի ծառայութիւն թագաւորին Լեւ֊

նի, որ են այսոքիկ՝ սիր Ուըլվեր Ջամբըլայն, սիր Ռու-
ճէր Տը մուլթն, սիր Լուարտն, սիր Թումաս, Մըլեհ,
Լապրունն, սիր Պամռուն դըլերն, սիր Կիլըմ դըլիլն (64)։
Եւ այսպիսի խոհեմ իշխանօք և քաջ զօրօք և առատ
պարգևօք եւ ընդարձակ սեղանով զամենն յօժար
կազմէր ի կռիւ ։ Ուր եւ դիպէր՝ քաջապէս վարէր
զթշնամիսն, եւ չդադարէր ի գերելոյ եւ յափշտակե-
լոյ զաւարն անօրինաց ։ Զի առնու միոյ ճանապարհ
հեռու յիշէին զանուն Թագաւորին Լեւոնի․ և անտես
դողային ։ Եւ զորդիս Խլիճ Ասլանին որ էին աւարք
Հոռոմոց, նեղեալ անձկացոյց յոյժ առնլով ի նոցանէ
բերդորայս, քանդեաց զերկիր նոցա ։ Եւ այս ցեղ քա-
ջութեամբ կայր ի մէջ թշնամեացն իբրև անխոյեան
անպարտելի․ եւ սիրելի էր հեռաւորաց եւ մերձաւո-
րաց ։ Ունէր ի մօտ դշխոյն Լամբրոնեցւոյ, զոր
անցուցեալ էին ընդ Հայս Կիլիկեցւոց եւ ընդ ազգն
Ռուբենեանց, զեւս երբեմն պարոն Օշին՝ հայր Հեթ-
մոյ, առաջնորդ եղեւ Թուրքին, տարաւ ի յԱտանոյ
գերի աղջիկս հինգ հարիւր կոյս․ Թո՛ղ զայլ առ եւ
զաւար ։ Խորհէր խնամութեամբ փեսել զթեւս
նոցա, եւ խօսէր ընդ Հեթումէ՝ որդի Օշնին, բանս
ախորժս մտաց նորա ։ Ասէ « կամիմ առնել կա-
պակցութիւն սիրոյ ընդ քեզ, տալ զեղբօր դուստրն
իմ զՖիլիպ ի կնութիւն առաջ որդւոյն քո Օշնի »։
Եւ պարոն Հեթում ընկալաւ զբանն, և ուրախացաւ

զոր ապիրատն փարթամացոյց . եւ գրեաց ի վերայ զերկոցունց անուանն ։ Զմեծ խաչն ոսկեղէն զպարոն Վատլին քակեաց . եւ հալեաց զձոյլ ոսկի սուրբ նշանն Տէր Գրիգորիսի . եւ էառ ակունս եւ մարգարիտս շատ . քակեաց զոսկիակազմ տուփ աւետարանին Տէր Գրիգորիսի, որ էր ակամբ և մարգարտով . քակեաց զօքսիխոսի զվլատ Նախորդան Տէր Ներսիսի, որ շար ոսկւով կարած էր, որ զէտ ձաւլածոյն կանգնէր . քակեաց զոսկին և զքարինսն եւ զմարգարիտսն ի զօտւոյ սուրբ սեղանին, զոր շինեալ էր Տէր Գրիգոր . էառ զմեծ լուսակալն արծաթի զոր շինեալ էր Տէր Գրիգորիս եւ կախեալ ի գմբէթ սրբոյն Գրիգորի . քակեաց զկամարն Տէր Գրիգորի զոր շինեալ էր ոսկւով եւ արծաթով եւ մարգարտով եւ ակամբք ։ Ա՜յ մի՛ վասն գրելոյս մեզ դնէք մեղ . զի չէ թէ ի համբաւէ լուաք . այլ տեսաք եւ շօշափեցաք ձեռօք ի քակելն , եւ լացաք ընդ այն վայելչութեան անզարդթեալն (65) ։ Այլ գրերգն շինութեանն կարի ամբացոյց, և զամէն եկեալսն առ ինքն զոհութեամբ զարձոյց ։ Էր սա ազգաւ Հեթմցի՝ որդի Կոստանդեայ՝ որդւոյ Օշնի ։

Ի թուին 654 գնաց Լեւոն թագաւորն ի վերայ Այլաթին, և չկարաց առնուլ ։ Եւ եկն ի Կոստանդնուպօլիս Խարով Շահն՝ որդի Խլճի Ասլանին, եւ տիրեաց հայրենեաց իւր ։

Զայսու ժամանակաւ գնաց Տէր Յովհաննէս կաթողիկոս առ թագաւորն Լեւոն. եւ լսեց վասն Անտաքայի թագուհւոյն զոր ունէր թագաւորն՝ բանս բամբասանաց. եւ յոյժ բարկացաւ թագաւորն, եւ եա սպանել շատք ի մերձաւորաց նորա. եւ զթագուհին իւր ձեռօքն ծեծեց խիստ: Հաղիւ կարաց որդի քեռւոյն իւրոյ Վասակայ Կոստանդին ապրծուցանել զնա ի ձեռացն կխսամահ. զոր յղարկեց ի զընտան ի բերդն Վահկայն: Եւ ունէր ի նմանէ դուստր մի աղայ Ռիթայ անուն, զոր ամուսնանէր մայր թագաւորին տիկնաց տիկին զՌիթայն. որոյ յիշատակ նորա օրհնութեամբ:

Ի թուին 655 եկն Տուկն Վենետկաց Գուլթն (66) եւ Ֆլանդրըն (67). եւ առին զԿոստանդնուպօլիս ի Յունաց. եւ կոտորեցին եւ փախուցին զնոսա: Յայսմհետէ բարձաւ թագաւորութիւնն ի Կոստանդնուպօլսէ:

Ի թուին 657 ծնաւ Սմբատ գունդստաբլն թարգմանող պատմութեանս:

Եւ յորժամ առաւ Կոստանդնուպօլիս ի Հոռոմոց՝ փախեաւ իշխան մի Յոյն յայսկոյս. եւ տիրեաց կալաւ զՆիկիա և զԱնդրամիտն, զԵփեսոս, զԶմիւռնիա եւ զոր ի նոսա կայր բերդեր, եւ զՖիլատէլֆն եւ զՊիգաս. եւ թագաւորեաց նոքօք, որ կոչեցաւ Լասքարի:

Ի Թուին 659 գնաց Լեւոն Թագաւորն ի Կիպրոս. եւ առ իւր կին զԿիպրոսայ Թագաւորին քոյրն Զապէլն՝ կին իմաստուն եւ համեստ ։

Ի Թուին 665 էառ Թագաւորն Լեւոն զԱնտաք իմաստութեամբ, զի առատ պարգեւօք խոստմամբ հաւանեցոյց զոմանս յիշխանացն. եւ նոքա բացին զդրուան գիշերն, յորում եմուտ շատ զօրօք ։ Իսկ ամենք մտին ի կլայն եւ ամրացան, եւ յետ աւուրց եկին ի հնազանդութիւն ։ Եւ ի ժամանակս Լեւոնի ժողովեաց զօր սուլտանն Իկոնիոն. որ էր ի Սալչուքեան (68), որ անուն էր Ազըտին Քայքաւուզ (69) ։ Եւ ի ծերութեան Լեւոնի որ ցաւոտեալ էր ի նըկրիսէն, եւ աւերեալ էր ձեռքն ու ոտքն, կամեցան քէն հանել վասն շատ ուժերոյն, զոր արարեալ էր Լեւոն Թագաւորն իւրեանց, եւ առեալ էր զԱրակլի եւ զԼառնդա և Կեսարիոյ սղարբըն՝ զոր ի յառ էած, և դարձաւ ծախեց իւրեանց ։ Նա սուլտանն երեկ, սղարբեաց զԿապան բերդն. նա զպարոն Կոստանդին սպարապետն եւ զպարոն Ատանն պայլ Թագաւորն Լեւոն եդ զօրագլուխ. որ առին զամէն Հայոց հեծեալն, եւ դնացին, իջան ի Տողակնանն վերեւ ի լեառն ։ Եւ սուլտանն սկսաւ սերտ կռուիլ ի վերայ բերդին ։ Բայց պարոն Լեւոն՝ տէրն Կապնուն եւ այլ իշխանք որ կային ի ներս՝ ելան ի դուրս, ու զարկին ի թեանք ու զիւրեանց սղահերն ընդ ափ տարան

իւր եղբայրն Ալբատին՝ այր խնամոտ եւ սատարա-բաշխ : Երբ զօրացաւ սա բազում զօրօք յամենայն աշխարհաց Քրիստոնէից եւ Տաճկաց՝ էառ յԱստամայ Թոռնէն ի կիռ Վարդէն զերկիրն Կարնոյ, եւ զդուստր նորա ի կնութիւն յոչ կամաց . եւ վասն քրիստոնէութեանն չհանդերձ ի հետն աղջիկն : Էառ զՏաւսբերոյ երկիրն մինչ ի Մելտենիոյ դուռն . բայց զՄելտենիա Ռոստփթեան Գաբրիէլ (71) պահէին զիշխա-նութեանն Հայոց : Իսկ պարոն Կոստանդին որդին զի խելօք էր՝ իմաստութեամբ անցոյց զաւուրսն . եւ իւր Թագաւորին էառ ի վերայն հարկ որ տայ ամէն տարի հետեւ ի ծառայութիւն չորս հարիւր մարդ : եւ զինչ զանոր Փռանկաց օժանդ՝ նա քաղցրացուցեր :

Եւ սուլտանին խորհելով թէ Եկեղեաց մեծ է, առնում երբ ուզեմ, առաքս թող երթամ յայլ դեհ յետ երկիր բանամ, զնայ շատ զօրօք և էառ զԵրզն-կայն, եւ կոչոյս զայնոր սուլտանն : Անար (զնաց) ի յԱրզրումն, և զայն այլ էառ, և զՄանծկերտ մինչ ի Կարուց գաւառն : Ապա ողորեցաւ անտի, և երեկ, էառ զՄելտինին եւ զԽարբերդ եւ զՉմշկածագն եւ զԱմիթ եւ զՏովքն եւ մինչ Եփրատ կողմն, զամէնն մէքեց . եւ կարգաց զաւակունսն, հայնց որ երեւ, եւ առ Մարտոյ սուլտանն Անթափոյ տիրոջն ի յօգնել, ու չկա-րաց իրք առնել . խանգարեաց զամէնն ու փախոյց :

Ի սորա ակերութեանն եղաւ Թաւմազին հաւատամ

ու ձայնն, որ կու գայր ու կառնոյր զվերի Թուրքաստանն, զբերդերն ու քաղաքներն . եւ երեկ մինչ ի Խորազմն ։ Եւ խանգարեաց զԽորազմ Շահն Տարպայնի, եւ փախոյց . որ գնացին, անցան ընդ Ջահոն մեծ գետն, եւ նստան ի վերայ գետափին . եւ ընեց զիւրեանք զամէն երկու գետամէջքն, որ է ընդ Ջահուն եւ ընդ Գեհոն իմէջ. եւ է մեծ մայրաքաղաքն Սմրղանդ եւ Պուխարա եւ Քէշ եւ Նախշուպ եւ Քրմինա և շատ քաղաքք, զոր չկարացի ընդ գրով արկանել ։ Եւ ինքն Խորազմ Շահն կայր զէտ ջրած ի վերայ գետին . եւ կարծէր թէ զԽորասան եւ զինչ մեծ գետն կտրէ՝ յայս դեհս փրկել ։ Նա Չինկիզ խանն որ գլուխ էր Թաթարուն, կապեաց ի վերայ նաւերով կանդարայնի, ու անցաւ ընդ Գեհոն, ու երեկ, էառ զմեծ քաղաքն Սմրղանդ ի չորս օրն, և ի չորս տարին չկարաց աւերել. վասն զի Սմրղանդն ի Թուրք լեզուն գէր քաղաք ասի. յիրաւի որ գէր էր և մեծ . և էառ այլ շատ քաղաքք ։

Բայց պա՛րտ է դառնալ ի Կիլիկիոյ գրոյցն և գրել ։ Զի պարոն Կոստանդին պայլս ժողովեաց զամէն եկեղեցականքն եւ զօրքն Հայոց եւ ասաց թէ « պարոնայք՝ դուք գիտէք թէ յինչ նեղութեան գտի զաշխարհս ու զմեր պարոնին յետամնայքն , ու Աստուծով ինչվի յայս բերի . ու մեր պարոնի դուստրս կարգման եղաւ . ամէնք թաղտրվեցէք որ մեզ պա-

*տոն բերեմք. զի ես ուզեմ որ իմ տան և իմ որդւոյն անդորրութիւն առնեմ »: Նա ամէնն Թագաւորվե֊ ցան շատ օրեր, եւ հայնց պատեհեցին՝ որ քան ի յայլ տեղայ՝ բերեն պարոն Ալաւզին՝* (72) *զԱնտաքայ բռնձին որդին զՖիլիպն, զի ի մօտս է. եւ լաւ կարէ օգնել մեզ ի մեր ամէն կարիք:*

**Ի** *Թուին* 671 *բերին Պէյմուն* (73) *որ հայենակ կենայր, ու զեկեղեցին և զսեղանն հայենակ տանէր, և զամէն մարդ յիւր իրաւունքն պահէր: Երբ մեծա֊ ցաւ եւ եղեւ քսան տարւոյ՝ նա իւր հօրն Թագաւորով կուզէր որ ձգէր զՀայոց զամէն իշխանքն, և յիւրոյն դնէր այնչափ՝ որ չկարացին ժուժել իւրեան. բռնե֊ ցին զինքն ի Թլըն եւ յաթոռոյն ձգեցին, եւ արաքին բերդարգել ուր մեռաւ: Եւ այլ պայլ դրին զպարոն Կոստանդին:*

**Ի** *Թուին* 675 *ժողովեցան Տէր Կոստանդին կա֊ թողիկոս և եպիսկոպոսք և իշխանքն ի Տարսուս, և դրին Թագաւոր յորդեայն պարոն Կոստանդեայ զպատանին Հեթում. եւ տուին իւր կին զդուստր Թագաւորին Լեւոնի Զապէլ: Եւ եղև ուրախութիւն Հայոց. և եդին մեծ սէր ընդ Հռոմայ պապն, և ընդ Ալամանաց օնբրունն. եւ ընդ Ալատին՝ սուլտանն Հռոմոց: Եւ յաւուրքս յայս շարժեցաւ դիւական բարկութիւն ի Թագուհին Զապէլ. եւ ուզեց երթալ տեսնուլ զիւր մայրն յՕսպիթլուն բերդն ի Սելեւկիա,*

և գնաց, և խռովեցաւ ընդ Թագաւորն և ընդ ամէն Հայք ։ Նա պարոն Կոստանդին ժողովեց հեծեալ, ու գնաց, իջաւ առաջի Մելեկիոյ. նա օսպիթալն փանաց որ շատ կու ծախվէր զինքն Մելեկիա, ու կու փա-խչէին ի յԱլատին սուլտանէն, նա ուզեց տալ զբերդն Թագուհւոյն ու սէր ունենալ ընդ Հայք ։ Եւ Ֆրէր-բեր (74) դրանն այս կերպովս եառ, և ասէ թէ « զբեր-դըս Լեւոն Թագաւորն եառ մեզ. մեք չկարեմք ասել ընդ իւր դուստրն թէ ն՛լ ի բերդէս. ապա մեք կու եղնենք. դուք առէ՛ք զբերդն ու զինքն (75) »։ Եւ այս ցեղ առին զՄելեկիա ու զԹագուհին ։

Ի յայս աւուրքս երեկ Հալպայ սուլտանն շատ հե-ծելով ի վերայ Պաղրասայ. եւ չկարաց առնուլ ։ Ի սոյն ամ ծնաւ Թագուհին Զապէլ զանդրանիկ որդին Լեւոն ։

Եւ յայս աւուրքս մեռաւ Թաթարն ի Հռոմք. նա սուլտանին մայրն էառ զիւր դուստրն, ու փախաւ ի Կիլիկիայս ։ Եւ Թաթարն յղարկեց ի հետ ի Հեթում Թագաւոր թէ՝ տո՛ւր զփախստականն. թէ չէ՝ քո ամէն սէրն որ հետ մեզ դրիր՝ նա սուտ է ։ Նա փա-խեցին որ Թաթարն չլսուէր յերկիրս՝ առուին ։ Նա ոխացաւ սուլտանն Քայ Խոսրով Շահն և ամէն Տաճ-կունք, ժողովեցաւ հեծեալ, եւ առաջնորդութեամբ պարոն Կոստանդեայ Լամբրոնի՝ տիրոջն, մեռաւ ընդ Պապառոնին լեառն ի վայր, ու այրեաց զամէնն ։ Եւ

թագաւորահայրն պարոն Կոստանդին ու Սմբատ գունդստապլն եկին, մտան ի Տարսոն. եւ թագաւորն իւր հեծելովն կայր յԱդանա: Թուրքն պաշարեաց զՏարսոն. իջան ի դաշտն հետ գետին, գերեցին զամէն երկիրն. եւ կեցան վեց օր. եւ ապա եկ ածին որ ելնէին ընդ Կուկլկայ կապանն: Թագաւորն հեծելովն ի հետ եղ, եւ թագաւորահայրն եւ Սմբատ գունդստապլն (76), եւ հասին ի տեղ մի որ Մայծառ ասեն: Նա զարկան անթիւ շատ ի յետս: մեք զերայք ու Աստուծով խանգարեցաք. եւ կոտորելով վարեցաք մինչզի Պոստանդէ:

Նա յետ այս մէկ տարւոյ, ի թուին 695 սուլտանն շատ ժողովք, ու եկին, մտան ընդ Կուկլկայ կապանն երկու հարիւր եւ վաթսուն հազար մարդ. եւ բոլոր պատեցին զՏարսոն. թագաւորահայրն եւ եւ Սմբատ գունդստապլս մտաք ի Տարսոն: Ու եթէ զամէն նեղութիւն բարձեաց ու զկոխ զորեալ էաք՝ նա կարի շատ էր լեալ: Հայոց որ ի Ջրմոտին դեհն ու ի Ջրեյին աղէկ նետընկէց մի փլուցին զպարիսպն. շատք մեռան յերկուց կողմանց, բայց ի դրսէն՝ հարիւրապատիկ. զի ունէաք ընդ ներքս աղէկ Փռանկի չարխաւորք:

Ու ապա եկն զեսպան ի Թաթարէն՝ որ թողէին ելանել. նա չէաք ի լսել. վասն զի զքաղաքն ատած ունէին. նա զայդ որ շատ է խնայել Աստուած ի

քրիստոնեայքն՝ զնոյն եւ յայնժամն . որ նստեալ էր սուլտանն Խիաթ Ատինն յիւր բերդն ի Կալոնոռոսն. ու կու խմէր՝ լոկ ասայ « քօ՛վս քօ՛վս » ու մեռաւ ։ Նա ամիրայքն որ ի վերայ Տարսուսու կային՝ երբ լսեցին՝ նա ի գլոյց մտան ընդ Թագաւորն, ու ուզեցին զՊաւակոնա որ սիրով ի տուն երթային . նա Թագաւորն երետ . որ ելան ու գնացին ։ Եւ չէաք իմացեր զսուլտանին մահն. զի կարէաք նեղել . յետ երկու տարւոյ գողայաք զՊաւակոնա ։ Եւ ընդ կամքն Աստուծոյ մէ ոք պարծիցի փախչել . զի որչափ ի վերայ մեր կային՝ կաթ մի անձրեւ չեկաւ . երբ որ ւէքն եղաւ՝ նա ի քսան օր գիշեր եւ ցերեկ չկտրեցաւ . եւ եղեւ ամէն աշխարհ մէկ ծով ։ Ցայնժամն որ ելան՝ հարիւր հազար մարդ աւելի ոտով սպանեին . եւ Ջրախեղդ սատակեցան. շատ պիղծ էաք պղծել իւրեանց՝ թէ չէաք երդուեալ ։

Ի թուին 697 գնայի ես Սմբատ գունդստապլս ի Թաթարն. և ի թուին 699 դարձայ առ իմ եղբայրն Հեթում Թագաւորն ։

Ի թուին 708 Հեթում Թագաւորն էառ զբերդն Մունդաս. և արար ձիաւոր զիւր երկու որդիսն զԼեւոն ու զԹորոս ։

Ի թուին 712 մեռաւ պարոն Օշին՝ Կոռիկոսոյ տէրն ։

Ի թուին 715 էառ Թաթարն զՄելտինէ, զԱմիթ

եւ զՈւռհայ . եւ ծնաւ Հեթում՝ աւագ պարոն ։ Ի յայսմ ամի եառ Հեթում թագաւոր զՄարաշ ։ Ի սոյն ամի առին զօրքն Մսրայ զՀեթում թագաւորին զորդին ծառայ՝ զպարոն Լեւոն . և զպարոն Թորոս՝ զիւր եղբայրն, սպանին ։

Ի թուին 716 եառ Պալալօղն (77) զԿոստանդնու-պօլիս ի Ֆռանկնոյն ։

Ի թուին 717 եառ Մսրայ սուլտանն զԱնտաք եւ զՃափն (78)։ Ի սոյն ամի ազատեցաւ պարոն Լեւոն. եւ դրին կաթողիկոս զՏէր Յակոբ ի Սիս ։

Ի թուին 719 հանգեաւ ի Քրիստոս Հեթում թագաւոր ։ Եւ ի թուին 620 օծեցին թագաւոր զոր-դին նորա Լեւոն ։

Ի թուին 723 Պնտուխտար սուլտանն աւերեաց զՄսիսոյ կանդարայն ու գնաց մինչ ի Կոռիկոս ։

Ի (79) թուին 735 մեռաւ Տէր Յակոբ կաթողի-կոսն . եւ եդին յաթոռն զՏէր Կոստանդին պրօնա-գործ (80) ։

Ի թուին 737 ծնաւ պարոն Թորոս՝ որդի Լեւոն թագաւորի ։

Ի թուին 738 մեռաւ Լեւոն թագաւոր . եւ նստաւ իւր որդին պարոն Հեթում . եւ վասն Տէր Կոստան-դեայ սուտ վկայս բերեալ ձգեցին յաթոռոյն ։

Ի թուին 739 դրին կաթողիկոս զՏէր Ստեփաննոս Հռոմկլայեցին (81) ։

Ի թուին 740 Աշրաֆն ջնջեաց զքրիստոնեայքն ի Սեհլէն . եւ էառ զվէց քաղաք :

Ի թուին 841 եկն Աշրաֆ՝ սուլտանն Մսրայ, ի վերայ Հռոմկլային շատ զօրօք, և կռուեցաւ ի վերայ բերդին շատ օրեր . էառ զնա , եւ զամենայն սուրբ մասունսն որ անդ էին, եւ զաջ սուրբ Գրիգորի եւ զկաթողիկոսն եւ զեպիսկոպոսքն եւ զքահանայք եւ զտարկուազունք շատք ծառայ տարաւ ի Մսր : Եւ անդ մեռաւ կաթողիկոսն Տէր Ստեփաննոս : Կարծեմ թէ՝ յանիրաւ հրամանց եղեւ վասն Տէր Կոստանդեայ աքսորելոյն . զի այս ամէնս վասն նախանձու եղև : Եւ մեռաւ պարոն Օշին մարաջախտն (82). և կարգեցին զՈւիթայն, և տուին թագաւորութեան տիրոջն :

Եւ ի սոյն աւուրքս պարոն Հայոց Հեթում գնեց զաջն Լուսաւորչին և զամենայն մասունս ի յանօրինաց, եւ եբեր ի Սիս : Եւ դրին կաթողիկոս զՏէր Գրիգոր :

Ի թուին 746 եգիր պարոն Հեթում թագաւոր Հայոց զԱմրատ՝ զիւր եղբայրն, և ինքն էառ զմէկ այլ եղբայրն պարոն Թորոս՝ զայր Պաղաստնին, եւ գնաց ի Կոստանդնուպօլիս ի քոյրն իւրեանց Ռիթայն ի տես : Եւ յորժամ դարձաւ՝ բռնեց Ամրատ զեր-կուսն և եդ ի բանտ :

Ի թուին 748 ետ խեղդել Ամրատ զեղբայրն իւր

պարոն Թորոս ի Բարձրբերդ. եւ զպարոն Հեթմոյ աչքն խարել ի Մոլեւոնն :

Ի սոյն ամի միւս եղբայրն պարոն Կոստանդին՝ տէր Կապնուն, ժողովեց հեծեալ, եւ փախոյց զՍմբատն. եւ եհան զաւագ եղբայրն իւր Հեթում. եւ հրամանաւ նորա ինքն թագաւորեաց : Եւ յետ սակաւ աւուրց բռնեց զպարոն Կոստանդին պարոն Հեթում, եւ զՍմբատն եհան յերկրէ իւրմէ : Եւ յետ աւուրց եդ թագաւոր զորդին պարոն Թորոսին զտղայն Լեւոն :

Ի սորա աւուրքն կոտորեցին զօրքն Հայոց եւ պարոն Հռոմոց Խաղանձուխն զզօրքն Մարաշ ի մօտ յԱյաս. որ էր թիւ հեծելին Մարաշ չորեքտասան հազար այր :

Եւ մեռաւ Տէր Գրիգոր կաթողիկոս. եւ դրին զՏէր Կոստանդին Կեսարացին :

Ի թուին 756 սպան Պիլարղուն զտղայ թագաւորն Լեւոն եւ զհօրեղբայրն իւր պարոն Հեթում Անաւարզոյ առջեւն. որոց ողորմեսցի Քրիստոս :

Ի սոյն ամի կալեր եղբայրն պարոն Հեթմոյ՝ տէրն Տարսոնի՝ պարոն Ալինախն, գնաց առ Խարպանդա խանն, եւ եառ սպանանել զՊիլարղուն. եւ էառ զվճար անմեղացն. եւ դարձաւ առ իւր եղբայրն Օշին :

Ի թուին 757 օծեցին թագաւոր Հայոց զՕշին ի Տարսուս քաղաք :

Ի թուին 758 մեռաւ պարոն Այինախն. որոյ ողորմեսցի Քրիստոս ։

Ի թուին 759 ծնաւ թագուհին Զապէլ զորդի Օշին թագաւորին զԼեւոն. եւ ինքն հանգեաւ ի Քրիստոս ։

Ի թուին 765 ուղարկեաց, երբեր Օշին թագաւորն զեղբօր դուստրն Ըռէ (83) Ըռուպերտին. եւ պսակուեցաւ ի Տարսուս ։

Ի թուին 767 եկաւ Խարամանն շատ հեծելով, եւ գերեաց զսահմանսն Տարսոնի. եւ դարձաւ, էջ ի Բամբօղոնի կանդարայն ։ Նա գունդն Կոռիկոսոյ պարոն Օշին երեք հարիւր մարդով հասաւ նոցա, եւ կոտորեաց զնոսա Աստուծով. և դարձաւ ուրախութեամբ ։

Ի թուին 769 հանգեաւ ի Քրիստոս թագաւորն Օշին ։ Եւ ի սոյն ամի եղեւ շմոր. զի զօրք Մսրայ աւերեցին զԿիլիկիայս ։ Ի թուին 769 կոտորեցին զօրքն Հայոց զզօրսն Մսրայ առաջի Բարիքարկու և ի սահմանս Այասու. եւ խոցեալ յանօրինաց մեծ իշխանն տէր Կանչոյն պարոն Կիօռին. և մեռաւ ։

Ի թուին 770 օծեցին թագաւոր Հայոց զղեւաթոյսն զորդի Օշին թագաւորին զԼեւոն. որոյ տացէ ամս Աստուած ժամանակս բազումս. և էառ (Լեւոն) իւր թագուհի զդուստրն Գունդին Կոռիկոսոյ պարոն Օշնի, որ էր պայլ Հայոց ։

Ի սոյն ամի եմուտ շատ զօրք Հոռոմոց պարոն Ցամուրտաշն ի Կիլիկիայ առ ի բառնալ զբրլատանէութիւնն․ եւ զբազումս գերեաց. եւ ել ամաչեցեալ եւ գնաց ։

Ի թուին 771 եկին զօրքն Մսրայ ի Կիլիկեցւոց յաշխարհս ի վերայ քաղաքին որ կոչի Այաս․ եւ պաշարեցին զնա, եւ առին զմին զայն․ եւ բազում քրիստոնեայս գերեցին ։ Եւ զկնի երկոտասան աւուր շատ ազգեր հնարիւք եւ բաբանիւք մարտեան ի վերայ Ճգրին ։ Նա բեկեցան գլխաւորք տեղւոյն, գաղտ ի գիշերի մտան ի ղալէքն (84) Կիպրոսայ տիրոջն, որ և եկեալ էին իւր հրամանօք յօգն քաղաքին, եւ նաւով փախան՝ ոմանք ի Կիպրոս, եւ ոմանք ի Կոռիկոս ։ Եւ զկնի այս աւերածոյս եկին, իջան ի գետեզրն որ կոչի Ջահան. և հրաման տուեալ զօրացն յարձակիլ առ ստորոտ լերանց աշխարհին՝ շատք գերեցին ։ Իսկ զօրք Թագաւորին Լեւոնի սրտախոց եղեն ընդ աւերումն երկրիս․ քիչ մի մարդով գնացին ի վերայ իջեւանի նոցա, և արարին խիստ կոտորուած ։ Իսկ հեծեալն որ իջեալ էր առջև կռուոյ՝ կամուրջ կապեալ էին նաւերով ի վերայ գետին․ խմացան զգալ զօրացն մեր, եւ անցան յայս կողմս անհամար շատ ։ Իսկ զօրք մեր փախեան․ դարձան յետս առաջի Մսխայ իւրեանց զօրագլխոյն․ և անօրէնքն ի յետև․ և զբազումս սպանին ։ Մեռան յայն օր յիշ֊

խանացն Հայոց պարոն Հեթում՝ Ջկնոյին տէրն, և իւր եղբայրն պարոն Կոստանդին և պարոն Վահրամ Լօռիկ, պարոն Օշին՝ մարաջախտն որդին. և ձիաւոր քսան և մի, և փոքր մարդ շատք, որոց ողորմեսցի նոցա Աստուած :

Ի սոյն ամի 771 մեռաւ Տէր Կոստանդին Կեսարացին կաթողիկոսն : Եւ ի սոյն ամի ի տօնի ծննդեան Քրիստոսի դրին կաթողիկոս հրամանաւ թագաւորին Լևոնի եւ շատ եպիսկոպոսաց զՍսոյ եպիսկոպոսն զՏէր Կոստանդին Լամբրոնացին :

Ի թուին 774 հանգեաւ ի Քրիստոս մանուկն պարոն Հեթում. եւ եթող մեծ սուգ հօր իւր պարոն Օշնի՝ Կոռիկոսոյ Գունթին :

Ի թուին 775 մեռաւ կաթողիկոսն Տէր Կոստանդին Լամբրոնացին :

Ի թուին 776 դրին կաթողիկոս զարհի եպիսկոպոսն Անաւարզայ զՏէր Յակոբ ի Սիս՝ դքոյրորդի Տէր Գրիգորի՝ սուրբ երիցանց : Յորժամ մեռաւ Տէր Կոստանդին կաթողիկոսն՝ նա տարան ի Դրազարկն. եւ բացին ղհողքն Տէր Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին. նա գտան զշուրջառն փտած, եւ ըզպաժլքն (85) խայտնին չէն, և զգաւազանն և զմատն. և ոսկր ամենևին չգտան. և փառք տուին Աստուծոյ որ առնէ սքանչելիս ի սուրբս :

Ի թուին 777 ամբարիշտ պարոն Հռոմանց Տամուր֊

տաչն ի համբաւէ վախայ ի զօրաց Խանին Մուղալաց. փախաւ եւ գնաց առ սուլտանն Մսրայ Մէլիք Նասրն. եւ կամէր նովաւ կռուիլ ընդ ազգն իւր եւ ընդ Թագաւորն Հայոց Լեւոն։ Նա Աստուած խափանեաց զինքն եւ զհամախոհք իւր։ Եւ յետ ութ ամսոց եսպան զինքն սուլտանն. եւ գլուխն յուղարկեաց առ Պուսայիտ Խանն։

Ի Թուին 778 Ցունվարի քսան եւ վեցն յանկարծ առաքեաց պատանին Լեւոն՝ Թագաւորն Հայոց, իշխանք սակաւ հեծելով վասն բռնելոյ Գունդին Կոտիկոսոյ եւ իւր եղբօրն։ Եւ դիպեցան յԱտանոյ սահմանքն Գունդին, որ առ Թագաւորն երթայր հինգ մարդով. եւ բռնեցին զինքն եւ դարձուցին յետ, եւ դրին յարգելք ի յեկեղեցին սուրբ Մօրօթու ի մօտ Ատանոյ։ Եւ գնաց հեծեալն ու բռնեց զեղբայրն Գունդին ի գեղն տղայ Լեւոնին զգունդստաբլն, եւ բերին յԱտանայ. եւ ի մէկ օրն սպանին զերկուսն։ Պատճառք զայս դրին թէ՝ յետ մահուան Օշին Թագաւորին շատ բերդեր ապրանք առին, որ չէր իւրեանց սահմանով ապրանք. և այլ շատ բան ասացին փոքր մարդիկն վասն նոցա, ինչվի սպանել տուին. որ զճշմարիտն Աստուած գիտէ։ Եւ Լեւոն Թագաւորն անմեղ է ի նոցա արենէն. որոց ողորմեսցի նոցա Աստուած. եւ պահեսցէ երկար ժամանակաւ զԹագաւորս մեր զԼեւոն։

Ի Թուին 779 եկն շատ անձրև ընդ ամէն աշխարհս. և ելաւ բազում գետեր. և ի նոյն աւուրս Նոյեմբերի տասն և վեց ի Կիպրոսայ կղզին վրայ մեծ խանդակն հեղեղով. և տարաւ զԼեքօսիոյ քաղաքին մի մասն. և կորեան ոգիք աւելի քան վեց հազար ։

Ի Թուին 780 երեր Թագաւորն Հայոց Լեւոն զդուստր Թագաւորին Սիճիլոյ զԸռէֆոտ իւր Թագուհի, որ է կին համեստ եւ իմաստուն . որ տացէ Աստուած Թագաւորին մերոյ եւ Թագուհւոյն ժամանակս բազումս . եւ տեսցե՛ն զորդիս որդւոց իւրեանց . ամէն ։



Մեծին Անտիոքայ հրամանաւ պատրիարքին աթոռոյն են այս վիճակքս ։

Կաթողիկոսք և մետրապօլտեր և առաջին եպիսկոպոսք որ են կաթողիկոսք, եւ եպիսկոպոսեր, եւ դաւաղանք սոցա ։ Կաթողիկոս Վրաց տանն ։ Կաթողիկոս Իրենապօլսի որ է Բաղդատ ։ Կաթողիկոս Ըռօմի Կիրիօս (86) որ է Պարսիկք ։ Մետրապօլտեր են այս . Սրոյն (87) ունի եպիսկոպոս երեքտասան ։ Տարսուս ունի եպիսկոպոս եօթն ։ Ուռհա ունի եպիսկոպոս մետասան ։ Համս ունի եպիսկոպոս եօթն ։

Երապօլիս ունի եպիսկոպոս ութ ։ Պարէն ունի եպիսկոպոս իննեւտասն ։ Անաւարզայ ունի եպիսկոպոս ինն ։ Սելեւկիա ունի եպիսկոպոս քսան և չորս ։ Դմշկս ունի եպիսկոպոս տասն ։ Ամիտա որ է Մելտինի ունի եպիսկոպոս տասն ։ Տրապօլիս ունի եպիսկոպոս չորս ։ Գամրէժ ունի եպիսկոպոս եօթն ։ Համս ունի եպիսկոպոս չորս ։ Պերութ ինն ։ Երապօլիս որ է Պաղպաք Լատիկն (ունի) զՏար, Սամօսատ որ է Ամիտօն, Կիրոս, Մարտիրուպօլիս, Մսիս, Ատանա եւ Բանպօլիս ։ Առաջին եպիսկոպոսեր որ են փոքր կաթողիկոսք . 1 Խալքիս . 2 Ղաւաղա . 3 Սելեւկիա ի շամբն է . 4 Նազարէթ . 5 Եապալթաս . 6 Երմանապօլիս . 7 Ղաւուզա . 8 Սաղամիա . 9 Վարկուսս . 10 Ջրասուս . 11 Տանաւլաղայ ։

Մեծ կաթողիկոսք մետրապօլտեր՝ երկոտասան . փոքր կաթողիկոսք՝ մետասան ։ Գաւազանքն է . Հռոմայ աթոռն սուրբ Պետրոսի վիմին է, որում ետ Տէր զփականս արքայութեան երկնից եւ իշխանութիւն մեծ . եւ վերագոյն կարգեաց քան զամենայն առաքեալսն թէ՝ զոր կապես յերկրի, եղիցի կապեալ յերկինս . և զոր արձակես՝ արձակեալ յերկինս(88)։ Ի սորա հայրապետին առջեւ տանեն խաչ, և ի գաւազանի տեղ՝ ճոկան . զի հովուի օրինակ է ։

Զորս պատրիարքութեան աթոռ եղաւ յաշխարհի հրամանաւ սուրբ առաքելոյն, զոր յետոյ սուրբ մեն֊

հոգւոյն սաստել հաստատեցին. որ է օրինակ չորեքկերպեան աթոռոյ Աստուածութեանն :

Առաջին աթոռն է Երուսաղէմին (89), յորում էրն Ղուկաս աւետարանիչ : Յայսոր պատրիարքին առաջև տանեն գաւազան. ու դատաստանակի առեղ կախի ի գլուխն եպիսկոպոսաց կոնքեռն, որ գուշակէ թէ՝ առաջին եպիսկոպոսութիւնն յԵրուսաղէմ եղաւ. ու այս եպիսկոպոսութեան նշան է :

Երկրորդն Անտիոք է, յորում էրն Մաթէոս աւետարանիչ (90) : Ի սորա առաջև տանեն խաչ ձողով, որ գուշակէ թէ՝ զխաչեցեալն Քրիստոս յառաջ յԱնտիոք քարոզեցին :

Երրորդն Կոստանդնուպոլիս է, յորում էրն Յովհաննէս յԵփեսոսէ. նա վասն կայսերութեանն անդ եղաւ առաջնութիւնն : Ի սորա պատրիարքին առաջև տանեն երեք մեծ մոմ արփառակ ի վառ. որ գուշակէ թէ՝ զԵրրորդութիւնն եւ զմի Աստուածութիւնն եւ զբնութիւնն ի յայսոր վիճակին քարոզեցին ե. հաստատեցին սուրբ հարքն ի սուրբ ժողովսն ի Նիկիա, ի Կոստանդնուպոլիս և յԵփեսոս :

Չորրորդն Աղեքսանդրուն է, ուր էրն Մարկոս աւետարանիչ. զոր յետոյ մեծ վարդապետն Աթանասիոս արիական ջանիւ հալածեաց զհերձուածողսն : Յայսոր առաջև տանեն գաւազան մէն, զի գաւազանն վարդապետի աստիճան է :

Հայոց կաթողիկոսն հրամանաւ սուրբ հայրապետին Հռոմայ Սեղբեստրոսի եւ պատրիարքին Կոստանդնուպօլսի Մետրոփանոսի, և այլ երից պատրիարքաց կամօք եղաւ (91) ։ Սուրբ Գրիգոր Լուսաւորիչն յաթոռն Թադդէոսի առաքելոյն (կարգեցաւ) կաթողիկոս ամենայն Հայոց ։ Ի սորա առջև տանեն խաչ ձողով և գաւազան. (որ գուշակէ) թէ է եպիսկոպոսապետ և վարդապետ ։

Հրամանաւ սուրբ Գրիգորի եղաւ սուրբ Յակոբ՝ Մծբնայ հայրապետն, պատրիարք Ասորւոց. զի վասն անուան հայրապետին Յակոբիկք անուանին ։ Զոր չորս պատրիարքունքն եւ պապն Հռոմայ ոչ ընդունին բայց միայն Հայք ։ Զոր Յակոբ սուրբ Յակոբայ մականուն Յակոբ Ծանծալաս ասեն ։

Առ գլխաւորքն եղբարք՝ որ երբ կամենան հայրապետքն ժողով առնել վասն հաւատոյ կամ այլ ինչ բանի, նա երբ Երուսաղէմի եպիսկոպոսն չլինայ՝ չէ ընդունած ժողովն այն ։ Զի զսուրբ ծննդեան ու զխաչելութեան և զյարութեան աստուածութիւնն ունի. և ամենայն ինչ նախա հաստատի ։ Թէ և ինքն մէն կենայ, նա կարէ տիեզերական ժողով առնել առանց այլ պատրիարքացն եւ պապուն . ու չկարեն հակառակիլ, զի յամենայն ժողովսնին զԵրուսաղէմի եպիսկոպոսն բարձր նստուցանեն ։

Զկնի մահուան Գաղկայ՝ արքայի Հայոց, եկին

յաջորդեցին որդիք Մեծապատիւ իշխանին պարոն Ռուբէն եւ պարոն Կոստանդին, ու Աստուծոյ օգնութեամբն ի Մսլմանայ ու շատ մը ի Հոռմէն մեծ մասն աշխարհիս Կիլիկիոյ (առին), որ էր առաջին բերդ Վահկայն, ի Թուին Հայոց 527 ։



## Անուանքն են Պարոնաց և Թագաւորաց Հայոց ։

Պարոն Կոստանդին՝ ամս չորեքտասան ։ Պարոն Թորոս՝ իր որդին, ամս քսան ինն ։ Պարոն Լևոն՝ իր եղբայրն՝ ամս տասն ։ Յետ այսոր Պեռւփեռօժէն կայսրըն երեկր էառ զաշխարհս, ու Ահմատ մելիքն ի հետ. ու երեք տարի խլած կեցաւ ինչվի եկն պարոն Թորոս էառ զՎահկայն, որդի պարոն Լևոնի ։ Պարոն Թորոս՝ որդի Լևոնի, ամս քսան եւ վեց ։ Պարոն Ռուբէն՝ որդի Թորոսի, ամ մի ։ Պարոն Մլեհ՝ եղբայր Թորոսի, ամս եօթն ։ Պարոն Ռուբէն՝ որդի Ստեփանէի, ամս երկոտասան ։ Լևոն Թագաւոր՝ որդի Ստեփանէի, ամս քսան երկու ։ Ցիլիպ Թագաւոր՝ ամս չորս ։ Հեթում Թագաւոր՝ ամս քառասուն եւ հինգ ։ Լևոն Թագաւոր՝ ամս ինն և տասն ։ Պարոն Հեթում՝ ամս ութ ։ Սմբատ Թագաւոր՝ ամս երկու ։ Պարոն Կոստանդին՝ ամ մի ։ Զորս տարի միջոց մինչ ի Լևոն Թագաւոր ։ Լեւոն Թագաւոր՝ ամս

երեք ։ Օշին (92) Թագաւոր՝ ամս երեքտասան ։ Լեւոն Թագաւոր․ պահեսցէ զնա Աստուած ի բարի ամս հարիւր ։



## Սպարապետք են Հայոց ի Լեւոն Թագաւորէն ընդ այս ։

Պարոն Պաղտին ։ Պարոն Ապլղարիպ՝ տէր Կոռտափոյն ։ Կոստանդին՝ աւագ պարոն ։ Պարոն Սըմբատ գունդստապլ՝ տէր Պապառոնին ։ Պարոն Լեւոն՝ իւր որդին ։ Պարոն Օշին Մինիջան ։ Պարոն Հեթում՝ Կոռիկոսոյ տէրն ։ Պարոն Կոստանդին՝ իւր որդին, տէր Լամբրոնին ։ Պարոն Ճուան՝ Սրոյ տիրոջ որդին ։



## Մարաջախքն են ։

Պարոն Վասիլ՝ Վանէրոյն տէրն ։ Պարոն Օշին Լամբրոնային՝ Մառնիշոյ տէրն ։ Պարոն Հեթում՝ իւր որդին ։ Պարոն Թորոս՝ Սմանակլին տէրն ։ Պարոն Սմբատ՝ Պինակին տէրն ։ Պարոն Պաղտին Նըղըրցի ։



## Կայսերք Հռոմայ են ։

Յուլիոս Թագաւորն շինեաց զՀռոմ, որ էր հայր մօրն Աղեքսանդրու Մակեդոնացւոյ . եւ յետ 80 ամաց եմուտ կայսերութիւնն ի Հռոմ ։



## Անուանք կայսերացն ։

Գայիոս՝ ամն 3 ։ Աւգոստոս՝ ամն 56 և կէս ։ Տիբերոս՝ ամն 23 ։ Գայիոս՝ ամն 3 ։ Կղօդիոս՝ ամն 13 ։ Ներոն՝ ամն 13 ։ Վեսպասիանոս՝ ամն 10 ։ Տիտոս՝ ամն 5 ։ Դոմետիանոս՝ ամն 15 ։ Ներուաս՝ ամն 3 ։ Տրայիանոս՝ ամն 19 ։ Անդրիանոս՝ ամն 21 ։ Տիտոս՝ ամն 25 ։ Մարկոս՝ ամն 19 ։ Կոմոդոս՝ ամն 13 ։ Եղիոս՝ ամ 1 ։ Սեւերիոս՝ ամն 18 ։ Անտոնինոս՝ ամն 4 ։ Մակրինոս՝ ամն 19 ։ Աղեքսանդրոս՝ ամն 16 ։ Մաքսիմինոս՝ ամն 4 ։ Գորդիանոս՝ ամն 6 ։ Փիլիպպոս՝ ամ 1 ։ Դեկոս՝ ամն 2 ։ Գաղոս՝ ամն 2 ։ Վաղերիանոս՝ ամն 15 ։ Կղօդիոս՝ ամ 1 ։ Աւրելիանոս՝ ամն 5 ։ Պրոբոս՝ ամն 6 ։ Կարոս՝ ամն 2 ։ Դիոկղետիանոս՝ ամն 20 ։ Կոստանդիանոս՝ ամն 34 ։ Կոստաս՝ ամն 35 ։ Յուլիանոս՝ ամ 1 ։ Յոբիանոս՝ ամիս 6 ։ Վաղէս՝ ամն 13 ։ Գրատիանոս՝ ամն 15 ։ Թէոդոս՝ ամն 16 ։

Արկադէս՝ ամս 32 ։ Թէոդոս՝ ամս 37 ։ Մարկիանոս՝ ամս 15 ։ Զենոն՝ ամս 16 ։ Անաստաս՝ ամս 27 ։ Յուստինոս՝ ամս 9 ։ Յուստինէոս՝ ամս 39 ։ Տիբերիոս՝ ամս 8 ։ Մօրիկ՝ ամս 23 ։ Փոկաս՝ ամս 8 ։ Հերակլէս՝ ամս 31 ։ Կոստանդին՝ ամիսս 4 ։ Կոստանդին՝ ամս 10 ։ Յուստինիանոս՝ ամս 5 ։ Յուստինիանոս՝ ամս 10 ։ Կոստանդին՝ ամս 20 ։ Նիկեփոռ՝ ամս 30 ։ Ափսամարոս՝ ամս 17 ։ Լևոն՝ ամս 6 ։ Կոստանդին՝ ամս 5 ։ Տիբերիոս՝ ամս 10 ։ Թէոփիլոս՝ ամս 30 ։ Միքայէլ՝ ամս 20 ։ Լևոն՝ ամս 28 ։ Ալէքս՝ ամ 1 ։ Կոստանդին՝ ամս 13 ։ Ռոմանոս՝ ամս 4 ։ Նիկեփոռ՝ ամս 7 ։ Յովհաննէս Չմշկիկ՝ ամս 5 ։ Վասիլ յաղթողն՝ ամս 49 ։ Կոստանդին՝ ամս 4 ։ Ռոմանոս՝ ամս 3 ։ Միքայէլն՝ ամս 11 ։ Կեսարոս՝ ամիսս 5 ։ Մոնոմախն՝ ամս 13 ։ Թէոդորն՝ ամս 2 ։ Միքայէլ ալևորն՝ ամիսս 6 ։ Կոմնենոս՝ ամ 1 ։ Դուկիծն՝ ամս 8 ։ Տիոժէնն՝ ամս 4 ։ Միքայէլն՝ ամս 7 ։ Վօտոխանոս՝ ամ 1 ։ Մեղեսիանոս՝ ամս 6 ։ Ալէքսն՝ ամս 36 ։ Կալօժան՝ ամս 18 ։ Պեռփեռօժէնն՝ ամս 8 ։ Կիռ Մանիլն՝ ամս 42 ։ Անդրոնիկէն՝ ամս 30 ։ Անգեղոսն՝ ամս 40 ։ Լասքարի՝ ամս 21 ։ Պալաղոզն ի թուին 716 նստաւ թագաւոր ։ Անդրոնիկէ՝ թոռն սորա, որդի Կիր Ալէքսին, բռնութեամբ տիրեաց թագաւորութեանն. և եդ ի բանտ զմեծ հայրն իւր զԱնդրոնիկէն ։ Այս եղև ի թուին Հայոց 776 ։

Կոստանդնուպօլսի Պատրիարքերն են յորժամ Կոստանդիանոս հաւատաց մինչ ի չորրորդ ժողովն ։

Մետրոփանէս ։ Աղէքսանդրոս ։ Սուրբ Պօղոս խոստովանողն ։ Մակեդոն ։ Եւդոքսիոս ։ Դիմոփիլոս ։ Նեքտարիոս ։ Սուրբ Յոհան Ոսկեբերանն ։ Արտիկոս ։ Սինիս ։ Նեստոր ։ Մաքսիմիանոս ։ Պրոկղ ։ Փլաբիանոս ։ Անատօլիս ։ Սուրբ Գերմանոս ։

Ի Հռոմայ շինութենէն մինչ ի մեծն Կոստանդիանոս՝ ամն 514 ։ Եւ ի Կոստանդիանոս թագաւորէն մինչ ի Թուականն Հայոց 779 է ամն 1033 . որ է ջամն ի Հռոմայ շինութենէն մինչ ի Թուականն 779 ամն 1547 ։ Ի Քաղկեդոնի ժողովոյն մինչ ի Թուականն 779 ամն 860 ։

Ի Թուին Հայոց 63 յարեաւ Մահմետ, և մոլորեցոյց զՄսլմանքն ։ Էր կայսր յայն ժամանակումն Հերակլէս, և կաթողիկոս՝ Տէր Սահակ որ ի Խոռան մեռաւ ։

Ի յԱդամայ մինչ ի Քրիստոսի ծնունդն ամք 5500 ։ Ի ծննդենէն Քրիստոսի մինչ ի Թուականն 779 ամք 1331. ջամն է յԱդամայ մինչ ի Թուականն 779 ամք 6837 ։ ՅԱդամայ մինչ ի Հայոց թիւն է ամ 6059 ։ Ի Թուէն 779 ջումլի ամք 6838 , Ի ծննդենէն Քրիստոսի մինչ ի Հայոց թիւն է ամք 552 ։

Ի թուին 772 գնաց Տէր Կոստանդին կաթողիկոսն առ սուլտանն Մարայ. եւ արար սէր եւ խաղաղութիւն. եւ դարձաւ մեծ պատուով. եւ երետ կաթողիկոսին երեք ձիաւոր այր, որ ի հոն ծառայ կային, և այլ ծառայք ի փոքրագունից, և դարձաւ ի Սիս ։

Ի թուին 775 ի մայիսի 2 հինգշաբաթի ընդ լոյսն երիտասարդ մի կայր՝ եօթ ամ էր որ կոյր էր երկու աչօք. գնաց անկաւ առջև Կուսին Աստուածածնին. եւ լուայ զի բժշկեցայ ։ Նա ընդ առաւօտն յայտնի երևեցաւ Աստուածածին, ու կոչէր զնա եւ ասէր «Գրիգո՛ր Գրիգո՛ր՝ է՞ր կու լաս. յորժամ կուրացար դու՝ է՞ր չեկիր առ իս որ բժշկեալ էի զքեզ»։ Եւ նա ասէ «ոչ գիտէի զյարկ քո»։ Եւ եդ սուրբ Կոյսն զձեռն, եւ ճեղքեաց զթարթիչքն. նոր պտուղ չինեաց. և կալեալ փոքր շիշ և զեղլիր՝ անցոյց զդեղղերն յաչքն ։ Եւ առժամայն բժշկեցաւ, եւ տեսաւ յայտնի զսուրբ Կոյսն ծիրանազգեստ, եւ երկու հրեշտակ առաջի ։ Եւ ոմանք որ տեսեալ էին զնա յառաջն թուխակն, և այժմ խաժակն եղև, և ամենայն բնակիչք քաղաքին և գաւառին տեսան, և գոհութիւն տուին Աստուծոյ օրհնելոյն յաւիտեանս. ամէն ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

## Յարեգրոց Սմբատայ սպարապետի ։



1. Գագիկ առաջին ոչ թագաւորեաց յամին Ն, որպէս յառաջ բերէ Սմբատ պատմիչն այլ ի ՆԱԲ ։

2. Գագիկ ոչ ծնաւ յամի Նծ. եւ ոչ իսկ հրաժարեցան ի հանդէս օծման նորա Փիլիպպոսն՝ արքայն Աղուանից, եւ կաթողիկոսն նոցա Յովհաննէս ։ Այլ այս ամենայն եղեւ ի ժամանակի անդ գահակալութեան Աշոտոյ երրորդի, որ եւ յաթոռն յամի Ն. եւ օծաւ ի Նծ. եւ ի հանդէս թագաւորութեան նորա եկին արքայն եւ կաթողիկոսն Աղուանից. ամին իբր հարկ է կարծել ի պատմութեան Սմբատայ փոխանակ Գագկայ զԱշոտ, որ արդարեւ էր որդի Աբասայ. եւ սա՝ որդի երանելւոյն Սմբատայ ։ Տե՛ս զպատմութիւն Հայոց ի Հ. Մ. Չամչ. հատ. Բ. երես 836-837 ։

3. Այս է Նիկեփոռ Բ. որդի Վարդայ պատրկի. կոչի եւ Փոկաս ։ Ի տղայութեան Ռոմանոսի Բ. կարգեցաւ սպարապետ զօրուն Յունաց. եւ թագ կապեաց յամին 962, տիրեաց Կիլիկիոյ, Սիրիոյ եւ Կիպրոսի. և սպանաւ յ969. ի Յովհաննէսէ Չմշկկայ՝ ի սիրողէ կայսրուհւոյն Թէոփանեայ ։

4. Կրտերն, ուղղագոյն ևս կուրտերն (խատըմ կամ կուտած) էին մաղեալ Ներքին պաշտօնեայք ի պալատան կայսերաց Բիւզանդիոյ ։

5. Որպէս ասացաւ ի վեր անդր, ի ծանօթութեանն 3. Նիկեֆօռ-Փոկաս սպանաւ յ969 թուին և ոչ ի 418 թուին Հայոց ։

6. Դարձեալ շփոթութիւն ։ Չի՛ք առ Հայս Գագիկ անուամբ կամ այլ թագաւոր որ մեռեալ ի թըւականին Հայոց ՆԻ ։ Աշոտ զոր համարիմ վարեալ Սմբատայ փոխանակ Գագկայ, մեռաւ ի թուին Հայոց ՆԻՁ. եւ եթող ոչ երկուս որդիս՝ զՅովհաննէս եւ զԱշոտ. այլ երիս՝ զՍմբատ, զԳագիկ եւ զԳուրգէն ։ Իսկ եթէ Գագիկ անուամբ հարկ իցէ իմանալ զԳագիկ առաջին՝ յայնժամ զվախճան նորա դնելի է ոչ թէ յամի ՆԻ. այլ ի ՆԿԹ ։ Տե՛ս ի պատմութեան Հայոց. հատ. Բ. երես 896. արարեալ Հ. Մ. Չամչեան ։

7. Պատերազմն ընդ մէջ Յովհաննիսի և Աշոտոյ, եւ հաշտութիւնն հանդերձ բաժանմամբ աշխարհին Հայոց եղև ի ձեռն Պետրոսի գետադարձի յամին 1020, և ոչ թէ Անանիայի, որ մեռաւ յամին 964 ։

8. Ի ժամանակին յորում Սամանեան ճոխութիւն թագաւորէր ի Մաւարաննահր եւ ի Խորասան՝ յարեաւ ընդդէմ նորա Բաւայհ ոմն՝ սոսկական ձկնորս, ի գաւառէն Դելիմայ (Դիլիման) ։ Երեքին որդիք նորա՝ Ալի, Հասան և Ահմետ, որք և կոչեցան Իմադ-Եդդոլայ, Ռօքն-Եդդոլայ և Մօէզ-Եդդոլայ, մտին նախ ի ծառայութիւն իշխանին Գիլանայ. ապա

սակաւ առ սակաւ տիրեցին առաջինն՝ գաւառին Ֆարսի (Պարս) հանդերձ Շիրազ մայրաքաղաքաւ, երկրորդն՝ Խորասանի, երրորդն՝ Կիրմանի և Բաղդատայ. որ և ընկէց յաթոռոյ զամիրապետն Մոկտալի եւ կացոյց ի նորա տեղի զՄոթի : Ադադ-Եդդօուլայ կալաւ զԴիար-Բեքիր, զԴիար-Մօղար, զԻրակ-Աջեմի, զՋօրջան և զՏաբարեստան :

9. Սակաւ մի ի վերոյ դնէ Սմբատ զօրդիս Գագկայ՝ զՅովհաննէս-Սմբատ և զԱշոտ Դ. թագաւորեալ առաջինն՝ Անւոյ, երկրորդն Դրուց աշխարհին կամ լաւ ևս՝ հիւսիսոյ Հայաստանի : Այս ամենայն եղեւ յամի Տեառն 1020 : Աստանօր զՅովհաննէս Ջմշկիկ կամ Կիւռ-ժան հայկազունի՝ կայսր Յունաց, որ թագաւորեաց յամէ 969 ց975. առնէ ժամանակակից նոցա, որ յայտնի վրիպակ է. ըստ որում Աշոտ Դ. թագաւորեաց գոնէ 45 ամօք զկնի մահուան Յովհաննիսի Ջմշկկայ :

10. Թերևս ի պատուական գրուցաց լուեալ, կամ ի սնափառութենէ մղեալ՝ դնէ Սմբատ զթիւ զօրուն Հայոց առ Աշոտով 300,600, որ ոչ միայն անստոյգ է. այլ եւ հակառակ վկայութեանց ամենայն հաւատարիմ, ժամանակակից եւ ստուգապատում պատմագրաց մերոց : Տե՛ս Նա և ի պատմ. Հայոց. հատոր Բ. երես 845. արար. Հ. Մ. Ջամչեան :

11. Թիւ բովանդակ զօրուն Աշոտոյ Գ. հանդերձ օգնական գնդովն Վասպուրականի հազիւ թէ հասանէր յ80,000 կամ առ առաւելն ի 100,000 . սմին իրի անճարին էր նմա տալ Յովհաննիսի Ջմշկկայ

զ80,000 ձիաւոր եւ 20,000 հետեւակ զօրս յօգնութիւն ։ Ըստ հաւատարիմ պատմչաց թիւ օգնական գնդին զոր եա Աշոտ Յովհաննիսի Զմշկկայ էր 10,000։ Տե՛ս նաև ի պատմ. Հայոց. հատ. Բ. եր. 845.

12. Օրինակն Պարոն Ոսկանի ունէր լոկ « կամ ». իսկ մերն « սա՛ր կամ » այս ինքն է պատրաստ կամ ։

13. Յօրինակին Պարոն Ոսկանի « չտապելով ». ի մերն « վազուելով » ։

14. Յօրինակին Պարոն Ոսկանի « պողպատակողն ». ի մերն « պողպատ ճկողն » ։

15. Յօրին. Պարոն Ոսկանի « երեր զթադն ի տեղի իւր ». ի մերն « երեր զթագաւորն ի տեղի իւր » ։

16. Անանիա փոխեցաւ առ Քրիստոս յամին 964. այսինքն տասն և հինգ ամօք յառաջագոյն քան զյուցեալ թուականն ի Սմբատայ ։

17. Վահան կացուցաւ կաթողիկոս յամի Տեառն 965. և ընկեցաւ յաթոռոյն յ969. իսկ Յովհաննէս և Աշոտ, որպէս յայտ է, կացուցան թագաւորք յամին 1020 ։

18. Վահան յետ աքսորելոյ յաթոռոյն յամի 969, եկաց այլ եւս ամս տասն, եւ մեռաւ յ979. եւ ոչ ի թուին Հայոց ՆԼԲ. որ համեմատի 984 թուին Քրիստոսի ։

19. Յօրին. Պ. Ոսկանի « առ հայրապետութեան իւրեանց ». ի մերն « առ հպարտութեան իւրեանց ». զորոյ զստուգութիւն հաստատեն բոլորովին հետեւեալ բանքն ։

20. Յօրին. Պ. Ոսկանի գրի նախ՝ Ալօսիան ապա՝ Ալօսխան, զոր չեղև մեզ հնար ստուգել ։

21. Տէր Սարգիս հանգեաւ առ Քրիստոս յամի 1018. և Պետրոս գետադարձ նմին յաջորդեաց ։

22. Վասիլ Բ. Թագաւորեաց ամս 49 ։

23. Յայս անուն կոչի ի Հայոց մին ի Համաստեղութեանց ։

24. Ընդ մէջ Սմբատայ և Հ. Մ. Չամչեան վասն մահուան Աշոտոյ Դ. գոյ տարբերութիւն երից ամաց ։

25. Ցաւ է ինձ լսել ի բերանոյ ազգային պատմագրի զբարոյական անկումն մերոյ ազգի յետ մահուան Աշոտոյ Դ ։ Եւ արդարև ոչ ինչ պակասէր Հայոց ի ժամանակին յայնմիկ առ պահպանութիւն ազգային ինքնիշխանութեան իւրեանց եւ փառաց, բայց եթէ ոգի հայրենասիրութեան և ազատութեան. զոր իբրև տարագրեցին յանձանց՝ տարագրեցան եւ ինքեանք ի հայրենի աշխարհէ իւրեանց և անկան ի ծառայութիւն անարգ՝ թողլով մեզ իբրև ժառանգութիւն զհանապազորդեան հառաչանս եւ թախծութիւն սրտամաշ ։

26. Թուի լինել աղաւաղութիւն Աբու-Սէֆէր կամ Աբու-Ջէֆէր անուան ։ Դարձեալ՝ յօրին. Պ. Ոսկանի « զմեծ մասն ». ի մերն « զմեծամեծսն » ։

27. Չիք ամենևին տարակոյս թէ՝ Սմբատ շփոթէ ստանօր զՀրազդան ընդ Ախուրեան գետոյ ։ Որ ոք գիտէ զտեղագրութիւն Հայաստանի, գիտէ նա հաւաստեաւ թէ Բջնի ոչ է առ Ախուրեան գե-

տով. այլ առ Հրազդանաւ, որպէս և բազում անգամ տեսանել դէպ եղեւ ինձ անձամբ գլխշեալ գետն Բջնեաւ հանդերձ ։

28. Ցօրինակին Պ. Ոսկանի « եւ կրսեր որդւոյն՝ Իշխանն տղայ էր տարօք ». ի մերն « և կրսեր որդւոյն՝ Իշխանիկն, տղայ էր տարօք »։

29. Ցօրինակին Պ. Ոսկանի « տայր նմա հազար դեկան ». ի մերն « տայր նմա հազար դահեկան »։

30. Հ. Մ. Չամչեան ի պատմ. Հայոց. հատ. Բ. երես 938. գրէ զայս անուն Տեղխարխ և Տեղարխի ։

31. Ցօրինակին Պ. Ոսկանի « հարիւր վեց բեռն եզանց ելանէր ի տանէն ». ի մերն « հարիւր վեցկի եզանց ելանէր ի տանէն »։ Գութան եւ վեցկի՝ կրկին գործիք արօրադրելոյ զերկիր, այսու տարբերին ի միմեանց. զի առաջինն ձգի յեօթն լուծ եզանց կամ գոմշոյ. երկրորդն՝ յերից լծոյ, ուստի վեցկին նշանակէ որպէս թէ վեցեկի ։

32. Զկնի Կոստանդին Մոնոմախի ոչ քենեկալն իւր՝ կիր Թէոդոն թագաւորեաց. այլ քենին իւր՝ թագուհին Թէոդորա ։

33. Պետրոս գետադարձ կալաւ զաթոռ կաթողիկոսութեան Հայոց՝ որպէս յայտ է, ամս իբր քառասուն ։

34. Հ. Մ. Չամչ. ի պատմ. Հայոց. հատ. Բ. եր. 965. կոչէ զսա Դինար ։

35. Օրինակն Պ. Ոսկանի ունէր « եւ առէ ցթագաւորն ». ի մերն « եւ առէ թագաւորն » այս ինքն Գագիկ ցՏուկին ։

36. Բուն անուն նորա էր Նիկեփոռ Գ. (յաղթակիր) որյետ առաջնորդելոյ ժամանակս ինչ ասիական զօրուն առ կայսրութեամբն Միքայէլի Է. խորհեցաւ թագաւորել. և օգնականութեամբ Սալջուկեանց տիրեալ Կոստանդնուպոլսի՝ թագ կապեաց անձին յամին 1078. և թագաւորեաց ցամն 1081. յորում ստիպեցաւ հրաժարիլ թողլով զաթոռ յունական պետութեանն Աղեքսի Կոմնենի. եւ մեռաւ յետ սակաւ աւուրց ի մենաստանի ։

37. Ի բնագրին Ըռօբինի ։

38. Մաժառոստանն թերևս է անճոռնի տառադարձութիւն լատին բառիս Մայեօր դոմ ։

39. Պ. Ոսկան ընթեռնու « Ապլաթայն ». մեր օրինակքն ունէին « Ապլասթայն » որ է այժմեան Էլպիստանն ։

40. Թուի լինել Բազտին՝ կամ Եդեսիոյ, որ ձեռնտուութեամբ Թորոսի ա՛ռ նենգութեամբ յիշխանայն Հայոց՝ ի Վասլէ, յԱպլխարիպայ, ի Լիկոսէ և ի Կոստանդեայ, զգաւառսն իւրեանց ։

41. Խազի կամ Էլ Խազի ոչ էր ամիրայ Պարսից. այլ մի ոմն ի զօրավարաց Մէլիք Շահի՝ արքային Պարսից. և թիւ զօրաց նորա ոչ հասանէր ի հարիւր յիսուն հազար. այլ առ առաւելն՝ յերեսուն հազար ։ Տե՛ս նաև եւ ի պատմ. Հայոց. հատ. 3. եր. 43. ի Հ. Մ. Զամչ ։

42. Ոչ առ Լևոնիւ առաջնով և ոչ յապայն մօրին երբէք զօրք Հայոց յերկիրն Միրայ կամ Եգիպտոսի ։ Լևոն առաջին յետ կալոյ ի բանտի ուր արկան նեն‐

գութեամբ Բօղուէն՝ (զոր Հ. Մ. Չամչ. կոչէ Պեղեւին) կոմսին Անտիոքայ, եւ նմա փրկանս անձին իւրոյ զքաղաքսն Մսիս, Ատանա, Սարվանդի քարն եւ դահեկանս 60,000. եւ ազատեցաւ. որ եւ իսկ եւ իսկ յետ ելանելոյ ի բանտէն՝ ժողովեաց զզօրս իւր և սաստիկ ասպատակաւ ոչ միայն աւերեաց և ա՛ռ վերստին զՄսիս, զոր համարիմ Սմբատայ կամ օրինակողաց նորին չփոթեալ ընդ Մսր. այլ եւ զբուն երկիրն Անտիոքայ ։

43. Որ է Յովհաննէս Կոմնեն Պորփիւռօժենետ (ծիրանածին), զոր մերայինքն անճոռնի տառադարձութեամբ Պերփեռուժեն գրել սովորեցան ։

44. Նուիրակ կամ պատգամաւոր պապին ։

45. Այն է կիր Մանուէլ՝ կայսր Յունաց, որ ցանկացաւ միաբանութիւն եկեղեցւոյ առնել ընդ Հայս և ընդ Հոռոմս ։

46. Սպանիչն Ստեփաննեայ համարի հասարակօրէն Անդրոնիկոս Եւփորբէն, որ պահապան էր փոքրիկ թերդի ինչ ի սահմանս Մարաշի ։

47. Կիւրոս (Cyrrhus) կոչէր երևելի քաղաքն. կանգնեալ առ Որոնտ գետով. որ եւ համարեալ էր մայրաքաղաք Կիւրեստիք (Cyrrhestique)՝ հիւսիսային գաւառին հնոյն Սիւրիոյ կամ Ասորւոց ։

48. Պայլ Թուի ելեալ ի bajulus լատին բառէ ։ Առ ժամանակօք Ռուբենեան պետութեանն դեսպանք Վենետկոյ կոչէին բայլ կամ baïle : Առ Հայս Կիլիկիոյ բայլ կամ պայլ նշանակէր խնամակալ կամ հոգաբարձու ։

49. Թուի թէ Թորոսն եղեալ է աստանօր ի տեղի Թովմասու. վասն զի սակաւ մի ի վերոյ գրէ Սմբատ թէ՝ Թովմաս մեռաւ. եւ ապա թէ՝ Թովմաս կարգեցաւ պայլ. որ եւ ոչ տիրեաց աւելի քան տարի մի։

50. Զամբռ, ուղիղ եւս շամբռ՝ է բառ գաղղիական. եւ նշանակէ սենեակ։ Այս բառ երեւի նշանակել մթերանոց կամ գանձարան։

51. Յօրին. Պ. Ոսկանի « վասն քաջութեան ոմանց ». ի մերն « վասն քսութեան ». որպէս եւ իմաստն պահանջէ։

52. Բրինձն (prince) է բառ գաղղիական. և նշանակէ իշխան, թագաւոր։

53. Հ. Մ. Չամչեան ի պատմ. Հայոց. հատ. 3. եր. 152. համարի զՌոստոմ որդի Խլիճ-Ասլանի Սալջուկեան՝ սուլթանին Իկոնիոյ։ Սակայն, որպէս յայտ է, Սալջուկեանք ի Թուրքաց ազգէ էին եւ ոչ ի Թուրքմանաց։

54. Երուսաղէմ առաւ ի Սալահադնայ, ոչ ըստ ասելոյ Սմբատայ ի ՈԼԸ ամին Հայոց. այլ ի ՈԼԶ։

55. Գոնդ կամ կոնթ փոխառեալ է ի գաղղիական լեզուէ՝ առ որս գրի comte. եւ առ մեզ կոմս թարգմանեալ է ի Նախնեաց. իսկ Հերի, որպէս ունէին երկոքին օրինակք մեր, է աղաւաղութիւն Հենրի անուան. որ տրդարեւ ի ժամանակին յայնմիկ տեղապահութեամբ ունէր զարքայական աթոռն Երուսաղէմի, և կոչիւր Henri de Champagne.

56. Այն է Ռէմոնդ՝ (*Raimond III*) անդրանիկ

որդի Բոհէմոնդի, (Bohémond) գաղղիացի իշխանին Անտիոքայ ։

57. Այս ինքն է արքեպիսկոպոս․ ոչ գաղղիա-բանութիւն է, ոչ անգղիաբանութիւն. Վասնզի ըստ առաջնոյն կոչելի էր՝ արշեվէք, ըստ երկրորդին՝ արչբիշոփ ։

58. Օնբրուէին որոյ ուղղականն լինի օնբրուէ է աղաւաղութիւն իմպերատոր լատին բառի․ յորմէ Գաղղիացիք արարին ամփրէօր, և Սմբատ՝ օնբրաւ ։

59. Գոյ առ Գաղղիացիս Արագօ անուամբ գեր-դաստան յորմէ իջանէր հռչակաւոր գիտնականն Դոմինիկ-Ֆրանսուա որ մեռաւ յաւուրս մեր ։ Մին ի գաւառաց Իսպանիոյ կոչէր Արագոն, որ յամի Տեառն 1034․ եղև զատ թագաւորութիւն ։

60. Է կրճատութիւն Հենրի կամ Հենրիկոս ան-ուան, որպէս ասացաք այլուր ։

61. Թուի լինել կրճատութիւն Տանգրեդի յոր անուն կոչէր թոռն Ռոբերտի Գիսկարդայ և ազգա-կան Բոհեմոնդի, և էր իշխան Սիկիլիոյ ։ Որոյ ածեալ զՆորմանդ Խաչակիրս յերկիրն սուրբ՝ եհար զՅոյնս ի սահմանս Վարդարայ և արար մեծամեծ քաջագոր-ծութիւնս յառման Նիկիոյ և Տարսոնի. ժառանգեաց զաթոռ իշխանութեան Գալիլիոյ և Տիբերեադայ. և հոգաբարձու կացուցաւ Եդեսիոյ և Անտիոքայ, ուր և մեռաւ ։

62. Բազում են այսու անուամբ տոհմք առ Գաղ-ղիացիս իջեալ ի կարի հին ժամանակաց, առ որս դրի Jouffroy.

63. Անուն յոյժ հասարակեալ առ Եւրոպացիս միջին դարու ։ Գոտանին եւ Ռոբերտ անուամբ իշխանք որ ի ժամանակի Խաչակրաց երեւելի հանդիսացան յարեւելս, որպէս Ռոբերտ Ա. մականուանեալն magnifique կամ le diable, դուքս Նորմանդիոյ. Ռոբերտ Բ. courte-Heuse (կարճոտն), արխացեալ յառման Երուսաղէմի. Ռոբերտ Գիսկարդ կամ Վիսկարդ. եւ Ռոբերտ Ա. դ' Արտուայ որ սպանաւ յԵգիպտոս յամի Տեառն 1250 ։

64. Ստուգաբանութիւն անուանցս թուի մեծաւ մասամբ գաղղիական, մանաւանդ Լբրիւնի (Lebrun), զոր Սմբատ գրէ պրունն (թխագոյն). Կիլօմ դը Լիլ էր ի Լիլ քաղաքէ Գաղղիոյ ։ Ասի թէ ազգայինք սորա հայացեալ՝ կան, մնան ցայսօր ժամանակի ի Կիլիկիա ։

65. Անպատեհ գործք Յովհաննիսի կաթողիկոսի, զորոյ պատմէ Սմբատ իբրեւ ականատես, անյիշատակ մնան ի պատմ. Հայոց արարեալ ի Հ. Մ. Չամչ ։

66. ԶԿոստանդնուպօլիս ոչ դուքսն Վենետկայ ա՛ռ. այլ կոմսն Ֆլանդրի Բօղուէն Թ. որ եւ կացուցաւ առաջին լատին կայսր յամի Տեառն 1204. որում հասարակապետութիւնն Վենետկի ձեռնտու եղեւ նաւուք ։

67. Գութն թուի ի կիր ածեալ Սմբատայ փոխանակ կոմսի ։

68. Հարստութիւնն Իկոնիոյ կոչի ի մերոց Սալչուկեան ։ Թօղրուլ-Բէկ՝ թոռն Սելճուկի, եդ հիմն իշխանութեանս ի սկզբան մետասաներորդ դարուն ։ Ալփ-Արսլան եւ Մէլիք-Շահ յոյժ ընդարձակեցին

զայն ։ Ապա բաժանեալ յիշխանութիւնս Իկոնիոյ, Հալէպի, Դամասկոսի, Անտիոքայ և Մօսուլի, բար֊ձաւ ի միջոյ յերեքտասաներորդ դարուն ։

69. Ուղղագոյն ևս՝ Ազզ-էդ-դին-Քէյքավուզ, զոր յոյն մատենագիրք կոչեն Քայ Խոսրով կամ Ծահ Խոսրոֆ ։

70. Համեմատեալ զոր ինչ գրէ Սմբատ ընդ պատմութեան Հայոց. հատ. 3. եր. 173. արարեալ Հ. Մ. Չամչեան ի մասին պատերազմին Ազզ-էդ-դին-Քէյքավուզի ընդ Լևոնի Բ. մերս արքայի, գտանեմք ծանր ծանր տարաձայնութիւնս ։ Սմբատ ասէ թէ՝ Լևոն ի պատճառս յաւագարութեան և ծերութեան արգելեալ յանկողնի՝ Կոստանդին սպարապետն և Ատան բայլն մղեցին զպատերազմն զայն, յորում առաջինն սաստկապէս իղխմի հարեալ թշնամեաց՝ վտանգեցաւ եւ ի գերութիւն վարեցաւ հանդերձ այլովք. իսկ Ատանն առ նախանձու կամ առ երկիւղի չեղև բնաւ միջամուխ յայն մարտ. եւ ապա յաւելու թէ՝ Լևոն Բ. ազատեաց զիշխանս իւր յետ կալոյ նոյա ի գերութեան ամիս վեշտասան. իսկ Հ. Մ. Չամչեան գրէ թէ՝ մինչդեռ սուլտանն Իկոնիոյ պատ֊աղեալ էր պաշարմամբն Կապանի՝ Լևոն Բ. արշա֊ւեաց ընդ այլ ճանապարհ յերկիր նորա. և արար սաս֊տիկ կոտորածս և քանդմունս, զորս իբրև լուաւ սուլ֊թանն՝ եթող զամրոցն, դարձաւ յաշխարհ իւր եւ հաշտութիւն արար ընդ Լևոնի փոխանակելով զգե֊րիսն ։

71. Ելեալ ի hospitalis լատին բառէ՝ նշանակէ հիւ֊րատես ։ Hospitaliers անուամբ գոյին առ ժամանակօք

Խաչակրաց այլ և այլ կարգք, որոց յանձն էր խնամ տանել քրիստոնեայ ուխտաւորաց, դարմանել զխօթս եւ զանցաւորս ։ Ի զինուորական կարգաց սատ զոմանս երբեր Լևոն յերկիր իւր տալով նոցա տեղի բնակութեան ։ Ջտաճարական (Templier) ասա-ցեալն կանուխ հալածեալ յերկրէն իւրմէ յաղագս ինչ ինչ նենգութեանց նոցա. և գրաւեալ յարքունիս զԿապտօն բերդ նոցա . իսկ Հիւրատեսք Սելևկիոյ կային, Յնացին բազում ժամանակս ի Կիլիկիայ ։

72. Ֆիլիպ կամ Փիլիպպոս էր որդի Բոհէմոնդայ միականւոյ՝ իշխանին Անտիոքայ ։

73. Պարոն Ռոսկան ընթեռնու ի պայման. մեք եդաք Պէյմուն (որ ըստ Գաղղիացւոց հնչի Բոհէմոնդ), յոր անուն կոչէր իշխանն Անտիոքի՝ հայր Ֆիլիպի ։

74. Տարակուսանօք եդաք փրեր բեր, որ եւ եթէ չիցէ frère père, այս ինքն է վանահայր, թերևս է աղա-ւաղութիւն Փրեր Բերդրանի, որ նշանակէ եղբայր Բերդրան ։

75. Դարձեալ հակասութիւն ընդ Սմբատ և ընդ Հ. Մ. Ջամչեան, յորոց առաջինն դնէ զկնի ամուս-նութեանն զխոյս տալն Թագուհւոյն Զապելի առ գաղղիացի ազգականս իւր ի Սելևկիայ. իսկ երկրոր-դըն նախքան զամուսնութիւնն ։ Պատմ. Հայոց. հատ. 3. երես 194 ։

76. Սմբատ ասէ զանձնէ ծնեալ ի թուին Հայոց ՈԾԲ. և ի ՈՀԴ, յորում լինելոց էր 18 ամաց՝ կոչէ զինքն Գունդստաբլ կամ սպարապետ ։ Եթէ պետու-թիւն Հայոց կարօտանայր յայնմ ժամանակի տասան և

եօթնամեայ սպարապետի, հարկ էր այնմիկ ապաքէն ունիլ զտասնամեայ զինուորս :

77. Միքայէլ Ը. Պալէոլոգ նախ տիրեաց Թագաւորութեանն Նիկիոյ. ապա ա՛ռ զԿոստանդնուպօլիս յամի Տեառն 1261 հալածեալ անտի զԼատինս : Ցեղ նորա տեւեաց մինչ ցկէսն հնգետասաներորդ դարուն . և բարձաւ ի Թուրքաց :

78. Թուի լինել Ջեբայլ կամ Ջիբիլ՝ հին Բիբլոս քաղաքն Սիւրիոյ առ եզերբ Միջերկրականին :

79. Աստանօր Պարոն Ոսկան յաւելու շարունակութիւն յայլմէ : Մեք եդաք ըստ մերոյ օրինակաց :

80. Մին յօրինակաց մերոց ունէր « սրուն գործոյ » :

81. Մին յօրինակաց մերոց ունէր « հռոմայեցին » :

82. Մարաջախտ՝ ուղղագոյն ևս մարաջաղ կամ մարաջախ, ելեալ յերկուց կեղտական բառից՝ ի marc-ձի եւ ի cal-կալ ի վերայ : Առ հինս մարաջաղ նշանակէր պայտառ, առ յետինս՝ սպարապետ : Գաղղիացիք գրեն և հնչեն այժմ maréchal, զոր ըստ կանոնաց լեզուի մերոյ թարգմանելի է սպարապետ կամ մարեջաղ. այլ ոչ մարաջախտ :

83. Մին յօրինակաց մերոց ունէր Ռոէ Ռուբերտ, միւսն՝ Ռոէ Ռօբերտ, որում զհետ գնացաք իբրև ուղղագունի, որ թուի լինել roi Robert, արքայ Սիկիլիոյ, զորոյ էառ Լևոն Ե. զդուստրն կնութեան :

84. Ղալէբն կամ գալէր, այս ինքն՝ թեթեւընթաց նաւ :

85. Թուի լինել պալլիումն Հռոմէական եկեղեցւոյ :

86. Որպէս թէ royaume de Cyrius կամ որ նոյն է՝ պետութիւն Կիւրոսի ։

87. Այս ինքն է Ասորիք կամ Սիւրիա, խորին Ասորիք ի մերոց կոչեցեալ ։

88. Երեւի թէ կրկտին Մոսկվայի ի բաց բարձեալ է ի Սմբատայ ի լոյս ընծայելոյ ի պարոն Ոսկանէ զամբողջ յօդուածս « որում ետ Տէր զփականս արքայութեան երկնից . եւ իշխանութիւն մեծ . եւ վերադոյն կարգեաց քան զամենայն Առաքեալսն թէ « զոր կապես յերկրի . եղիցի կապեալ յերկինս , և զոր արձակես՝ (եղիցի) արձակեալ յերկինս » ։ Ազատ գոլով մեր ի կտտանաց կրկտխսաց՝ անթլպատ պահեցաք զայն յօդուած , եւ հաւատարմութեամբ եդաք զոր ինչ էրն ի մեր օրինակս ։ Հայաստանեայց եկեղեցին չերկնչի յայսպիսի անճոռնի տրամաբանութեանց կէսկէս պատմագրի ուրուք , որ առանց ի միտ առնլոյ զբուն իմաստ բանից Աւետարանին՝ տայ սրբոյն Պետրոսի եւ յաջորդաց նորին « զիշխանութիւն մեծ » . եւ կոյր զկուրայն հետեւելով կարծեաց ոմանց՝ ընծայէ սրբոյն Պետրոսի անհատաբար զոր ինչ յարբառեցաւ Տէրն հաւասարապէս առ ամենայն Աշակերտս իւր « զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս » ։ Ամենայն բարեմիտ ոք յետ բաղդատելոյ զՄատթէոսի ԺԶ. 19. ընդ ԺԸ. 18. և ընդ Բ. Կորնթացւ. ԺԱ. 5. կարէ ինքնին տեսանել զճշմարտութիւն վարդապետութեան մերոյ, եւ խորշիլ յանօգուտ խնդրոյ ։

89. Եթէ ըստ Սմբատայ առաջին յաթոռոյ պատ-

րիարքութեան էր Երուսաղէմին, երկրորդն՝ Անտիոքայն, երրորդն՝ Կոստանդնուպօլսին, եւ չորրորդն՝ Աղեքսանդրուն, յո՛ր կարգի ուրեմն էր Հռոմայն ։ Եթէ ի սակս Պօղոսու զնախադահութիւնն տայ Սմբատ Երուսաղէմի՝ չնչին իմն է ապաքէն պատճառաբանութիւնս. զի նա իբրև առաքեալ ոչ էր ի թըւոյ մետասանիցն, և իբրև աւետարանիչ՝ ոչ յԵրուսաղէմ. այլ յԱնտիոք գրեաց զաւետարան իւր ։ Երուսաղէմ է եւ եղիցի առ յաւիտեան նուիրական յաչս իւրաքանչիւր հաւատացելոյ իբրև աթոռ երկնաւոր Թագաւորին, եւ իբրև սուրբ քաղաք, յորում հին և նոր կտակարանացն կատարեցան խորհուրդք. այլ ոչ այսպէս դատեաց առաջին տիեզերական ժողովն Նիկիոյ, որ զպատրիարքութեան իրաւունս չորեցունց եպիսկոպոսացն՝ Հռոմայ, Անտիոքու, Աղեքսանդրու եւ Եփեսոսի ետ միայն. ապա Կոստանդնուպօլսին յետ ժամակաց յաւել զԵրուսաղէմին ։

90. Սուրբն Մատթէոս զաւետարան իւր ոչ յԱնտիոք գրեաց, և ոչ իսկ քարոզեաց անդ իբրև Առաքեալ կամ նստաւ իբրև եպիսկոպոս. այլ աւետարան նորա գրեալ է յԵրուսաղէմ ի լեզու եբրայեցի ։

91. Սխալի Սմբատ կամ չարունակողն իւր յասելն թէ « Հայոց Կաթողիկոսն հրամանաւ սուրբ հայրապետին Հռոմայ Սեղբեստրոսի, և պատրիարքին Կոստանդնուպօլսի Մետրոփանոսի եւ այլ երեք պատրիարքացն կամօք եղաւ ». որ հակառակ գոլով առ հասարակ վաւերական պատմութեանց քրիստոնէից, հակառակ է նա և ժողովական սահմանադրութեանց ազգիս ։ Սուրբն Գրիգոր լուսաւորիչն՝ ինքն և ամե-

նայն որդիք իւր և թոռունք մինչև ցսուրբն Ներսէս, ամենեքին ձեռնադրեցան ի Կեսարիայ. որով եւ ցուցին արդեամբ զաւանդութիւն աթոռոյն Կեսարիոյ եւ զկախումն իւրեանց գէթ լռելեայն զայնմանէ ։ Ապաքէն եթէ սուրբն Գրիգոր կարգեալ էր (որպէս գրէ Սմբատ) հրամանաւ Սեղբեստրոսի եւ Մետրոփանոսի կաթողիկոս, հարկ լինէր, զի ինքն և յաջորդք իւր յեպիսկոպոսաց իւրեանց առնուին զձեռնադրութիւն, որպէս սահմանեցաւն առ սուրբն Ներսիսիւ և անեւաց ցայսվայր յեկեղեցւոջ մերում. սակայն չեղեն այսպիսի ինչ և չտեսան երբէք ։ Ըստ յառաջ բերելոյ Յովհաննու պատմաբան կաթողիկոսի Հայք միաբան ժողովով որոշեցին յառաջին ժողովն Աշտիշատայ զի եպիսկոպոսապետն իւրեանց ձեռնադրեսցի յիւրոց եպիսկոպոսաց և անուանեսցի պատրիարք և կաթողիկոս, որպէս Յոյնք և Լատինք արարեալ էին վասն իւրեանց եպիսկոպոսացն ։ Եւ ընդ տեւչութեամբ նորա կացուցան արքեպիսկոպոսք Վրացն եւ Աղվանից եւ այլ մետրապօլիտք ։ Հ. Մ. Չամչեան որ թարթափի գտանել ամենայն ուրեք զանուն պապից՝ կեղծէ այլ իմն առասպել. ըստ որոյ Հայք վասն այնր կացուցին զսուրբն Ներսէս պատրիարք, վասն զի գիտէին թէ՝ սուրբն Գրիգոր առեալ էր ի Սեղբեստրոսէ զիշխանութիւն պատրիարքութեան ։

92. Ոչին թագաւորեաց ոչ աւելի քան զերկոտասան ամս և զվեց ամիս ։



Հետևեալ նամակս, որ պակասէր յօրինակին Պ. Ոսկանի, գտաւ յերկոսին օրինակս մեր, զոր և եդաք ի վերջէ ծանօթութեանցս ի տեղեկութիւն բանասիրաց ։

Առ Տէր Գրիգոր՝ այրն Աստուծոյ, եպիսկոպոսն Անաւարզայ, գրեցաւ նամակս հոգելից առ ի յՕշնէ՟ Տեառն Կանչոյ ։

Պարծանք իմ ի Քրիստոս՝ յուսոյ տեղի հոգւոյս
[Նուաստ,
Գլուխ պատկառելի փոխան զխոյն տուեալ մեզ աստ.
Պետ վսեմական ի տանն Տեառն ամենիմաստ.
Հովիւ բանականացս առնող հոգւոյ գայլոյն սաստ.
Տնտես հաւատարիմ պատուիրանացն կալ զգաստ,
Ի վերայ կալ ծառայից. սովեալ հոգւոյ լինել նպաստ.
Զխոցոտեալսն որ ի դիւաց՝ բառնալ յուսիդ իբր
[զգըրաստ.
Ի պանդոկ եկեղեցւոյ տալ սպեղանի զբանն պատ-
[րաստ.
Հովուին ամենեցուն դու դաւաղան երկաթի հաստ.
Իբրև զանօթ բրուտի փշրել զապստամբեալսն որ զան
[ի դաստ.
Աստ խրատել իմաստութեամբ, եւ ի չարէն ապահել
[ուրաստ.
Մինչ ի վերին ածել Սիոն եւ ի յերկնից մեծն առա-
[գաստ ։

Այսպիսի հռչակաւորանց աստուածազգեաց հայրա֊
[պետիդ՝

Սրբոյ լուսաւորչին պատշաճաւոր երէց որդիդ՝
Նախ զգործն առբերելով՝ եւ ապա զանուն հայրա֊
[պետիդ.

Տեառն Գրիգորի Անաւարզայ դիտապետիդ՝
ՅՕշնէ հնազանդ որդւոյ ընկալ զողջոյն իմ ընդ նա֊
[մակիդ

Եւ համբոյր տիրաշօշափ և շնորհաբաշխ սրբոյ աջոյդ.
Մանաւանդ բուռն հարեալ զերկնագնաց դարշա֊
[պարիդ,

Յերկիր խոնարհելով իբր Աստուծոյ իւր հրեշտակիդ.
Եւ մաղթեմ միշտ պահողին կալ ըստ կամաց բա֊
[րեսրտիդ՝

Արտաքոյ կալ փորձութեան պարառողիդ,
Քննել զորպիսութիւն քոյոյ հօտիս հովուապետիդ.
Ես պահեալ կամ Արարչին սուրբ աղօթիւք բարե֊
[կամիդ

Արտաքոյ պատահարաց որ ի բերման ժամանակիս.
Բայց եւ ես միշտ խնդրէի զորպիսութիւն կենաց
[վեհիդ,

Մարմնոյդ հարցանելով. ոչ երկնային մաքուր հոգւոյդ
Զի չէ՛ փոյթ հոգալոյ զհրեշտակաց գերազանցիդ.
Այլ զմարմնոյդ առողջութեան զի է ճնշեալ պահե֊
[ցողիդ.

Յաղօթից եւ ի պահոց, ի հսկելոյ ճգնաւորիդ՝

Երկնչիմ գուցէ լինել տկար զձեզ զառաքինիդ .
Զոր յոյս իմ ի Քրիստոս ի գլուխն քոյ սուրբ անդամիդ՝
Անփորձ և անտրտում զմեզ պահել զիւր արժանիդ.
Մի՛ կալ ընդ գրուանաւ տկարութեան լուսոյ ջահիդ.
Այլ յաշտանակ փառաց դնիլ տալով մեզ լոյս պայծառ արփիդ ։
Արդ մաղթեմ աղերսանօք զիմ առ Քրիստոս բարեխօսիդ,
Առնել զիս արժանի քոյին սրբոյ աջոյ գծիդ .
Եւ յանձնեմ զիս պահելոյ բազկատարած սուրբ աղօթիցդ ։

Մատանի յուղարկեաց Տէր Գրիգորի ի հետ թղթին . և գրեաց այսպէս ։

Մատանիս այս շնորհաւոր ձեզ ի հրաւէր հասցէ ի Տէր .
Ի գուշակ այս պետութեան լինել Հայոց հովիւ եւ Տէր ։
Ոսկիդ որ ման առեալ զժողովուրդ քոյ ցուցանէր,
Եւ ակնդ պատուական զմաքրութիւնդ արտայայտէր ։



Զտարեգիրս Սմբատայ տպագրեալ յամի 1856 ի Մոսկվա, ի տպարանի Վօլդէմարայ Գօթիէ, ի ձեռն Պարոն Ոսկանի Գէորգեան Յովհաննիսեանց Երեւանցւոյ, համեմատեալ ընդ մեր օրինակաց՝ դնեմք զտարբերութիւնսն ի ներքոյ ։

| երես | տող | |
|---|---|---|
| 1. | 2. | « Ռամանոս ». ի մերն « Ռոմանոս »։ |
| 2. | 12. | « Փիլիպէ ». ի մերն « Փիլիպպէ »։ |
| 3. | 14. | « Ազատեցին զգաւառն զայն ». ի մերն « Ազատեցաւ գաւառն այն »։ |
| 4. | 11. | « Հարցանէր պատճառս ». ի մերն « Հարցանէր զպատճառ »։ |
| 5. | 4. | « Դարձան յիւրաքանչիւր տեղիս ». ի մերն « Դարձան իւրաքանչիւր ի տեղի իւր »։ |
| » | 6. | « Թուրն Հայոց ». ի մերն « Ի Թուականին Հայոց » գրեթէ ամենայն ուրեք ուր ի մերն գրի « Թուական » է տպեալն դնի Թիւ ։ |
| » | 17. | « Զարարուեստ կինն ». ի մերն « Կինն չարարուեստ »։ |

երես տող

6. 10. « Ուղես ». ի մերն « Յուղես »։

7. 1. Պակասի ի տպ. « Հայոց » Նի։

» » « Յովհաննիսի և Աշոտոյ ». ի մերն « Յովհաննիսի և Աշոտոյ »։

» 7. Տպեալն յաւելու « էր »։

8. 6. Տպեալն յաւելու « այրն »։

9. 14. « Ցերկեղէ ». ի մերն « Ցերկիւղէ »։

10. 3. « Խապրբեր է ». ի մերն « Խաբարբեր է »։

» 14. « Մեհրան ». ի մերն « Միհրան »։

» 16. « Ի գեղ մի ». ի մերն « Ի գեօղ մի »։

11. 1. « Արաբին զարմանալի կոտորուածս ». ի մերն « Զարմանալի կոտորածս առնէին »։

» 3. « Ահաւոր սև խափշիկ ». ի մերն « Ահաւոր և խափշիկ »։

» 5. « Ուղէր զՎասակ ». ի մերն « Յուղէր զՎասակ »։

Պակասի ի տպեալն « եւ խափշիկն գայր »։

» 7. « Որ յերկուս ». ի մերն « Եւ յերկուս »։

» 22. « Նեղելով ». ի մերն « Նեղեալ »։

13. 9. « Կահն և կարասի » ի մերն « Զրահն և կարասի »։

» 9. « Բնակեցաւ ի Կիլիկայս ». ի մերն « Բանակեցաւ ի Կիլիկիայս »։

երես տող

13. 18. « Որոյ Թիւ » . ի մերն « Որոց Թիւ » ։

14. 2. « Երկուց Թագաւորացն » . ի մերն « Երկուս Թագաւորսն » ։

» 3. « Կիլիկոյ » . ի մերն « Կիլիկիոյ » ։

15. 5. « Կինն այլ » . ի մերն « Կինն եւս » ։

» 7. « Եւ գնաց զներքին կողմամբ երկրի ։ Գնաց յԵրուսաղէմ » . ի մերն « Եւ գնաց զներքին կողմամբ երկրին յԵրուսաղէմ » ։

» 9. « Ազատեաց զամենայն քրիստոնեայքն » . ի մերն « Ազատեաց զամենայն քրիստոնեայսն » ։

» 13. « Շատ գանձս՝ ոսկի եւ արծաթ » . ի մերն « Շատ գանձ՝ ոսկի, արծաթ » ։

16. 22. « Զաւետիքն ընկալաւ ի հրեշտակէն » . ի մերն « Ընկալաւ զաւետիսն ի հրեշտակէն » ։

» 24. « Երկիր պագաք » . ի մերն « Երկրպագեցաք » ։

17. 10. « Զպատկերսն Քրիստոսի զոր յետ ժամանակի Հրէայքն խաչեցին » . ի մերն « Զպատկերն Քրիստոսի զոր յետ ժամանակաց Հրէայքն խաչեցին » ։

» 20. « Գոհութիւն տայցուք Աստուծոյ մերոյ » . ի մերն « Գոհութիւն տայցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ » ։

երես տող

17. 21. « Գրեալ ». ի մերն « Եղեալ »:

19. 1. « Զեզ նշան ». ի մերն « Նշան »:

» 7. « Ի սահմանքն ». ի մերն « Ի սահմանսն »:

» 8. « Վանորեայքն ». ի մերն « Վանորայք »:

» 19. « Կամ », ի մերն « Սար կամ »: Այս ինքն պատրաստ կամ:

» 21. « Շտապելով ». ի մերն « Վազուելով »:

20. 8. « Վարէր ի հետ զԱմիրայն մինչ ի դուռն քաղաքին ». ի մերն « Վարէր ի հետ, մինչ մտոյց զամենայն ի դուռն քաղաքին »:

» 9. « Պողպատ կոշն ». ի մերն « Պողպատ ճկոշն »:

» 12. « Երեր զԹագն ի տեղի իւր ». ի մերն « Երեր զԹագաւորն ի տեղի իւր »:

» 22. « Մոտեալ ». ի մերն « Գրգեալ »:

21. 8. « Հրամանաւ Թագաւորայն ». ի մերն « Հրամանաւ սուրբ Թագաւորայն »:

» 9. « Մամլուն ». ի մերն « Մաքլյան »:

» 12. « Կուրապաղատին ». ի մերն « Կիւրապաղատին »:

22. 5. « Ամենայն ինչ ». ի մերն « Ամենայն »:

» 8. « Փախեան ». ի մերն « Դարձան »:

24. 21. « Առ հայրապետութեան իւրեանց ». ի

երես   տող

մերն « Առ հպարտութեան իւրեանց »:

24.  25. « Յաղօթարանան ». ի մերն « Յաղօթարարան »:

25.  10. « Յուսէփ ». ի մերն « Յովսէփ »:

»  11. « Բայց նոքա ». ի մերն « Եւ նոքա »:

»  12. « Անդ գնալ ». ի մերն « Գնալ անդ »:

»  13. « Կլերիկոսքն ». ի մերն « Կղերիկոսքն »:

26.  1. « Եւ ըրցուցին ». ի մերն « Եւ ցուցին »:

»  3. « Ի գիտութիւն ». ի մերն « Ի գիտութիւնս »:

29.  10. « Ջնոսա ». ի մերն « Ջնա »:

»  14. « Ջառաջնորդան ». ի մերն « Ջառաջնորդն »:

»  25. « Պաղակծիակ ». ի մերն « Պաղակծիակ »:

30.  17. « Մինչ գնայր ». ի մերն « Գնայր »:

31.  1. « Վրայ թագաւորին ». ի մերն « Թագաւորին Վրայ »:

»  2. « Բերդին ». ի մերն « Մեծ բերդին »:

»  4. « Պանտանդ ». ի մերն « Պատանդ »:

»  6. « Բնակէր ». ի մերն « Բանակէր »:

»  8. « Թէ ինչ էին ». ի մերն « Ինչ առնէին »:

32.  3. « Յիտուն և ութ ». ի մերն « Քառասուն և ութ »:

երես տող
32. 24. « Ամենեքեան ». ի մերն « Ոմանք »:
33. 19. « Որոց մինն սպան զմիւսն ». ի մերն « Յորոց սպան մին զմիւսն »:
» 20. « Տեղւայ ». ի մերն « Տեղեայ »:
34. 10. « Յորենն ». ի մերն « Յորեանն »:
» 11. « Ի տագնապ էր ». ի մերն « Ի տագնապի էր ».
» 17. « Կուրապաղատին ». ի մերն « Կիւրապաղատին »:
» 22. « ԶՄիխայլն ». ի մերն « ԶՄիխայէլն »:
35. 23. « Ծռռումն ». ի մերն « Ծուռ »:
36. 2. « Գայլայեալ հովուաց ». ի մերն « Ի գայլայեալ հովուաց »:
» 15. « Յերեկոյն ». ի մերն « Յերեկոյին »:
37. 7. « Աշարտեցին ». ի մերն « Ատեցին »:
» 16. « Անհողինին ». ի մերն « Անհողին »:
» 18. « Զմեծ մասն ». ի մերն « Զմեծամեծսն »:
» 22. « Խաւար ածեմ ազգիդ ». ի մերն « Խաւար ածեմ ի վերայ ազգիդ »:
39. 1. « Հաւանութիւն առնէր ». ի մերն « Դաւաճանութիւն առնէր »:
» 4. « Յղարկեց ». ի մերն « Յղեց »:
» 16. « Զչարախօսքն ». ի մերն « Զչարախօսսն »:

Երես տող

40. 6. «Նմա». ի մերն «Նոյա» այս բնքն
Վեստ Սարգսի և Անհողին Դաւթի։

41. 21. «Ցաղգացն հարաւայնոյ». ի մերն
«Ցազգացն հարաւայնոց»։

42. 2. «Արտաքս ելեալ». ի մերն «Արտաք-
սեալ»։

» 17. Պակասի ի տպ. «զիւրն»։

43. 5. «Եւ կրսեր որդին՝ իշխանն՝ տղայ էր
տարօք». ի մերն «Եւ կրսեր որդին՝
Իշխանիկն տղայ էր տարօք»։

» 16. «Տայր նմա հազար դեկան»։ ի մերն
«Եւ տայ նմա հազար դահեկան»։

44. 19. «Թիկունս յօգնականութիւն». ի մերն
«Թիկունս օգնականութեան»։

47. 1. «Զմեռնեայ». ի մերն «Զմերեայ»։

» 15. «Մեծք չինուածք». ի մերն «Մեծ
չինուածք»։

» 20. «Դիշնա». ի մերն «Դունայ»։

48. 2. «Ի վրան Նոյա». ի մերն «Ի վերայ
Նոյա»։

» 20. «Տէլարխ». ի մերն «Մելարխ»։

49. 6. «Ի մեծ տագնապ ունէր գքաղաքն».
ի մերն «Մեծ տագնապ ունէր
գքաղաքն»։

» 15. «Հանին զաչք Նորա». ի մերն «Հանին
զաչս Նորա»։

երես  տող

49.  20. « Ի տեղ նոյա ». ի մերն « Ի տեղի նոյա »։

50.  6. « Զհետ պնդեալ՝ (մտին) սրով ի քաղաքն ». ի մերն « Զհետ մտան սրով ի քաղաքն »։

»  — « Ի սուր սուսերի մաշեցին զամէնն ». ի մերն « Մաշեցին ի սուր սուսերի զամէնն »։

»  21. « Զհամբաւս զայս ». ի մերն « Զայս համբաւս »։

»  22. « Եդ ». ի մերն « Եդիր »։

»  25. « Զաշխարհքն ». ի մերն « Զքաղաքն »։

51.  6. « Որ չդարտակէին եկեղեցիք Հայոց ». ի մերն « Որ չդատարկէր եկեղեցին Հայոց »։

52.  14. « Երեք անգամ ». ի մերն « Երրորդ անգամ »։

»  15. « Եւ յերեք անգամն ». ի մերն « Եւ յերրորդ անգամն »։

»  18. « Գոչեաց յեկեղեցին ի ձայն մեծ, եւ դղրդեաց քաղաքն ». ի մերն « Գոչեաց եկեղեցին ի ձայն մեծ, եւ դղրդաց քաղաքն »։

53.  12. « Եկն ապա ». ի մերն « Եւ եկն »։

»  16. « Եւ նա գնաց բնակեցաւ ի տեղին՝ որ Քար գլուխ ասի ». ի մերն « Եւ նա

*Երես   տող*

*գնացեալ բանակէր ի տեղին, որ Քարգլուխ ասի »:*

54. 3. « *Երէց մի գտաւ թէզմ՝ ի քաղաքն* ». *ի մերն* « *Երէց մի գտաւ ի քաղաքն* »:

» 5. « *Առաջին.քարն եզարկ զնա ի խողակն* ». *ի մերն* « *Ցառաջին քարն եզարկ զնա ի խողակն* »:

55. 10. « *Ուզէր սպարոն Վասլէն* ». *ի մերն* « *Ուզէր ի սպարոն Վասլէն* »:

» 21. « *Կէր Թօտօռն* ». *ի մերն* « *Կիր Թօտօռն* »:

56. 8. « *Դինար անուն* ». *ի մերն* « *Դինիեար անուն* »:

» 12. « *Իջան* ». *ի մերն* « *Իջին* »:

» 19. « *Համիր յօգն մեզ* ». *ի մերն* « *Համիր յօգնութիւն մեզ* »:

58. 3. « *Բոլորապատեցին* ». *ի մերն* « *Բոլոր պատեցին* »:

» 7. « *Եւ ոչ ոք ողորմէր կամ ծերի խնայէր* ». *ի մերն* « *Եւ ոչ ոք էր որ խնայէր կամ ծերի ողորմէր* »:

» 8. « *Թաթախեալ յարեան ճապաղիս* ». *ի մերն* « *Թաթաւեալ կային յարեան ճապաղիս* »:

» 17. « *Որ ըստ իւրեանց չար եւ անբարի բնութեանն* ». *ի մերն* « *Որ իւրեանց չար և անբարի բնութեամբն* »:

| երես | տող | |
|---|---|---|
| 58. | 21. | « Որպէս բազա զերամն կաքաւաց ». ի մերն « Որպէս բազէ զերամ կաքաւուց »: |
| » | 23. | « Սահմանեցին ի տեղ ». ի մերն « Սահմանեցին ի տեղի »: |
| 59. | 7. | « Զընտանաց ». ի մերն « Զընտանած »: |
| » | 22. | « Զի րեանք ». ի մերն « Զիւրեանս »: |
| » | 25. | « Զայսու ժամանակաւ ». ի մերն « Որ և զայսու ժամանակաւ »: |
| 60. | 19. | « Թըլխմոյ եւ Արկնի ». ի մերն « Կամախոյ և յԱրկնի »: |
| » | 21. | « Արասլան ». ի մերն « Ալպ ասլան. »: |
| 67. | 16. | « Զոր յառաջ էին սարել ». ի մերն « Զոր յառաջ սարել էին »: |
| » | 24. | « Թաղթնել ». ի մերն « Թալանել »: |
| 70. | 5. | « Զգեստ աբեղայի ». ի մերն « Հանդերձ աբեղայի »: |
| » | 7. | « Փորեցին զաչսն ». ի մերն « Փորեցին զաչս նորա »: |
| 71. | 4. | « Զմելեսի ». ի մերն « ԶՄելիտիանոս »: |
| » | 13. | « Անտաքու ». ի մերն « Անտիոքու »: |
| » | 21. | « Այս եղև ». ի մերն « Այսպէս եղև »: |
| 72. | 4. | « Արծխասու ». ի մերն « Արժխասու »: |
| 73. | 23. | « Զօրքն ». ի մերն « Նաև զօրքն »: |
| 74. | 16. | « Մինչև ». ի մերն « Այնչափ »: |
| » | 18. | « Երարձ ». ի մերն « Երեկ »: |

| Երես | տող | |
|---|---|---|
| 75. | 1. | « Ի Թուին ՇՄԷ ». ի մերն « Ի սոյն Թիւ »։ |
| 78. | 1. | « Անդ էր ». ի մերն « Անդ եղաւ »։ |
| » | 10. | « Խաչ-գիւտին ». ի մերն « Գիւտխաչին »։ |
| » | 12. | « Հեծեծային ». ի մերն « Հեծծային »։ |
| » | 15. | « Ռապան ». ի մերն « Ըռաօպան »։ |
| 79. | 14. | « Ընդ իրեար ». ի մերն « Ընդ իրեարս »։ |
| 80. | 10. | « Պետեւին ». ի մերն « Պայմունդն »։ |
| 84. | 3. | « Պսակեայ ընդ դսւստրն ». ի մերն « Պսակեայ ընդ դուստրն իւր »։ |
| 85. | 24. | « Ի գոմչէ ». ի մերն « Ի կումզէ »։ |
| » | » | « Խայտառակ խրատեալ գնոսա ». ի մերն « Խայտառակեալ, քարշեալ զնոսա »։ |
| 86. | 18. | « Տէր էր ». ի մերն « Տիրէր »։ |
| » | 22. | « Ուզէր ». ի մերն « Կուզէր »։ |
| » | 23. | « Ցարոյց ». ի մերն « Ցարեցոյց »։ |
| 87. | 9. | « Իսկ կինն Ստեփանէ ». ի մերն « Իսկ կինն Ստեֆանէի »։ |
| 88. | 12. | « Ի Թուին ՈՅԷ ». ի մերն « Ի Թուականին ՈԺԷ »։ |
| » | 18. | « Ի Թուին ՈՅԸ ». ի մերն « Ի Թուականին ՈԺԸ »։ |
| 90. | 1. | « Ընդ որում ». ի մերն « Ըստ որում »։ |

| երես | տող | |
|---|---|---|
| 90. | 15. | « Ի զինուորութիւն ». ի մերն « Ի զին-ուորութեան »։ |
| 91. | 1. | « Այնոր ». ի մերն « Այնոցիկ »։ |
| » | 10. | « Սղարիւ ». ի մերն « Սղարեաց »։ |
| 92. | 5. | « Վասն քաջութեան ոմանց ». ի մերն « Վասն քսութեան ոմանց »։ |
| 93. | 18. | « Եւ նա զհետ մտեալ ». ի մերն « Որև զհետ մտեալ »։ |
| » | 22. | « Որ և գնացեալ էր որ գողնայր ». ի մերն « Ուր և գնացեալ էր որ գողա-նայր »։ |
| » | 23. | « Էառ գողութեամբ Պարոն Լեւոն զՊռականա. և սպան ի Ներս երկո-տասան մարդ ». ի մերն « Գողա-նայր Պարոն Լևոն զբերդն Պռակա-նայ. եւ սպան ի ներքս զերկերիւր մարդ »։ |
| 95. | 19. | « Վարել զհայրապետութիւնս զէտ ար-ժանն է ». ի մերն « Վարել զհայրա-պետութիւնս որպէս արժանն է »։ |
| 96. | 4. | « Ժամանակ մի ». ի մերն « Առ ժամա-նակ մի »։ |
| 100. | 12. | « Պագըրու ». ի մերն « Պագրսայ »։ |
| » | 13. | « Արևգոյն ». ի մերն « Արագոյն ». որ է անուն գաղղիական։ |
| » | 17. | « Անէոյն ». ի մերն « Աչէոյն »։ |

*երես* *տող*

101. 3. « Ծողականն ». ի մերն « Ծողկան »։
» 9. « Մոլիվոնին ». ի մերն « Մոլէոնին »։
» 12. « Բարուրան ». ի մերն « Պապուռան »։
» 14. « Կոստան ». ի մերն « Կոստանց »։
» 18. « Վեռկիսոյ ». ի մերն « Վօռկիսոյ »։
» » « Խռսաֆ ». ի մերն « Խռաֆ »։
102. 8. « Ըռուճէրտը Մութն ». ի մերն « Ռու֊ ճէր Տմուտն »։
» 10. « Կիլամոլիլն ». ի մերն « Կիլոմ տը Լիլն ». ազնուական գերդաստան Գաղղիացւոյ ։
» 23. « Չչարսն ». ի մերն « Չչարիսն »։
103. 14. « Լամրուն ». ի մերն « Լամբրոն »։
» 16. « Ծատ գեղերք ». ի մերն « Ծատ գեղեր »։
104. 24. « Ջուլածոյտն ». ի մերն « Ջուլածոյն ». այս ինքն է ձուլածոյ ։
105. 5. « Ոսկւով, և մարգարտով և ակամբք ». ի մերն « Ոսկւով եւ արծաթով եւ մարգարտով և ակամբք »։
106. 5. « Տուկն Վենտիկայ Գութն եւ Ֆլանտ֊ րըն ». ի մերն « Տուքն Վենետ֊ կայ Գութն և Ֆլանդրն »։
107. 12. « Ծոշականն ». ի մերն « Ծողականն »։
108. 4. « Ծոշակն ». ի մերն « Ծողակն »։

Երես  տող

108. 7. « Պարոն Ատանիրի ». ի մերն « Պարոն Ատանի ». որ է յատուկ անուն, որպէս գրի ի վերոյ ։

» 8. « Զօգնէր ». ի մերն « Զօգնեաց »։

» 12. « ՁԱսիւ Լօքսենց ». ի մերն « ՁԱգիւ զՕքսենց »։

109. 14. « Թապրոմն ». ի մերն « Թապտրոմն ». այս ինքն է կամաւ եւ յօժարութեամբ ։

110. 7. « Ի սորա տէրութիւն ». ի մերն « Ի սորա տէրութեան »։

» 8. « Գայր ու առնոյր ». ի մերն « Կուգայր ու կառնոյր »։

» 10. « Խուրազմն ». ի մերն « Խորազմն »։

111. 7. « Յինչ նեղութիւն գտի ». ի մերն « Յինչ նեղութեան գտի »։

» 8. « Յետմնացքն ». ի մերն « Յետամընացքն »։

» 9. « Պարոնադուստրս ». ի մերն « Պարոնի դուստրս »։

» 14. « Բերեն Անտաքոյ բրնձին որդին ». ի մերն « Բերեն պարոն Ալաւգին՝ Անտաքոյ բրինձին որդին »։

112. 17. « Կու ծախվոր էր ». ի մերն « Կու ծախվէր »։

114. 3. « Նա հետ մի ի գալ տարւոյն ». ի մերն « Նա յետ այլ մէկ տարւոյն »։

| երես | տող | |
|---|---|---|
| 114. | 21. | « Լուկ, սասայ ». ի մերն « Լոկ սասայ »։ |
| 115. | 9. | « Եւ եղև ամէն աշխարհ ծով ». ի մերն « Եւ եղև ամէն աշխարհ մէկ ծով »։ |
| » | 10. | « Տասն հազար մարդ ». ի մերն « Հարիւր հազար մարդ »։ |
| 117. | 13. | « Նաւ զԱքքա ». ի մերն « Նաւ զվեց քաղաք »։ |
| 118. | 25. | « Աչքն ետ առնել ». ի մերն « Աչքն խարել »։ |
| 122. | 7. | « Վահրամ Ջօտիկ ». ի մերն « Վահրամ Լօտիկ »։ |
| 125. | 2. | « Վիճակնիս ». ի մերն « Վիճակքս »։ |
| » | 18. | « Պէրութ... Իլիապօլիս՝ որ է Պաղլպաք... Տար Սամօսադա որ է Սամիսոն ». ի մերն « Պերութ՝ ինն, Երապօլիս որ է Պալպաք, Տար, Սամօսատ որ է Ամիսոն »։ |
| 126. | 3. | « Արասուս ». ի մերն « Ջրասուս »։ |
| » | 4. | « Քսան երկու ». ի մերն « Երկոտասան »։ |
| » | 6. | Զերիս տողս կետիւք ընու. մեք եղաք, որպէս եւ էրն ի մերում ձեռագրի, ոչ իբրեւ զվարդապետութիւն եկեղեցւոյ Հայոց. այլ իբրեւ զկարծիս անհատի ուրուք։ |
| 127. | 8. | « Զորս Աղեքսանդրում է ». ի մերն « Զորրորդն Աղեքսանդրուն է »։ |

երես   տող

128. 5. « Այլ Գիտացիք ». ի մերն « Այլ Գի-
տասջիք »։

» 19. « Ուշաք ». ի մերն « Ուզաք »։

» 21. « ՇԽԷ ». ի մերն « ՇԻԷ ». որ է ճիշտ
Թուական գալստեան Ռուբենի ի
Կիլիկիայ ։

» 24. « Պարոն Թորոսի որդին ». ի մերն
« Պարոն Թորոս՝ իր որդին »։

129. 1. « Պարոն Լեւոնի եղբայրն ». ի մերն
« Պարոն Լևոն՝ իր եղբայրն »։

» 2. « Իրեկէ էառ ». ի մերն « Երեկ, էառ »։

» 19. « Ասպարապետքն են Հայոց ». ի մերն
« Սպարապետքն են Հայոց »։

130. 17. « Տիբերիոս ամս տասն երեք ». ի մերն
« Տիբերիոս ամս քսան երեք ». որպէս
եւ է իրօք ։

» 18. « Կղօդէոս ամս ԾԴ ». ի մերն « Կղօ-
դիոս ամս ԺԴ ». որպէս և է իրօք ։

» » « Վեսպիանոս ». ի մերն « Վեսպա-
սիանոս »։

» 19. « Տիտոս ամս Թ ». ի մերն « Տիտոս ամս
երկու ». որպէս և է իրօք ։

» » « Դոմետիանոս ամս Է ». ի մերն « Դո-
մետիանոս ամս տասնև հինգ »։

» 20. « Տրիանոս ». ի մերն « Տրայիանոս »։

» 21. « Կոտոս ». ի մերն « Կոմոդոս ». որպէս
և է իրօք ։

| երես | տող | |
|---|---|---|
| 130. | 23. | « Մակարիոս ». ի մերն « Մակրինոս »: |
| » | » | « Ալեքսիոս ». ի մերն « Աղեքսանդրոս »: |
| 131. | 1. | « Մաքսիմիանոս ». ի մերն « Մաքսիմինոս »: |
| » | » | « Գորգիանոս ». ի մերն « Գորդիանոս ». որպէս և է իրօք : |
| » | 2. | « Գեկոս ամ մի ». ի մերն « Գեկոս ամն Բ »: |
| » | 3. | « Գաղիոս ամն Ը ». ի մերն « Գաղոս ամն Բ »: |
| » | » | « Աւրեղիանոս ամն ԺԳ ». ի մերն « Աւրեղիանոս ամն Ե ». որպէս եւ է իրօք : |
| » | 8. | « Գրատիանոս ամն Ե ». ի մերն « Գրատիանոս ամն ԺԵ », |
| » | 10. | « Անաստաս ամն ԻԵ ». ի մերն « Անաստաս ամն ԻԷ »: |
| » | 11. | « Յուստիանոս ամն ԺԹ ». ի մերն « Յուստինոս ամն Թ »: |
| » | 13. | « Կոստանդին ամն Գ ». ի մերն « Կոստանդին ամիսս 4 »: |
| » | 15. | « Կիկեփոր ». ի մերն « Նիկեֆօր »: |
| » | 21. | « Վասիլ յաղթող ամն ԾԸ ». ի մերն « Վասիլ յաղթող ամն ԽԹ »: |
| » | 25. | « Կոմանոս ». ի մերն « Կոմնենոս »: |

էրես տող

132. 1. « Միխայլն ամս Գ ». ի մերն « Մի-
խայելն ամս Է »:

» 2. « Ալէքսն ամս Լ ». ի մերն « Ալէքս
ամս ԼԶ »:

» 6. « Անդրոնիկէ » կրկին անգամ եղեալ
ի տպ. պակասէր ի մերն :

» 23. « Որ է ջուռն ». ի մերն « Որ է ջառն »:

133. 20. « Ի թուին ՉՀԴ ». ի մերն « Ի թուա-
կանին ՉՀԵ »:

» 21. « Մի կոյր ». ի մերն « Մի կայր »:

134. 2. « Ընդ առաւօտքն ». ի մերն « Ընդ
առաւօտն »:

» 13. « Խայժակն ». ի մերն « Խաժակն »:



# ՎԱՀՐԱՄԱՅ ՐԱԲՈՒՆԻՈՅ

## ՈՏԱՆԱՒՈՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԵՆԵԱՆՑ

*ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք*

*Կարապետ Վարդապետ Շահնազարեանց՝ միաբան սրբոյ Էջմիածնի ։*

*Ի կաթողիկոսութեան ամենայն Հայոց Տեառն եւ Տեառն* ՄԱՏԹԷՈՍԻ Ա·



Ի ԳՈՐԾԱՏԱՆ Կ· Վ· ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ ։

# AVIS

Nous publions l'histoire abrégée de la famille de Roubénian-Lusignan qui régna sur une partie de l'Arménie du XIe jusqu'à la fin du XIVe siècle de notre ère. L'auteur de cette histoire, Vahrame, était vardabète de l'église arménienne, et son immense savoir l'avait fait choisir comme secrétaire intime par Léon III, roi d'Arménie, sur l'ordre duquel il entreprit son esquisse historique en vers qui, commençant au VIIe siècle, finit au XIIIe. J'ai réuni Sembate le connétable et Vahrame vardabète dans un seul volume comme deux historiens contemporains et traitant le même sujet : c'est-à-dire le règne de la dynastie des Rubéniens-Lusignans.

Rue de l'Ouest, 86. G. V. CHAHNAZARIAN.

Paris. — Imprimé par E. THUNOT ET Ce, rue Racine, 26.

# ՎԱՀՐԱՄ ՐԱԲՈՒՆԻ։

Ի վերջէ տարեգրոյն Սմբատայ սպարապետի շարայարեմք զՎահրամայ Րաբունւոյն Սսեցւոյ զոտանաւոր վէպ իբրեւ շարունակութիւն իրայն Ռուբենեան ճոխութեան ։ Սակաւուց ոմանց ծանօթ էր պատմական հիւսուած այսր վարդապետի, եւ ոչ ուրուք ածեալ զմտաւ ցարդ ի մէնջ մուծանել զայն ի տիպ ։ Հրամանաւ Լեւոնի Գ. արքայի Հայոց, սկիզբն առնու Վահրամ ի Մահմետէ եւ թուոցեալ ընդ վէպս Արաբացւոց, Թուրքաց, եւ Բագրատունեաց՝ ճոխագոյնս պատմէ զծագմանէ Ռուբենեանց, զաշխարհակալութենէ նոցա ի Կիլիկիա և զվերականգնելոյն կործանեալ մերոյինս ազգի ինքնիշխանութեան յերկրի անդ, մինչեւ ցնոյն Լեւոն Գ. որոյ եւ եղեւ ատենադպիր ըստ ոմանց ։ Զվէպ իւր աւարտէ գեղեցիկ և բարեպաշտօն խորհրդածութեամբ ի վերայ Նախախնամութեան որ իւրով անհասանելի իմաստութեամբն զոմանս դատի յաշխարհի աստ, զայլոյն պահէ զդատաստան ի հանդերձեալն ։

Տպագրութիւն գրոյս արարաւ համեմատութեամբ երկուց օրինակաց, յորոց զմին օրինակեալ էի

վազ ժամանակօք խմով ձեռամբ. զերկրորդն ետ մեզ ազգասիրաբար Թանգարանն վերծանութեան Միջագիւղին Կոստանդնուպօլսի, որում գոհութիւն շատ ։ Զսակաւ տարբերութիւնս դրոշմեցաք յաւարտ գրոյս ի գիտութիւն քննասիրաց ։

Կ. Վ. Շահնազարեանց՝
միաբան սրբոյ Էջմիածնի ։



# ՎԱՀՐԱՄԱՅ

# ՐԱԲՈՒՆԻՈՅ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԵՆԵԱՆՑ։



Պատմութիւն՝ Հայոց ազգի,
Գրեալ ոտիւ՝ չափոյ բանի.
Վահրամայ՝ վարդապետի,
Կիլիկեցւոյ՝ Սըսոյ քաղաքի։



Տէր Ներսիսի՝ լուսազարդեալ,
Հայրապետին՝ զայս բան գրեալ.
Ըզպատմութիւնս՝ Հայոց առեալ,
Ոտանաւոր՝ տողիւ չափեալ։
Զառ ի Նախնեաց՝ անտի սկսեալ,
Եւ մինչև ցինքն՝ հասուցեալ.

Զորպիսութիւն՝ նոյին յայտնեալ,
Ի խրատ՝ հանուրց ազգի տուեալ։
Զոր ընթերցեալ՝ եւ ծանուցեալ,
Լեոն Հայոց՝ արքայն օծեալ.
Նուաստութեանս՝ իմ հրամայեալ,
Ի սուրբ հօրէն՝ առնուլ դարձեալ։
Որ մինչ ի մեզ՝ եղեւ հասեալ,
Նահապետաց՝ մերոց կացեալ.
Գործք եւ կամ բանք՝ վիպասանեալ,
Ի ստուգագոյն՝ արանց պատմեալ։
Եւ զոր աչօք՝ մերովք տեսեալ,
Եւ ականջօք՝ յայլոց լուեալ.
Զայն ինձ գրել՝ բանիւ չափեալ (1),
Առ ի լինել՝ դիւրաւ յայտնեալ։
Արդ ես Վահրամ՝ րաբուն ձայնեալ,
Եւ յիմաստից՝ ունայն կացեալ (2).
Աստուածային՝ բանիւք վարժեալ,
Եւ ի յարդիւնսն՝ ոչ ժամանեալ։
Ի յարքայէ՝ յայս հարկեցեալ,
Եղէ մտօք՝ տարաբերեալ.
Զի մի՛ անլուր հրամանին լեալ (3),
Որ ի Նմանէ՝ առ իս հասեալ։
Գտայց կրկին՝ պատուհասեալ,
Որպէս Պօղոս՝ է հրամայեալ.
Եւ ի Նախկին՝ բանս գրեալ,

Ցարել գըան՝ ըս մեր հիւսեալ։
Ցանդգնութիւն՝ զայս համարեալ,
Ի բարձրագոյն՝ գործ ժպրհեալ.
Ի յայսցանէ՝ յոյժ զարհուրեալ,
Եւ հրաժարել՝ յանձին կալեալ։
Ապա յետոյ՝ զմտաւ ածեալ,
Եւ ուղղակի՝ զայս դատեցեալ.
Թէ զմեր յիմար՝ բանս եւ լքեալ,
Ցարել ընդ բանան՝ նախագրեալ։
Զլինի այսու՝ տգեղացեալ,
Գեղեցկագոյն՝ բանքն ճառեալ.
Որպէս յարհեստն՝ է այս տեսեալ,
Զոր նկարողքն՝ են հանճարեալ։
Որք ի գունոցն՝ զսեաւն առեալ,
Եւ ընդ ոսկւոյն՝ շարալծեալ.
Ոչ թէ ընտիր՝ զնա տեսեալ,
Կամ հաւասար՝ ոսկւոյն եղեալ։
Այլ զի մաքուր՝ ոսկին փայլեալ,
Լիցի նովաւ՝ հրատարակեալ.
Ցորմէ ոսկին՝ չէ աղտեղեալ,
Այլ առաւել՝ պայծառ ցուցեալ։
Այսպէս եւ մեր՝ բանս երևրեալ,
Զգեղեցկագոյն՝ բանըս յարգեալ.
Որովք այսու՝ վստահացեալ,
Ցառաջիկայս՝ համարձակեալ ։

Ցուցով իմ յայն՝ ապաստանեալ,
Որ ամենից՝ բան է շնորհեալ.
Աստուածպէս՝ իմաստ առեալ,
Եւ ոչ զմի՝ ոք նախատեալ։
Որ է յանձինս՝ երիս տեսեալ,
Ի մի բնութիւն՝ հաւասարեալ.
Հայր եւ Որդի՝ մեզ ծանուցեալ,
Եւ սուրբ Հոգի՝ խոստովանեալ։
Աստուածութեամբ՝ միաւորեալ,
Մի էութեամբ՝ երկրպագեալ.
Ցորմէ էակքըս՝ գոյացեալ,
Եւ ի նմանէ՝ նախախնամեալ։
Արդ ի յանուն՝ նորա սկսեալ,
Եղէց զբանս՝ և աւարտեալ.
Անծնելին Հօր՝ Որդւոյն ծնեալ,
Եւ ի Հօրէ՝ Հոգւոյն բղխեալ։
Փոքր ինչ յառաջ՝ անդր ընթացեալ,
Ի նախնական՝ զրուցացն առեալ.
Համառօտիւ՝ զնոյն գրեալ,
Մինչև ի մեր՝ ըս ժամանեալ։
Որք հաւատով՝ լուսաւորեալ,
Եւ մաքրագոյն՝ օրէնս առեալ.
Քրիստոնէից՝ ազգըն կոչեալ,
Եւ Աստուծոյ՝ միճակ եղեալ։
Նոքա յօրէնսն՝ անօրինեալ,

Եւ չար գործովք՝ աղտեղացեալ.
Որոց մեղաց՝ չափըն լցեալ,
Եւ բարկութիւն Տեառն շարժեալ ։
Յանապատէն՝ յառաջ եկեալ (4),
ՅԱրաբիոյ՝ հուրն վառեալ.
Զայն որ Մահմէտ՝ ըն կոչեցեալ,
Եւ կորստեան՝ որդի եղեալ ։
Մոլորութեան՝ օրէնս եդեալ,
Եւ զբաղումն՝ յինքն ձգեալ.
Զէն և սուսեր՝ յանձին բարձեալ,
Եւ աշխարհաց՝ բազմաց տիրեալ ։
Թէպէտ չարին՝ վախճան առեալ,
Այլ չարութիւնն՝ արձանացեալ.
Զի զհայր որդի՝ փոխանորդեալ,
Եւ բռնութիւնն՝ ստուարացուցեալ (5) ։
Այսպ յոլով՝ ամաց անցեալ,
Ի հիւսիսոյ՝ եղեն շարժեալ.
Ազգ որ կոչմամբ՝ Թուրք անուանեալ,
Ի քսան և չորս՝ ցեղս որոշեալ ։
Իշխանութիւն՝ Տաճկաց առեալ,
Թէպէտ յաղանդ՝ նոյին խմորեալ (6).
Զթագաւորս՝ երկրի բարձեալ,
Եւ կայսերաց՝ յաղթող գտեալ ։
Պատերազմաւ՝ զերկիր լցեալ,
Եւ ընակեալսն՝ ի նմա մաշեալ (7).

Մարմնովք զհոգիսըն՝ վտանգեալ,
Զորս ընդ ձեռամբ՝ էին կալեալ։
Ի Բաբելոն՝ եղեն հասեալ,
Եւ տէրութիւն՝ անդ հաստատեալ.
Ի յարևելըս՝ ժամանեալ,
Ուր Հայկազանց՝ սեռն բնակեալ։
Եւ զնոսին՝ անդ չարչարեալ,
Ծանր լծովըն՝ զոր եդեալ.
Որք ի չարեացըն՝ ձանձրացեալ,
Եւ նեղութեանցն՝ ոչ հանդուրժեալ։
Ի յարևմուտըս՝ կոյս դարձեալ (8),
Եւ ի հիւսիս՝ փախուստ առեալ.
Ըզհայրենին՝ աշխարհ լքեալ,
Եւ ի յօտարըս՝ պանդխտացեալ։
Նա և Հայոց՝ արքայն օծեալ,
Այն որ Գագիկն՝ է կոչեցեալ.
Ցայնքան չարիսըն՝ նայեցեալ,
Եւ ըզհանդերձեալըն՝ նկատեալ։
Ըզբոլոր աշխարհն՝ որոց տիրեալ,
Ի Հոռոմոց՝ կայսրն տուեալ.
Եւ փոխարէն՝ ինքեան առեալ,
ԶԿեսարիայն՝ ըզհռչակեալ։
Այլ և բազում՝ տեղեաց տիրեալ,
Կապադովկիոյ՝ մասինն եղեալ (9).
Ցորում Հայոց՝ ազգի բնակեալ,

Ի մէջ Յունաց՝ պանդխտացեալ ։
Բայց Հին Նախանձն՝ արմատացեալ (10),
Որ յերկուսին՝ ազգսըն տնկեալ ․
Այն վերստին՝ առուգացեալ ,
Եւ խռովութիւն՝ մեծ յարուցեալ ։
Քանզի Մարկոս՝ ոմն անուանեալ (11),
Մետրապօլիտ՝ անդէն կացեալ ․
Տուն մի ինքեան՝ էր մերձ կալեալ (12) ․
Նմին անուն՝ արմէն ձայնեալ ։
Զոր արքային՝ Գագկայ լուեալ ,
Զմետրապօլիտն՝ ի ճաշ կոչեալ ․
Զայնել զանուն՝ շանն ստիպեալ ,
Իսկ յայսմանէ՝ Նա երկուցեալ ։
Զշունն այլով՝ անուամբ կոչեալ ,
Որոյ և շունն՝ անլուր եղեալ (13) ․
Յորժամ արմէն՝ անուն ձայնեալ ,
Փութով առ Նա՝ շունն դիմեալ ։
Զոր զերկոսեանն՝ արքայ առեալ ,
Եւ ի միում՝ քրձի ածեալ ․
Եւ հարուածովք՝ այնքան տանջեալ ,
Մինչ երկոքեանքն՝ սատակեալ ։
Եւ զայս պատճառ՝ Յունացն առեալ ,
ԶՀայկազունս՝ ըն հալածեալ ․
Որք և զարքայն՝ Գագիկ կալեալ ,
Մանտալէանքըն՝ և սպանեալ ։

Ուստի իշխանքն՝ նուաստացեալ,
Եւ զօրականքն՝ արհամարհեալ·
Զտէրութիւնն՝ իւրեանց լքեալ,
Եւ յամենայն՝ տեղիս ցրուեալ։
Յորոց իշխան՝ ոմն պատուեալ,
Արեանառու՝ Գագկայ եղեալ·
Ռուբէն անուն՝ վերածայնեալ,
ԶԿոսիդառայ՝ ամրոց կալեալ (14)։
Յորժամ զԳագկայ՝ մահըն լուեալ,
Իւրով զարմիւք՝ ըն յարուցեալ·
Եւ ի Տօրոս՝ լեառըն ելեալ,
Ի Փռիւգիոյ՝ կողմանսն իջեալ։
Դիմեալ ի գեղ՝ մի կոչեցեալ,
Կոռմօզօլօ՝ և անդ բնակեալ·
Յորում լերին՝ էին եկեալ,
Յազգէն Հայոց՝ և անդ կացեալ։
Զամենեսեան՝ զնոսա կոչեալ,
Մեծն Ռուբէն՝ և յինքն յարեալ·
Որովք եզև՝ յոյժ զօրացեալ,
Եւ լեռնային՝ կողմանսն առեալ։
Զազգն Յունաց՝ անտի մերժեալ,
Եւ զտեղիս՝ նոցա առեալ·
Բարեպաշտօն՝ կենօք կեցեալ,
Եւ առ Քրիստոս՝ փոխադարձեալ։
Զիշխանութիւն՝ նորին կալեալ,

Իւր հարազատ՝ որդւոյն ծնեալ.
Որ Կոստանդին՝ էր անուանեալ,
Մեծախորհուրդ՝ և քաջ եղեալ։
Հռչակաւոր՝ դղեկին տիրեալ,
Այն որ Վահկայն՝ է կոչեցեալ.
Յորում և տուն՝ ինքեան եղեալ,
Եւ տէրութիւն՝ անդ հաստատեալ։
Արիաբար՝ սա մարտուցեալ,
Եւ զբազում՝ տեղիս առեալ.
Զազգն Յունաց՝ ի սուր մաշեալ,
Եւ զնոյին՝ զօրսն պարտեալ։
Սա ի Ֆռանկաց՝ ազգէն պատուեալ,
Որ ի ծովու՝ յայսկոյս տիրեալ.
Որոց եղև՝ Նիզակակցեալ,
Ընդդէմ Թուրքին՝ պատերազմեալ։
Ում կոմսութեան՝ պատիւ շնորհեալ,
Գունտ և մարգիզ՝ վերաձայնեալ.
Եւ զքաջութեան՝ անուն տարեալ,
Յայնկոյս ծովու՝ և հռչակեալ։
Սա էր բարեաց՝ գործովք լցեալ,
Եւ հաւատովք՝ պայծառացեալ.
Յամենեսեան՝ մարդասիրեալ,
Եւ աշխարհի՝ շինող եղեալ։
Եւ մինչ նովաւ՝ էին ծաղկեալ,
Որոց տիրէրն՝ և զուարճացեալ.

Յաւուր միում՝ նշան եղեալ,
Որ և զմահ՝ մեծին ցուցեալ։
Իւր առաջի՝ սկուտղն եղեալ,
Որ յարծաթոյ՝ էր նա կազմեալ.
Յանկարծակի՝ եղև թռուցեալ,
Եւ ի յանկիւն՝ տանն գնացեալ։
Ի մէջ այլոյ՝ եօթանց մտեալ,
Ի սկուտեղաց՝ և անդ ծածկեալ.
Զոր իմաստնոյ՝ ըն զայն մեկնեալ,
Զնա ընդ հարսն՝ ասեն թաղեալ։
Իսկ ի Քրիստոս՝ նա հանգուցեալ,
Ընդ Ռուբենի՝ հօրն իւր եղեալ.
Եղեն ի սուրբ՝ ուխտըն թաղեալ,
Որ Կաստաղօնն՝ էր յորջորջեալ։
Եւ Կոստանդեայ՝ եղեն մնացեալ,
Երկու որդիք՝ յիւրմէ ծնեալ.
Միոյն Թորոս՝ վերաձայնեալ,
Եւ երկրորդին՝ Լէոն կոչեալ։
Արդ անդրանիկն՝ իշխանացեալ,
Եւ զտեղի՝ հօրըն կալեալ.
Իմաստութեամբ՝ առաւելեալ,
Եւ քաջութեամբ՝ փառազարդեալ։
Իսկոյն զվրէժ՝ արեան խնդրեալ,
Զմեծին Գագկայ՝ որ էր սպանեալ.
ԶՄանտալէի՝ որդին կալեալ,

ԶԿոստանդնուպոլիսի՝ բերդն քանդեալ ։
Ըզբագմութիւն՝ զանձուցն առեալ ,
Եւ զնոսին՝ մահացուցեալ ․
ԶԱստուածածնին՝ պատկեր գտեալ ,
Եւ ընդ ինքեան՝ ի Հայս բերեալ ։
Այսու եղև՝ նա զօրացեալ ,
Զազգն Յունաց՝ յաղթահարեալ ․
Որով բազում՝ տեղեաց տիրեալ ,
ԶԱնարզաբա՝ յինքն գրաւեալ ։
Յորում զտաճարն՝ մեծ շինեալ ,
Զօրավարացն՝ անուամբ պատուեալ ․
Անդ զպատկեր՝ Կուսին եդեալ ,
Որպէս յարձանսն՝ էր փորագրեալ ։
Արիաբար՝ իշխանացեալ ,
Եւ յամենայն՝ ազգաց սիրեալ ․
Որք զԿիլիկիա՝ անուն թողեալ ,
Եւ Թորոսի երկիր՝ կոչեալ ։
Բոլոր սրտիւ զԱստուած սիրեալ ,
Եւ զպաշտօնեայս՝ նորա պատուեալ ․
Եկեղեցիս՝ բազում շինեալ ,
Եւ վանորայս՝ յոյժ հռչակեալ ։
Յորոց Դրազարկն՝ է մակադրեալ ,
Եւ Մաշկեւորն՝ անուն ձայնեալ ․
Եւ այլ բազումք՝ որ հաստատեալ ,
Եւ պարգևօք՝ փարթամացեալ ։

Սա այսպիսի՝ կենօք կայեալ,
Եւ առ Քրիստոս՝ վերափոխեալ.
Ի սուրբ ուխտին՝ դամբարանեալ,
Որ Դրազարկ՝ անուն ձայնեալ։
Սորա որդի՝ մի էր Թողեալ,
Ում Կոստանդին՝ անուն ձայնեալ.
Զոր ամբարիշտք՝ ոմանք կալեալ,
Եւ մահացու՝ դեղօք բարձեալ։
Իսկ Թորոսի՝ եղբօրն ելեալ,
Այն որ Լէոն՝ էր անուանեալ.
Զիշխանութիւն՝ եղբօրն առեալ,
Եւ նմանող՝ նորին եղեալ։
Մամեստիոյ՝ եղև տիրեալ,
Եւ ի Տարսոն՝ մեծըն հասեալ.
Որոյ անունըն՝ համբաւեալ,
Ընդ որ բրինձն՝ սքանչացեալ։
Աղաչանօք՝ զնա կոչեալ,
Եւ ի մարտի՝ գործ հրաւիրեալ.
Որք միաբան՝ յԱզգաղն եկեալ,
Զքաջն յառաջ՝ ի մարտն ածեալ։
Իսկ Լէոնի՝ յանձին կալեալ,
Ընդ այլազգիս՝ ըն մարտուցեալ.
Զամրոց նոցին՝ յափշտակեալ,
Եւ զնոսին՝ ի սուր մաշեալ։
Ընդ որ եղեն՝ յոյժ զարմացեալ,

Արիական՝ ազգըն տեսեալ.
Իսկ այլազգիքն՝ ըն զարհուրեալ,
Նոր Աժդահակ՝ զայրըն ձայնեալ։
Այլ նա փառօք՝ մեծաւ դարձեալ,
Եւ յիւր աշխարհն՝ եկեալ հասեալ.
Յորում չորրորդ՝ որդի ծնեալ,
Անհամեմատ՝ մարդկան գտեալ։
Նախ զԹորոս՝ մեծըն կոչեալ,
Եւ զՍտեփանէն՝ պսակադրեալ.
Ապա զՄլեհն՝ յառաջացեալ,
Եւ զՌուբէնն՝ զհետ եղեալ։
Արդ Հոռոմոց՝ կայսր կացեալ,
Պերփեռուժէնն՝ մակադրեալ.
ԸզԼեւոնի՝ գործն լուեալ,
Եւ բարկութեամբ՝ մեծաւ լցեալ։
Իսկոյն բազում՝ զօրօք շարժեալ,
Ի Կիլիկիա՝ եկեալ մտեալ.
Եւ զԼեւոն՝ քաջըն կալեալ,
Բազում զօրօք՝ շրջապատեալ։
Քանզի ի դղեակս՝ ոչ ամրացեալ,
Այլ ի լերինսն՝ օթագայեալ.
Ուստի արագ՝ եղև կալեալ,
Եւ կապանօք՝ ի կայսր ածեալ։
Ոմանք զկայսրն՝ ասեն երդուեալ,
Եւ խաբանօք՝ զԼեւոն բերեալ.

Այլ և զերկու՝ որդիսն կալեալ,
Եւ ընդ իւրեանց՝ հօրըն կապեալ։
Ի Կոստանդնու՝ պօլիս տարեալ,
Եւ ի բանտի՝ անդ արգելեալ.
Սակայն Մլեհն՝ ոչ պատահեալ,
Եւ Ստեփաննէն՝ անդ ոչ դիպեալ։
Յորժամ և հայրն՝ իւրեանց գերեալ,
Քանզի յՈւռհայ՝ էին գնացեալ.
Առ կոմս երկրին՝ պանդխտացեալ,
Զի էր քեռի՝ իւրեանց եղեալ։
ԶԿիլիկիա՝ կայսրըն առեալ,
Եւ զՀայոց՝ զօրսն սպառեալ.
Յիւրոց զօրացն՝ աստէն թողեալ,
Եւ ինքն անդրէն՝ յետս դարձեալ։
Բայց Լէոնի՝ ի բանտ մտեալ,
Երկու որդւովք՝ և տառապեալ.
Այցելութեանն՝ ակն կալեալ,
Այնր որ յերկինս՝ երկնից Նստեալ։
Որոյ խնամք՝ ըն յուզեցեալ,
Ի գթութիւն՝ զկայսր շարժեալ.
Մինչ զի զԼէոն՝ մեծապատուեալ,
Եւ միշտ որդւովքն՝ առ ինքն ածեալ։
Ի պաղատանն՝ ի ճաշ կոչեալ,
Եւ ի սփոփանս՝ որսոյ տարեալ.
Գեղեցկապէս՝ ըզգեստաւորեալ,

Եւ յերկիւր՝ ըս հեծուցեալ ։
Որ և յաւուր՝ միում մտեալ ,
Ի բաղանիսն՝ լոգացեալ ·
Եւ զԼեւոն՝ անդէն կոչեալ ,
Իւրով որդւովքն՝ և մեծարեալ ։
Յորում Ռուբէնն՝ արխացեալ ,
Եւ հրաշալի՝ գործըս ցուցեալ ·
Զի արքայի՝ սպասաւորեալ ,
Եւ մեծարել՝ զնա կամեցեալ ։
Նա զաւազան՝ մի ջրով լցեալ ,
Եւ ամրագոյն՝ անդէն պնդեալ ·
Զայն քաջապէս՝ ի վեր առեալ ,
Եւ առաջի՝ կայսերն եդեալ ։
Ընդ որ տեսօղքըն՝ զարմացեալ ,
Եւ նոր Սամփսոն՝ զնա կոչեալ ·
Սակայն զօրայըն՝ մախացեալ ,
Եւ զայրացմամբ՝ մեծաւ լցեալ ։
Յունկն կայսերըն՝ մատուցեալ ,
Եւ զՌուբէն՝ ամբաստանեալ ·
Հնարիւք զնա՝ կուրացուցեալ ,
Եւ ի Պենաց՝ ըն նահանջեալ ։
Իսկ Թորոսի՝ միայնացեալ ,
Ընդ հօր իւրում՝ պանդխտացեալ ·
Եւ ի բանտին՝ երագ տեսեալ ,
Զոր և փութով՝ հօրըն պատմեալ ։

Տեսի ասէ՝ յանուրջս եկեալ,
Այր մի աստէն՝ փառազարդեալ․
Ինձ նկանակ՝ հացի տուեալ,
Յորոյ վերայ՝ ձուկն էր եդեալ։
Իբրև կայի՝ ես հիացեալ,
Եւ ի յառնէն՝ զտուեալն առեալ․
Դու հայր՝ տեսեալ՝ զայն և հայցեալ,
Սակայն յիրացդ՝ ոչ կերակրեալ։
Հայրն ի յորդւոյն՝ զայս բան լուեալ,
Եւ ի Տեառնէ՝ լուսաւորեալ․
Խնդամտութեամբ՝ առ նա գոչեալ,
Եւ աւետեօք՝ ողջագուրեալ։
Ցնծա՛ որդիդ՝ բարգաւաճեալ,
Զի քոյ նախնեայն՝ եղեր զուգեալ․
Որ յետ չարեաց՝ ըդ զոր կրեալ,
Եկին բարիք՝ ըն քեզ պահեալ։
Քանզի երկիրն՝ զոր մեք կալեալ,
Եւ ընդ մեղաց՝ մեր կորուսեալ․
Բոլորովին՝ լիցի տիրեալ,
Զոր նկանակ՝ ըն քեզ յայտնեալ։
Եւ ընդ ձկան՝ ըն զոր տեսեալ,
Գտցիս ծովու՝ իշխան եղեալ․
Եւ քո ի յայս՝ շնորհ հասեալ,
Եւ իմ բարեացն՝ ոչ հաղորդեալ։
Լէոն անդէն՝ վախճան առեալ,

Եւ առ Քրիստոս՝ վերակոչեալ.
Յայնժամ և կայսր՝ ընդ գթացեալ,
Եւ ի բանտէ՝ զԹորոս հանեալ:
Որ ի պաղատ՝ անդր կացեալ,
Եւ ընդ զօրաց՝ ընդ զինուորեալ.
Անդ մեծաշուք՝ այրն երևեալ,
Եւ յարքայէ՝ շնորհ գտեալ:
Զկնի ամաց՝ ինչ հոլովեալ,
Կայսր զօրօք՝ բազմօք շարժեալ.
Ի յօգնութիւն՝ բրինձին դիմեալ,
Որ ի Տաճկաց՝ էր յոյժ նեղեալ:
Պերփեռուժէն՝ արքայն եկեալ,
ՅԱնարզաբա՝ բանակ առեալ.
Անդ ի զբաղումն՝ որսոց ելեալ,
Յիւրոյն դեղեալ՝ նետէ խոցեալ:
Եւ ի տեղւոջ՝ ընդ վախճանեալ,
Ըստ արժանւոյն՝ վճիռ առեալ.
Իսկոյն զօրաց՝ ընդ յետս դարձեալ,
Եւ զմարմինն՝ զհետ բարձեալ:
Զփորոտիսն՝ անդէն թաղեալ,
Եւ ի վերայ՝ շինուած կազմեալ.
Որ մինչև ցայս՝ օր անուանեալ,
Եւ Քաղրդիկ՝ տեղին կոչեալ:
Բայց յունական՝ զօրուն դարձեալ,
Եւ Թորոսի անդէն՝ կացեալ.

Զոր է յոլովք՝ են պատմագրեալ,
Որոյ և բանք՝ ըն բաժանեալ։
Քանզի ոմանց՝ է ասացեալ,.
Առանձնակի՝ զԹորոսն եկեալ.
Եւ յԱնտիոք՝ նաւու ելեալ,
Ի Կիլիկիա՝ անտի մտեալ։
ԶՍտեփանէ՝ անդէն գտեալ,
Եւ միաբան՝ հնարաւորեալ.
Նախ զԱմուտայն՝ եղեն առեալ,
Ապա նովաւ՝ այլոց տիրեալ։
Իսկ որ կայսեր՝ զհետ եկեալ,
Ասեն զԹորոսն՝ և մնացեալ.
Մինչ ի Յունաց՝ աշխարհին լեալ,
Դշխոյ կնոջ՝ մի զնա սիրեալ։
Եւ գանձ բազում՝ նմա տուեալ,
Զոր և Թորոս՝ զհետ բերեալ.
Ի լեռնական՝ կողմանսն ելեալ,
Եւ քահանայ՝ զոմըն գտեալ։
Ում թաքնաբար՝ զինքն յայտնեալ,
Թէ Լէոնի՝ որդի եղեալ.
Նա ցնծութեամբ՝ յանձին առեալ,
ԶԹորոս ի գործ՝ հովուի եղեալ։
Իսկ ի Հայոց՝ որք մնացեալ,
Եւ ի լերին՝ անդ բնակեալ.
Ի յունական՝ ազգէն նեղեալ,

Նախնի տէրանց՝ ըն ըղձացեալ ։
Քահանային՝ նոյա պատմեալ ,
Եւ ղցանկալին՝ ինքեանց յայտնեալ .
Որք և փութով՝ միաբանեալ ,
Եւ զԹորոսն՝ ի վեր առեալ ։
Նախ Վահկային՝ եղև տիրեալ ,
Ապա նովաւ՝ ղայլըն կալեալ .
Արդ զինչ և է՝ պատճառ եղեալ ,
Ի յԱստուծոյ՝ էր տնօրինեալ ։
Որ ի բանտէ՝ անտի ելեալ ,
Եւ հայրենեաց՝ ըն տէր գտեալ .
Զիշխանութիւն՝ Յունաց առեալ ,
Եւ զնոցին՝ զօրսըն վանեալ ։
Պերփեռուժէն՝ կայսրըն մեռեալ ,
Եւ իւր որդին՝ Թաղաւորեալ .
Այն որ Մանուէլն՝ կոչեցեալ ,
Եւ բարեսէր՝ յոյժ անուանեալ ։
Որ և իսկոյն՝ զօր գումարեալ ,
Եւ յօգնութիւն՝ Ցռանկաց ելեալ .
Որք ի ծովու՝ յայսկոյս եկեալ ,
Եւ ի Տաճկաց՝ էին նեղեալ ։
Ի Կիլիկիա՝ իբրև եկեալ ,
Եւ զԹորոսի՝ գործըն լուեալ .
Որ էր նա զՅոյնսըն՝ չարչարեալ ,
Եւ աշխարհին՝ տիրապետեալ ։

Սրտմտութեամբ՝ բազմաւ լցեալ,
Եւ զբովանդակ՝ զօրսըն յղեալ.
Զի զԹորոս՝ ածցեն կապեալ,
Որպէս և ինքն՝ էր յուսացեալ:
Այլ Թորոսի՝ ի դղեակ ելեալ,
Որ Բարձր բերդն՝ է ասացեալ.
Եւ զլերանցն՝ զկիրճս առեալ,
Հեծեալական՝ զօրօք լցեալ:
Ցոր իբրև զօրք՝ Յունաց եկեալ,
Վաղվաղակի՝ եղեն պարտեալ.
Յորոց յոլովք՝ ձերբակալեալ,
Եւ առ Թորոս՝ ածեն կապեալ:
Էմմանուէլ՝ ըն զայս լուեալ,
Եւ տրտմութեամբ՝ մեծաւ լցեալ.
Ցոր և բազում՝ գանձս յղեալ,
Եւ զմեծամեծսն՝ այնու գնեալ:
Թորոս զբերեալ՝ ոսկին առեալ,
Եւ հետևակ՝ զօրուն բաշխեալ.
Զոր սեւաստոսք՝ ըն զայն տեսեալ,
Եւ առ նա բան՝ զայս խօսեցեալ:
Եթէ ընդէ՞ր՝ այդչափ տուեալ,
Զոսկիդ յանարգ՝ մարդիկ ցրուեալ.
Որոյ Թորոս՝ պատասխանեալ,
Անմիտ բանից՝ ըն զոր լուեալ:
Թէ զի զձեզ՝ դորձեալ կալեալ,

Զսեւաստոսդ՝ ածցեն կապեալ.
Որք առ արքայ՝ գնացին զերծեալ,
Եւ զոր տեսին՝ ըն ծանուցեալ։
Կայսր ընդ եղեալս՝ ըն զարմացեալ,
Ի հաշտութիւն՝ զԹորոս կոչեալ.
Անտիոքայ՝ բրինձն եկեալ,
Եւ երկոցունց՝ միջնորդ եղեալ։
ԶԱնարզաբա՝ յինքն գրաւեալ,
Կայսրն ի Թորոսէ՝ մեծէն առեալ.
Եւ զայլ երկիր՝ ըն զոր կալեալ,
Ոսկի բուլով՝ նմա շնորհեալ։
Ի Ցանտիոք՝ կայսրն երթեալ,
Զմեծըն Թորոս՝ զհետ կոչեալ.
Որ քաջութեան՝ գործըս ցուցեալ,
Զամենեսեան՝ հիացուցեալ։
Ի Կիլիկիա՝ եկին դարձեալ,
Եւ կայսրն յերկիրն՝ իւր յառաջեալ.
Մինչդեռ էին՝ բանակ առեալ,
ՅԱնարզաբայ՝ դաշտին իջեալ։
Ի գիշերին՝ Թորոսն ելեալ,
Եւ ի Վահկայն՝ թաքուն գնացեալ.
Զի կամ արքայ՝ չար ինչ խորհեալ,
Եւ ոք նմա՝ զայն ծանուցեալ։
Եւ կամ թէ ինքն՝ զարհուրեալ,
Զի մի՛ միցի՝ զհետ երթեալ.

Լմմանուէլն՝ անդրէն դարձեալ,
Եւ անվրդով՝ Թորոս կացեալ։
Որ քաջապէս՝ նա յարձակեալ,
ԶԱնարզաբա՝ կրկին կալեալ.
Մամեստիոյ՝ մեծին տիրեալ,
Եւ զբազում՝ աւանս առեալ։
Իսկ ի Տարսոն՝ դուքսն կացեալ,
Այն զոր էր կայսր՝ ըն հաստատեալ.
Եւ զօր բազում՝ ի նա տուեալ,
Եւ պահապան՝ երկրիս եղեալ։
Սա զԹորոսի՝ գործսն լուեալ,
Եւ զՅունաց՝ զօրն ժողովեալ.
Այլ և զՕշին՝ ըն կոչեցեալ,
Որ Լամբրոնին՝ էր տէր եղեալ։
ԶՆախթանիկեանք՝ ըն ժողովեալ (15),
Որ յԱսկուռաս՝ էին տիրեալ.
Զի հայկազնեայ՝ իշխանքս ելեալ,
Յարևելից՝ առ կայսր եկեալ։
Եւ ընդ նորին՝ լծով մտեալ,
Եւ ի Նմանէ՝ պատիւ առեալ.
Ուստի առ դուքս՝ էին եկեալ,
Եւ ընդ զօրուն՝ միաբանեալ։
ԶՄամեստիա՝ շրջապատեալ,
Յորում պարոն՝ Թորոս էր լեալ.
Որ և յԱստուած՝ ապաստանեալ,

Սակաւ արամբք՝ արտաքս ելեալ։
Եւ բազմութեան՝ զօրացն յաղթեալ,
Զամենեսեան՝ ձերբակալեալ.
ԶՅոյնսն որոյ՝ ճարակ տուեալ,
Եւ զՀայոց՝ զօրսն ազատեալ։
Սակայն զՕշին՝ ըն փախստեալ,
Եւ զբազմութիւն՝ ոսկւոյ առեալ.
Յետոյ սիրով՝ ընդ նա կապեալ,
Զդուստր իւր որդւոյ՝ Նորա տուեալ։
Ինքն դարձեալ՝ զօր ժողովեալ,
Զերուեալին՝ Տարսոն առեալ.
Յիսաւրիոյ՝ գահըն հասեալ,
Եւ մինչ ի ծովն՝ եղև կալեալ։
ԸզԿիլիկիա՝ բոլորն առեալ,
Ծագէ ի ծագ՝ տիրապետեալ.
Եւ յԻսաւրիոյ՝ սկիզբն եղեալ,
Յոլով տեղիս՝ բռնակալեալ։
Էմմանուէլ՝ ըն զայս լուեալ,
Եւ տրտմութեամբ՝ մեծաւ լցեալ.
Եւ ինքն ի չարն՝ անկարացեալ,
Զի էր զխորձ՝ մեծին առեալ։
Առ յԻկոնիոյ՝ սուլտանն յղեալ,
Որ Խլիճ Ասլանն՝ էր անուանեալ.
Որում և զանձ՝ բազում տուեալ,
Զի զԹորոս՝ միցի կալեալ։

Եւ նա զերդում՝ ըն յիշեցեալ,
Զոր ընդ պարոն՝ Թորոսն եդեալ.
Եւ զառաջին՝ ըն հրաժարեալ,
Լինէր կրկին՝ անգամ հարկեալ։
Որ և բազում՝ զօր ժողովեալ,
Ի Կիլիկիա՝ եղև հասեալ.
ՅԱնարզաբայ՝ դաշտին իջեալ,
Եւ զԹի ամրոց՝ ըն պաշարեալ (16)։
Ապա բարձրեալն՝ Աստուած շարժեալ,
Եւ զնոսա՝ պատուհասեալ.
Ցանճ և պիծակ՝ անդ առաքեալ,
Եւ ժանտախտիւքն՝ ըն չարչարեալ։
Այլ և Թորոսն՝ ասպատակեալ,
Զսուլտանին՝ երկիր գերեալ.
Եւ աւարաւ՝ բազում դարձեալ,
Խլիճ Ասլանայ՝ պաքգև յղեալ։
Ընդ որոյ գործ՝ ըն զարհուրեալ,
Եւ ի ցասուց՝ ըն վտանգեալ.
Եղեւ ի յետ՝ ըս նահանջեալ,
Եւ ի յիւրեան՝ աշխարհն երթեալ։
Այլ և կրկին՝ անգամ եկեալ,
Եւ ամօթով՝ յետս դարձեալ.
Ապա սուլտանն՝ երդումն երդուեալ,
Եւ ընդ քաջին՝ սիրով կապեալ։
Էր սա մարմնով՝ յառաջացեալ,

Այլ և հոգւով՝ յոյժ զօրացեալ.
Զողորմութիւն՝ առատ տուեալ,
Ըստ արեգական՝ լուսոյ փայլեալ:
Բարեաց գործովք՝ բարգաւաճեալ,
Եւ հաւատով՝ պայծառացեալ.
Աստուածային՝ գրովք վարժեալ,
Եւ յիմաստից՝ արուեստ մտեալ:
Ասէն հոգի՝ սա ընկալեալ,
Մարգարէի՝ հաւասարեալ.
Որով դժուար՝ բանըս լուծեալ,
Որ գտանի՝ այժմս գրեալ:
Յամենայնի՝ փառազարդեալ,
Եւ յԱստուծոյ՝ հաճոյս կացեալ.
Որովք առ նա՝ եղև փոխեալ,
Եւ ի Դրազարկ՝ ըն հանգուցեալ:
Բայց Ստեփանէն՝ նախասացեալ,
Որ էր եղբայր՝ մեծին եղեալ.
Ի սեաւ լերին՝ ըն դադարեալ,
Եւ քաջութեամբ՝ զայն ըմբռնեալ:
Գերմանիկոյ՝ եղև տիրեալ,
Եւ զօրս նա՝ շրջապատեալ.
Ապա Յունաց՝ գնա կալեալ,
Եւ յեռանդեան՝ կաթսայ արկեալ:
Յորում տեղւոջ՝ վախճան առեալ,
Եւ առ Աստուած՝ հոգին դարձեալ.

Նորին մարմինն՝ ի հող եղեալ,
ՅԱրքակաղնին՝ ուխտն անուանեալ։
Բայց սա երկու՝ որդի թողեալ,
Միոյն անուն՝ Ռուբէն կոչեալ.
Եւ կրսերոյն՝ Լէոն ձայնեալ,
Այն որ յետոյ՝ թագաւորեալ։
Սակայն Թորոսն՝ որ վախճանեալ,
Մատաղ որդի՝ մի իւր թողեալ.
Զնա և զերկիրս՝ ապաստանեալ,
Յայն որ պարոն՝ և պայլ եղեալ։
Որ և աներ՝ նմին եղեալ,
Անուն Թումաս՝ վերաձայնեալ.
Զորդին մեծին՝ յինքն ընկալեալ,
Նովաւ զերկիր՝ ըն հոգացեալ։
Այլ որ Մլեհն՝ էր կոչեցեալ,
Զոր վերագոյն՝ մեր յիշեցեալ.
Սա առ Հալպայ՝ սուլտանն երթեալ,
Զայնքան աւուրս՝ առ նա կեցեալ։
Յորժամ զեղբարց՝ մահըն լուեալ,
Ի սուլտանէն՝ հեծեալ առեալ.
Եւ ի Հայոց՝ երկիր մտեալ,
Որոց բազում՝ չար հասուցեալ։
Եւ զի տիրել՝ ոչ կարացեալ,
Ապա ի Հալապ՝ յետըս դարձեալ..
Եւ այլ բազում՝ զօր ժողովեալ,

Կրկին անգամ՝ եղև եկեալ։
Առ որ Հայոց՝ իշխանքն յղեալ,
Եւ զնա սիրով՝ պարոն կոչեալ·
Ապա զՏաճիկս՝ ըն դարձուցեալ,
Եւ հաճութեամբ՝ երկրին տիրեալ։
Սակայն Թումաս՝ ըն փախուցեալ,
Ի յԱնտիոք՝ ուստի եկեալ·
Եւ զԹորոսի՝ որդին առեալ,
Ամբարշտաց՝ և սպանեալ։
Այլ չարասիրտ՝ Մլեհն եղեալ,
Եւ աղտեղի՝ գործովք լցեալ·
Յիւրոց զօրացն՝ եղև սպանեալ,
Եւ ի Մեծ քար՝ ուխտն թաղեալ։
Բայց Ստեփանէի՝ որդիքն մնեալ,
Առ Բագուրան՝ և զարգացեալ·
Զորս և իշխանքն՝ և զօրքն առեալ,
Եւ զՌուբէն՝ պարոն եդեալ։
Սա բարեգործ՝ իշխող եղեալ,
Առատութեամբ՝ զերկիրն շինեալ·
Որոյ անունն՝ յառաջացեալ,
Եւ յամենից եղև՝ պատուեալ։
Հռոմայեցւոցն՝ զնա սիրեալ,
Եւ ամուսին՝ նմա տուեալ·
Յորմէ երկու՝ դուստր ծնեալ,
Պարկեշտութեամբ՝ յոյժ զարդարեալ։

ԶԼամբրոն դղեակ՝ ըն պաշարեալ,
Եւ նեղութիւն՝ նոյա ածեալ.
Նոքա զբրինձ՝ ըն հրապուրեալ,
Զի յՌուբենայ՝ լիցին փրկեալ։
Ապա բրինձն՝ առ նա յղեալ,
Եւ խաբանօք՝ ի ճաշ կոչեալ.
Որոյ կոչմանն՝ զհետ երթեալ,
Ի յԱնտիոք՝ եղև բանտեալ։
Բրինձն ի յայն՝ վստահացեալ,
Թէ զԿիլիկիա՝ լիցի կալեալ.
Նորին եղբայր՝ ըն քաջացեալ,
Լէոն և զօրքն՝ արխացեալ։
Զիշխանութիւնն՝ ըն պինդ կալեալ,
Եւ զԼամբրոնն՝ յոյժ աղարեալ.
Ապա երկիր՝ և գանձ տուեալ,
Եւ զպարոն՝ Ռուբէն թափեալ։
Իբրև եղև՝ անդրէն եկեալ,
Նա բարութիւն՝ բազում ցուցեալ,
Եւ ի վախճան՝ կենացն հասեալ.
Կրօնաւոր՝ ինքն եղեալ։
ԶԼէոն բազում՝ բանիւ խրատեալ,
Եւ ի յաթոռ՝ նախնեացն եդեալ.
Զիւր զդստերսն՝ ի նա տուեալ,
Եւ պատուիրան՝ զայս աւանդեալ։
Ոչ արտաքուստ՝ փեսայ ածեալ,

Զի մի՛ Հայոց՝ միջին տիրեալ.
Սա ի Դրազարկն՝ եղև թաղեալ,
Յորժամ զմահու՝ բաժակն արբեալ։
Սակայն Լէոնն՝ քաջացեալ,
Եւ իմաստիւք՝ առաւելեալ.
Զիշխանութիւնն՝ ընդարձակեալ,
Եւ գաւառաց՝ բազմաց տիրեալ։
Աւուրց փոքունց՝ յառաջացեալ,
Իսմայէլի՝ ազգըն շարժեալ (17).
Եւ ի վերայ՝ սորա եկեալ,
Այն որ Ռուստոմն՝ էր անուանեալ։
Յորմէ Լէոնն՝ ոչ երկուցեալ,
Ի բազմութեանցն՝ ոչ զարհուրեալ.
Այլ ի յԱստուած՝ ապաստանեալ,
Որ ըզՍենեքեն՝ ըիմ պահեալ։
Սակաւ տրամբք՝ ընդդէմ ելեալ,
Եւ զբազմութիւնն՝ յաղթահարեալ.
Քանզի Ռուստոմն՝ էր սատակեալ,
Ի Գէորգեայ՝ սրբոյ խոցեալ։
Հագարացւոց՝ զօրքըն ցրուեալ,
Հայոց զհետ՝ նոցին վարեալ.
Առ և աւար՝ բազում ածեալ,
Որով եղեն՝ փարթամացեալ։
Ի յայսմանէ՝ յոյժ զօրացեալ,
Մեծըն Լէոն՝ և քաջացեալ.

Որ զՏաճիկ՝ սըն հալածեալ,
Եւ զԹուրքայ՝ ազգըն վանեալ :
ԶԽաւարիոյ՝ աշխարհն առեալ,
ՅԱտալիա՝ մեծըն հասեալ.
ԶԱռակլիա՝ եղև կալեալ,
Եւ ընդ զանձուց՝ փոխանակեալ :
ԶԿեսարիա՝ զօրօք պատեալ,
Եւ ի յառնուլ՝ ըն մերձ ածեալ.
Ապա ոսկի՝ բազում առեալ,
Եւ ընդ սուլտանն՝ երդումն եդեալ :
Ամրոց բազում՝ Աղղեակ շինեալ,
Եւ զԿիլիկիա՝ շրջապնդեալ.
Ականաւոր՝ ուխտըն կազմեալ,
Որ է Ակներ՝ անուն ձայնեալ :
Եւ զոր Նախնեացն՝ էր պարգևեալ,
Վանորէիցն՝ ըն զոր շինեալ.
Սա այնոցիկ՝ առաւելեալ,
Եւ մեծապէս՝ առատացեալ :
Զի զդողխն՝ որ նախ առեալ (18),
Եւ յամենայն՝ տեղեաց վարեալ.
Զնոսա ի մի՝ վայր ժողովեալ,
Բազմապատիկ՝ բարեօք լցեալ :
Եւ այսպիսի՝ անուն ստացեալ,
Եւ յամենից՝ գովասանեալ.
Ֆրանկաց՝ ումբրուրըն ծանուցեալ,

Եւ Յունաց կայսր՝ ըն զայս լուեալ ։
Յաստուածական՝ խնամոցն յուզեալ ,
Եւ երկոքեան՝ ըն թագ յղեալ ․
Յայնժամ Հայոց՝ բովանդակեալ ,
Եւ ի Տարոն՝ քաղաքն եկեալ ։
Կաթողիկոսն՝ ի մէջ կայցեալ ,
Զեկեղեցին՝ անդ ժողովեալ ․
Եւ օրինօք՝ զնա օծեալ ,
Տան Թորգոմայ՝ թագաւորեալ ։
Յարքայական՝ յաթոռ նստեալ ,
Բայց ի բարիս՝ յառաջացեալ ․
Զեկեղեցի՝ բարձրացուցեալ ,
Եւ աշխարհի՝ շինող եղեալ ։
Զանկեալ Հայոց՝ ազգս կանգնեալ ,
Եւ զտէրութիւն՝ ըն Նորոգեալ ․
Խաղաղութեամբ՝ զաշխարհ լցեալ ,
Իբրև զդրախտ՝ պտղաւետեալ ։
Զմեծն Անտիոք՝ յինքն գրաւեալ ,
Եղբօր դստերն՝ իւրոյ տուեալ ․
Այն որ զՌուբէն՝ եղև ծնեալ ,
Որ և բրինձ՝ ըն կոչեցեալ ։
ԸզԱրասուս՝ զաւառն առեալ ,
Եւ Պաղրսայ՝ դղեկին տիրեալ ․
Իմաստութեամբ՝ հնարաւորեալ ,
Եւ զՂամբրոն՝ յինքն կալեալ ։

Սուլտանն մեծ՝ զօրօք շարժեալ,
Որ Քայ-Քայուզ՝ էր անուանեալ.
Ի յարքային՝ վերայ եկեալ,
Զկապան դղեակ՝ ըն պաշարեալ:
Իսկ Թագաւոր՝ ըն քաջացեալ,
Ընդդէմ նորա՝ զօրօք ելեալ.
Սակայն զօրացն՝ անմտացեալ,
Եւ արքային՝ ոչ միացեալ:
Այլ յերկեղն՝ ի մարտ մտեալ,
Եւ յայլազգեաց՝ ըն պարտեցեալ.
Յոլովք ի սուր՝ եղեն մատնեալ,
Այլքն կապով՝ գերի տարեալ:
Աստի ներհակքն՝ արիացեալ,
Եւ ղողար՝ բերդին պնդեալ.
Արքայն այսու՝ ոչ տխրացեալ,
Եւ կամ փառթաք՝ ինչ խորհեցեալ:
Այլ զմտացեալս՝ ըն ժողովեալ,
Եւ ի Գամիրս՝ ասպատակեալ.
Ըզսուլտանին՝ աշխարհ գերեալ,
Եւ աւարաւ՝ բազում դարձեալ:
Զհամբաւ չարեաց՝ ըն նա լուեալ,
Եւ յիւր աշխարհն՝ անդրէն երթեալ.
Ընդ արքայի՝ երդումն եդեալ,
Եւ զգերեալս՝ ըն դարձուցեալ:
Յիշխանութեան՝ արքայն կացեալ,

Երկոտասան՝ ամ աւարտեալ.
Եւ Թագաւոր՝ Հայոց օծեալ,
Զքսան և զերկու՝ ամս տիրեալ:
Յորում վախճան՝ կենացն եկեալ,
Զիշխանսն առ ինքն՝ ժողովեալ.
ԶԱտան իշխան՝ մի պայլ եդեալ,
Զդուստր իւր ի նա՝ յաւանդ տուեալ:
Ինքն ի Քրիստոս՝ փոխադարձեալ,
Եւ ի յԱկներ՝ ուխտն Թաղեալ.
Մասն ինչ ի Սիս՝ քաղաք բերեալ,
Եւ ի վերայ՝ տաճար շինեալ:
Ապա Ատանն՝ եղև սպանեալ,
Եւ Կոստանդին՝ ըն պայլ նստեալ.
Որ արքային՝ էր ազգ եղեալ,
Զդուստր նորին՝ առ ինքն առեալ:
Զայն որ ժառանգ՝ էր Թագեալ,
Զապէլ անուն՝ վերաձայնեալ.
Որոյ իշխանք՝ ըն հնազանդեալ,
Երդմամբ պարոն՝ ըզնա եդեալ:
Այլ խռովութիւն՝ յերկիրն անկեալ,
Քանզի Ռուբէն՝ բրինձ եկեալ.
Բաղում իշխանս՝ յինքն յարեալ,
Եւ տէրութեան՝ ակն կալեալ:
Նախ զՏարսոն՝ եղև առեալ,
Եւ ի Մսիս՝ յառաջացեալ.

Իսկ Կոստանդին՝ զօրօք եկեալ,
Եւ ի վերայ՝ նորա դիմեալ։
Եւ ի Տարսոն՝ զգուամբ ածեալ,
Զնա և զիշխանսն՝ իւր հաւանեալ.
Զամենեսին՝ ի բանտ արկեալ,
Որք և անդէն՝ իսկ վախճանեալ։
Բայց Կոստանդին՝ ըն զօրացեալ,
Զպարոնութիւնն՝ պինդ կալեալ.
Զեկեղեցի՝ բարձրացուցեալ,
Եւ զպաշտօնեայս՝ նորա պատուեալ։
Որ հայրապետ՝ յայնժամ կացեալ,
Տէր Յովհաննէս՝ վերակոչեալ.
Սա վեցերորդ՝ է համարեալ,
Ի Ներսիսէ՝ սորոյ սկսեալ։
Զի երջանիկս՝ այս քիշեցեալ,
Յորմէ զբանըս՝ մեր նիւթեալ.
Իբրև վախճան՝ սմա հասեալ,
ԶՏէր Գրիգոր՝ փոխան օծեալ։
Այն որ տղայն՝ մակակոչեալ,
Եւ յաղթանդամ՝ էր հաստատեալ.
Տէր Գրիգորիս՝ զսա փոխեալ,
Որ գահավէժ՝ յետոյ եղեալ։
Եւ Տէր Գրիգոր՝ զհետ նստեալ,
Որ ապիրատն՝ էր մանկձայնեալ.
Եւ յետ սորա՝ մահուան կացեալ,

Տէր Յովհաննէս՝ նախայիշեալ ։
Ընդ որ արքայն՝ Լէոն միճեալ ,
Եւ զՏէր Դաւիթ՝ փոխանորդեալ ․
Որ և ղերկուս՝ ամս հովուեալ ,
Եւ առ հովիւ՝ ըն քաջ փոխեալ ։
Ընդ Յովհաննէսն՝ արքայ հաշտեալ ,
Եւ ի յաթոռն՝ հաստատեալ ․
Եւ արքայի՝ վախճան եկեալ ,
Որ ընդ իշխանս՝ ըն գումարեալ ։
Փոքր ինչ յետոյ՝ և նա մեռեալ ,
Տէր Կոստանդին՝ փոխանորդեալ ․
Ըզկոստանդեայ՝ որդին առեալ ,
Զայն որ Հեթումն՝ էր անուանեալ ։
Ընդ Զապէլի՝ զուգաւորեալ ,
Եւ թագաւոր՝ Հայոց օծեալ ․
Սա ըստ կամաց՝ թագաւորեալ ,
Յամենեցունց՝ շնորհ գտեալ ։
Եւ թագուհին՝ Զապէլ կոչեալ ,
Ի բարի գործ՝ ըս յառաջեալ ․
Զպարկեշտութիւն՝ նախապատուեալ ,
Որովք եղեն՝ որդիս ծնեալ ։
Նախ զԼէոն՝ բարեպաշտեալ ,
Որ թագաւոր՝ այժմ է օծեալ ․
Ապա զԹորոս՝ երջանկացեալ ,
Որ և արեամբ՝ նահատակեալ ։

Եւ զՌուբէն՝ տղայ մեռեալ ։
Եւ այլ դստերըս՝ հինգ ծնեալ ,
Իսկ Թագուհին՝ յերկրէ ելեալ ․
Եւ ի յերկինըս՝ փոխադրեալ ,
Արքայն Հեթում՝ խորհրդածեալ ։
Վասն աշխարհին՝ որոյ տիրեալ ,
Քանզի Թաթար՝ ազգն էր յայտնեալ ․
Եւ բարկութեամբ՝ զերկիր վանեալ ,
Սա առ Նոսին՝ յուղի անկեալ ։
Եւ զամս չորս՝ անդէն կացեալ ,
Եւ ըստ Նոցա՝ դենին խնդրեալ ․
Բանս սիրոյ՝ և գիր առեալ ,
Ապա փառօք՝ յետս դարձեալ ։
Եւ զբազում՝ գաւառս առեալ ,
Ըզտաճկական՝ զօրս հարեալ ․
Եւ աշխարհի՝ Նոցա տիրեալ ,
ԸզԳերմանիկն՝ եղև կալեալ ։
Եւ զՊեհեսնի՝ զբռամբ ածեալ ,
Եւ ի Թուրքին՝ ձեռաց առեալ ․
Զոր ի վաղուց՝ էին խլեալ ,
Աստուածային կամքն՝ շարժեալ ։
Եւ հաշտ ակամբ ի մեզ՝ հայեալ ,
Քանզի զդրունս՝ երկնից բացեալ ․
Եւ զբարութիւն՝ յերկիր հեղեալ ,
Որ և լինէր՝ պտղաբերեալ ։

Իբրև զդրախտ՝ առոգայեալ,
Եւ ամենայն մարդ՝ հանգուցեալ.
Ընդ իւր որթովն՝ որպէս գրեալ,
Այլ զի սակաւք՝ են յայս հասեալ։
Որ ի բարիս՝ ըն ժամանեալ,
Ըստ օրինաց՝ լիցին կայցեալ.
Եւ Աստուծոյ՝ հաճոյ գտեալ,
Իսկ որ մարմնոյ՝ ծառայ եղեալ։
Եւ հեշտութեամբ՝ զհոգին լքեալ,
Նոքա զկենաց՝ պատճառն առեալ.
Եւ կորստեան՝ առիթ գործեալ,
Որպէս Մովսէս՝ ամբաստանեալ։
Զհինն Իսրայէլ՝ և Նախատեալ,
Թէ յագեցմամբ՝ Յակոբ կերեալ.
Եւ գիրութեամբ՝ ստուարացեալ.
Ըզկերակրին՝ Տէրըն թողեալ։
Եւ Արարչին՝ կիցս ընկեցեալ.
Դարձեալ և այլ՝ ումն գրեալ.
ԶՍոդոմայ՝ և եպերեալ,
Որ մինչդեռ չէր՝ նա կործանեալ։
Էր Աստուծոյ դրախտին՝ զուգեալ,
Բայց Սոդոմայ՝ զայս նիւթ առեալ.
Եւ ի չարեաց՝ խորս ընկղմեալ,
Բայց ի պխտոյսն՝ ոչ փայելեալ։
Այլ յղփութեամբ՝ թշնամանեալ.

Որպէս զքոյ՝ յիշատակեալ.
Զորդիս մարդկան՝ և նախատեալ,
Զուրախութիւն՝ սրտից առեալ։
Եւ յամօթոյ՝ մասին եղեալ,
Ոչ քաղցելոց՝ զհացըն բողեալ.
Եւ ոչ զմերկս՝ զգեցուցեալ,
Ոչ պանդխտի՝ յարկ ընծայեալ։
Ոչ նեղելոց՝ բաւական լեալ,
Այլ զամենայն՝ ի պորտ ծախեալ.
Եւ զցանկութիւն՝ աճեցուցեալ,
Արդ զի մարմինն՝ եղև տիրեալ։
Եւ զհոգին՝ ծառայ եղեալ,
Ցորժամ ծառայն՝ թագաւորեալ.
Որ յԵգիպտոս՝ գոռոզացեալ,
Եւ զԴամասկոս՝ բռնակալեալ։
Այլ և Հալպայ՝ սուլտան եղեալ,
Եւ զամենայն՝ աշխարհ կալեալ.
Որքան Սեմայ՝ տուն անուանեալ,
Զծառայածինսն՝ առ ինքն ածեալ։
ԶՀագարացիս՝ ըն ժողովեալ,
Բազում զօրըս՝ յինքն յարեալ.
Իբրև զաւազ՝ ծովու կուտեալ,
Որոց սուսեր՝ և զէն տուեալ։
Եւ զճակատու՝ մարտ ուսուցեալ,
Քրիստոնէից՝ ընդդէմ շարժեալ.

Իւր Աստուծոյ՝ վրէժ խնդրեալ,
Զծովեզերեայսն՝ յոյժ նեղեալ։
Եւ զբաղում՝ ամրոցս առեալ,
Ի յԱնտիոք՝ մեծըն հասեալ.
Եւ զնա հրոյ՝ ճարակ տուեալ,
Զմեծութիւն՝ նորին հանեալ։
Եւ զմարդիկն՝ ի սուր մաշեալ,
Եւ զոր գերի՝ եղև տարեալ.
Յօտար երկիր՝ զայն վաճառեալ,
Այլ նախ զերես՝ սըն հաստատեալ։
Ի Կիլիկիա՝ ուղևորեալ,
Եւ առ Հեթում՝ արքայ յղեալ.
Եւ ի նմանէ՝ հարկ պահանջեալ,
Իսկ նա զզօրս՝ ըն ժողովեալ։
Եւ ի յորդիսն՝ ապաստանեալ,
Ինքն առ Մուղալն՝ յուղի անկեալ.
Եւ օգնութիւնս՝ անտի առեալ,
Այլ մինչդեռ չէր՝ նա ժամանեալ։
Հագարացւոց՝ զօրքըն հասեալ,
Եւ զՀայոց՝ ըն փախուցեալ.
Արքայորդիքըն՝ ձնացեալ,
Որք քաջապէս՝ հանդիպացեալ։
Եւ բազմագոյն՝ հարուած առեալ,
Ապա յետոյ՝ զԼեւոն կալեալ.
Եւ զԹորոս՝ ըն խողխողեալ,

Զմեծըն Լեւոն՝ զհետ առեալ ։
Ի յերկիրըս՝ ապաստակեալ ,
Զոր և հրոյ՝ ճարակ տուեալ .
Եւ ըրնակիչսն՝ ի սուր մաշեալ ,
Բայց ամրոցայ՝ որոց դիպեալ ։
Ամօթալի՝ լինէր դարձեալ ,
Քանզի՝ Լեւոն՝ թաքուն յղեալ .
Եւ ղնոսա՝ սրտապնդեալ ,
Այլ հրաշագեղ՝ տաճարն այրեալ ։
Որ ի քաղաք՝ ըն Սիս շինեալ ,
Զոր աւերմամբ՝ և հրով քակեալ .
Միայն մարդիկ՝ ըն փախուցեալ ,
Իբրև զգործ՝ ըն վճարեալ ։
Որ ըստ կամաց՝ էր յաջողեալ ,
Ապա փառօք՝ մեծաւ ելեալ .
Յաշխարհն իւրեանց՝ անդրէն դարձեալ ,
Հեթում արքայն՝ զօրօք եկեալ ։
Եւ զնոսա՝ եգիտ ելեալ ,
Թաթար զօրուն՝ հրաման տուեալ .
Եւ ինքն յերկիր՝ յազգ իւր մտեալ ,
Թէպէտ լացեալ՝ և սգացեալ ։
Այլ ի յուսոյ՝ ոչ պակասեալ ,
Զամենեսեան՝ մխիթարեալ .
Եւ ինքն յԱստուած ապաստանեալ ,
Որպէս որդին՝ Նորա գերեալ ։

Արիութեամբ՝ մեծաւ լցեալ,
Քանզի հոգւոյն՝ ոչ վհատեալ.
Եւ ոչ մարմնով՝ ըն զարհուրեալ:
Այլ զերելոյն՝ յոյս եդեալ,
Զամենեսեան՝ մխիթարեալ.
Զորս կերակրեալ՝ և զգեցուցեալ,
Զոմանս գնեալ՝ և ազատեալ:
Ապա զօրայն՝ ըզնա տարեալ,
Եւ առ սուլտան՝ ըն հասուցեալ.
Քանզի նա չէր՝ ընդ զօրսն եկեալ,
Այլ ի յերկիրն՝ իւր մնացեալ:
Որ զՎէհոն՝ իբրև տեսեալ,
Եւ զիմաստուն՝ բանըս լուեալ.
Ըզնա սիրով՝ մեծաւ պատուեալ,
Եւ զհաշտութիւն՝ առաջադրեալ:
Ի սուլտանէն՝ հրաման առեալ,
Յերուսաղէմ՝ եղև մտեալ.
Անդ խաչելոյն՝ երկրպագեալ,
Եւ թողութիւն՝ մեղաց խնդրեալ:
Ինքն յանձին՝ [illegible]մա եղեալ,
Եւ յԵգիպտոս՝ յառաջացեալ.
Եւ անդանօր՝ ի բանտ աձեալ,
Յորում Յովսէփ՝ երբեմն արկեալ:
Զոր քահանայ՝ ինքեան տարեալ,
Եւ խորհրդոյն՝ սուրբ հաղորդեալ.

Զինքն յընթերցումն՝ գրոց եդեալ,
Եւ աղօթից՝ միշտ պարապեալ։
Առ որ գթածն՝ Աստուած հայեալ,
Եւ զսուլտանն՝ ի գութ հանեալ.
Ի կապանաց՝ ըզնա ածեալ,
Եւ միշտ առ ինքն՝ մեծարեալ։
Երեսնամեայ՝ էր սա եղեալ,
Յորժամ կրիցս՝ այս հանդիպեալ.
Ամ մի և տասն՝ ամիս կացեալ,
Ի յԵգիպտոս՝ պանդխտացեալ։
Ապա երդմամբ՝ դաշինս եդեալ,
Ընդ Լէոնի՝ որ անդ եղեալ.
Նովաւ ի հայր՝ Նորին յղեալ,
Եւ զհաշտութիւն՝ ըն կատարեալ։
Իսկոյն զնա՝ պատուով հանեալ,
Մեծաւ փառօք՝ և արձակեալ.
Որ իբր առ հայրն՝ եղև եկեալ,
Լինէր աշխարհ՝ ըս նորոգեալ։
Որ բովանդակ՝ ընդդէմ երթեալ,
Եւ ցնծութեամբ՝ ըզնա տեսեալ.
Զոր նոյն ժամայն՝ ողջագուրեալ,
Եւ Աստուծոյ՝ շնորհ կալեալ։
Ապա արքայն՝ յոտն կացեալ,
Եւ Քրիստոսի՝ երկրպագեալ.
Զի զիւր հայցուածս՝ ըն կատարեալ,

Եւ զՂևոն՝ ի յինքն տուեալ։
Ըզհայրապետն՝ յառաջ կոչեալ,
Որ Կոստանդեայ՝ յաջորդ եղեալ.
Այն որ Յակոբ՝ էր անուանեալ,
Եւ զերազոյն՝ յոգունց զտեալ։
Զամենեսեան՝ ընդ իւր տարեալ,
Եւ ըզՂևոն՝ յոյժ թախանձեալ.
Յիւր նախնական՝ յաթոռն եղեալ,
Եւ զտէրութիւնն՝ ի նա տուեալ.
Ապա կրկին՝ զորդին ստիպեալ,
Զի թագաւոր՝ լիցի օծեալ.
Զոր նա բնաւին՝ յանձն չառեալ,
Թէ և բազում՝ անգամ հարկեալ։
Արդ մինչ արքայն՝ էր զուարճացեալ,
Զորդին պարոն՝ Հայոց տեսեալ.
Յայնժամ ի վեր՝ ի նա ելեալ,
Յորմէ վախճան՝ կենացն եկեալ։
Ուստի զղջմամբ՝ մեծաւ լցեալ,
Եւ բարութիւն՝ բազում գործեալ.
Ըզմիանձանց՝ կարգ ընկալեալ,
Անուն Մակար՝ վերաձայնեալ։
Արքայն զաստի՝ կեանըս լքեալ,
Եւ առ անմահ՝ արքայն փոխեալ.
Զոր օրհնութեամբ՝ երգով բարձեալ,
Եւ ի Դրազարկ՝ ըն հանգուցեալ։

Բայց պարոնն՝ այնքան սուգ առեալ,
Մինչ մահու չափ՝ հիւանդացեալ.
Որ յամենից՝ աղաչեցեալ,
Փութով լինել՝ թագաւորեալ,
Սա առ ժամայն՝ ոչ հաւանեալ,
Եւ յումեքէ՝ ոչ սփոփեալ.
Ձերիս ամիսս՝ սուգ տարեալ,
Տկար անձամբ՝ և վշտացեալ։
Ապա նոքա՝ որ բռնացեալ,
Եւ աշխարհի՝ էին տիրեալ.
Որ յԵգիպտոս՝ սուլտան կացեալ,
Եւ այն որ Խանն՝ էր անուանեալ։
Եւ այլ դրացիք՝ որ մերձ եղեալ,
Եւ ի յազգաց՝ գլուխ նստեալ.
Սիրոյ պատգամ՝ առ նա յղեալ,
Զի եղիցի՝ թագաւորեալ։
Յորոյ հարկեա՛լ և հաւանեալ,
Եւ գրովանդակ՝ Հայք ժողովեալ.
Եւ հայրապետն՝ անդէն կացեալ,
Զեկեղեցւոյն՝ լութիւն բերեալ։
Որք ի Տարսոն՝ միաբանեալ,
Եւ անդանօր՛ ըզնա օծեալ.
Յորոյ վերայ՝ Հոգին իջեալ,
Եւ Թորգոմայ՝ տանն թագեալ։
Լէոն յաւթոռ՝ նախնեաց նստեալ,

Եւ ամենից պարգև՝ տուեալ.
Եւ որք նմա՝ էին սխալեալ,
Ի բովանդակ՝ սրտէ շնորհեալ։
Անհամեմատ՝ առատացեալ,
Եւ շարքունիսն՝ ընդարձակեալ.
Զսպասաւորսն՝ աճեցուցեալ,
Որ ի պալատ՝ անդր կացեալ։
Այլ եւ սեղանն՝ ընդարձակեալ,
Որով աղքատքըն՝ կերակրեալ.
Եւ ամենայն՝ ոք յագեցեալ,
Ի կերակրոյն՝ որ պատրաստեալ։
Զայս ինչ սահման՝ արքայն առեալ,
Զի յոր տեղի՝ և հանդիպեալ.
Զամենեսեան՝ որ անդ դիպեալ,
Ի յարքունուստ՝ էր կերակրեալ։
Լինէր բազում՝ այս պատահեալ,
Զի ի բացեայ՝ ուրեք եղեալ.
Յոր բովանդակ՝ հեծեալն եկեալ,
Եւ այլք բազումք՝ որ ժողովեալ։
Անդ ամսօրեայ՝ . աւուրս յամեալ,
Եւ կերակրոյ՝ ոչ հոգացեալ.
Զի յարքունեացն՝ էին կերեալ,
Առատապէս՝ և վայելեալ։
Եկեղեցեաց՝ պարգև տուեալ,
Քան ըզնախնեացն՝ առաւելեալ.

Վարդապետաց՝ տուն յարմարեալ,
Եւ զուսումնականսն՝ յոյժ պատուեալ։
Եւ առանձին՝ պարգեւ տուեալ,
Զոր վարդապետն՝ էր ծանուցեալ․
Եւ անսպառ՝ զայն հաստատեալ,
Այլ և գրով՝ արձանացեալ։
Զոսկի զօրուն՝ աճեցուցեալ,
Քան զոր յառաջն՝ էին կալեալ․
Եւ այսպիսի՝ բարս ստացեալ,
Ցամենեսեան՝ բարերարեալ։
Էր հեզութեամբ՝ առաւելեալ,
Երկայնամիտ՝ և ժուժկալեալ․
Քաղցրատեսիլ՝ և զուարճացեալ,
Պարկեշտութեամբ՝ փառազարդեալ։
Էր ողորմած՝ որ կարօտեալ,
Եւ ունկնդիր՝ որ բողոքեալ․
Որովք էին՝ զուարճացեալ,
Տունս Հայոց՝ և նորոգեալ։
Արդ սկզբնաչար՝ ըն զայս տեսեալ,
Եւ ընդ սմա՝ պատերազմեալ․
Ի փորձ կռուոյ՝ ըզսա հայցեալ,
Որպէս երբեմն՝ զՅոբ առեալ։
Սակայն թէպէտ՝ ըզսա փորձեալ,
Եւ յոգնակի՝ վիրօք լցեալ․
Այլ յոյժ անշարժ՝ զարքայ գտեալ,

Որ և քան զՅոբ՝ առաւելեալ ։
Արդ զխորհանս՝ ըն յիշեցեալ,
Փոքր ինչ ի ձեռն՝ առիւ ճառեալ.
Նախ ի վերայ՝ սորա ելեալ,
Եւ նենգութիւն՝ սմա նիւթեալ ։
Որ մեծամեծ՝ իշխանք կացեալ,
Եւ ազգականք՝ սորին եղեալ.
Զորոց խորհուրդ՝ ըն իմացեալ,
Եւ ի յԱստուած՝ ապաստանեալ ։
Միայն զամրոցս՝ նոյին առեալ,
Եւ զնոսին՝ ազատ թողեալ.
Որք ի Տեառնէ՝ փոխարինեալ,
Իւրաքանչիւր՝ ոք զոր խորհեալ ։
Յետ այսորիկ՝ զօրօք շարժեալ,
ՅԵգիպտոսէ՝ սուլտանն ելեալ.
Որ յարքային՝ Հեթմոյ սկսեալ,
Յաւուրցն սէր՝ և ուխտ եդեալ ։
Այժմ իւր երդմանն՝ ստունգանեալ,
Եւ վերստին՝ այսրէն եկեալ.
Եւ ոչ նախկին՝ ազդ արարեալ,
Այլ թաքնաբար՝ ասպատակեալ ։
Անձամբն զհետ՝ զօրացն եղեալ,
Որ քան զաւազ՝ առաւելեալ.
Այլ և աստի՝ զԱրաբն առեալ,
Եւ զԹուրքման՝ ըն ժողովեալ ։

Որք ի վաղուց՝ հովիւք եկեալ,
Խաշնադարմանք՝ և աստ բնակեալ.
Սոքա տեղեակ՝ երկրիս եղեալ,
Եւ զամենայն՝ գործ իմացեալ:
Որք իբր ի նա՝ եղեն յարեալ,
Զբոլոր երկիրս ապականեալ.
Բիւրապատիկ՝ չար գործեցեալ:
Քան զառաջին՝ ըն զոր տեսեալ,
Զի ի լերանցն՝ ի վայր բերեալ.
Զխաշն և զմարդիկ՝ որ թաքուցեալ,
Եւ բովանդակ՝ ի սուր մաշեալ:
Զոր ի դաշտաց՝ վայրս գտեալ,
Բայց թէ յամրոցս՝ ոք բնակեալ.
Եւ կամ ի դղեակ՝ ուրեք գաղթեալ,
Նոքա միայն՝ եղեն մնացեալ:
Այլ ամենայն՝ գրուամբ եկեալ,
Զերկիրս զայս՝ շրջապատեալ.
Եւ բովանդակ՝ հրոյ տուեալ,
Եւ զՏարսոն՝ մեծն աւերեալ:
Զերևելին՝ և զհռչակեալ,
Ըզսուրբ Սոփեայ՝ տաճարն վառեալ.
Եւ զքաղաքին՝ աւարն առեալ,
Եւ այսպիսի՝ չարիս գործեալ:
Եւ ողջութեամբ՝ աստի ելեալ,
Արքայն Լևոն՝ սրտաալնդեալ.

Պատերազմել՝ յանձին կալեալ,
Այլ զնա իշխանք՝ ըն նահանջեալ։
Քանզի սակաւ՝ զօրքն էին լեալ,
Բայց ղաւերումն՝ երկրիս տեսեալ.
Եւ տրտմութեամբ՝ մեծաւ լցեալ,
Զամենեսեան՝ մխիթարեալ։
Եւ պարգեօք՝ քաջալերեալ,
Մինչ փորձութեանս՝ այս ժուժկալեալ.
Եւ սակաւիկ՝ հոգի առեալ,
Ապա որդի՝ մի իւր մեռեալ։
Որ սակաւուց՝ այնպէս ծնեալ,
Եւ ինքն ի ցաւ՝ մահու անկեալ.
Ցորմէ հազիւ՝ եղև ղերծեալ,
Եւ յայս ցաւոց՝ միջի կացեալ։
Նորին և դուստր՝ մի մեռեալ,
Այլ յայսմանէ՝ նա ոչ կասեալ.
Եւ ոչ վատթար՝ ըս խորհեցեալ,
Բայց ի յԱստուած՝ ապաստանեալ։
Եւ գոհութեամբ՝ զփորձն տարեալ,
Ապա և այլ՝ կրից դիպեալ.
Որ ամենից՝ էր պատահեալ,
Զի մարդաման՝ սաստիկ եկեալ։
Եւ անպտուղ՝ երկիր եղեալ,
Ցայնժամ արքայն՝ քաջալերեալ.
Զամենեսեան՝ յուսադրեալ.

Որ և զՅորայ՝ բանն ասացեալ:
Եւ զանուն Տեառն՝ օրհնաբանեալ,
Մեզ ի Տեառնէ՝ ասէ տուեալ.
Եւ ի Նմանէ՝ դարձեալ առեալ,
Մերկ յարգանդէ՝ եղաք ծնեալ:
Եւ մերկանդամ՝ յերկիր թաղեալ,
Յայնժամ բարձրեալն՝ Աստուած տեսեալ.
Զմարգարէին՝ բանըն լցեալ,
Եւ բարկութեամբ՝ սկիզբն արարեալ:
Որ ի ցաւոց՝ միջի բնակեալ,
Զստուեր մահու՝ ի յայգ փոխեալ.
Ըստ Մովսիսի՝ Նախագրեալ,
Եւ ընդ Հայոց՝ ազգս հաշտեալ:
Որ յոյժ խախտեալ՝ և տառապեալ,
Սկիզբն բարեաց՝ մեզ զայս եղեալ.
Որ զմեր արքայս՝ զօրացուցեալ,
Զի սուլտանին՝ զօրքն դարձեալ:
Եղեն յերկիրս՝ ասպատակեալ,
Որոց արքայն՝ ընդդէմ ելեալ.
Զամենեսեան՝ յաղթահարեալ,
Զառ և զաւար՝ նոցին առեալ:
Եւ խնդութեամբ՝ մեծաւ դարձեալ,
Ուստի սուլտան՝ ըն զայս լուեալ.
Որ յԵգիպտոս՝ լինէր տիրեալ,
Յարքայն Լեւոն՝ պատգամ յղեալ:

Երդումն և սէր՝ ընդ սա եղեալ,
Եւ այս համբաւ՝ տարատացեալ.
Մինչև ի Խան՝ ըն ժամանեալ,
Ջէն և սուսեր՝ սմա տուեալ։
Ի պատերազմն՝ յորդորեալ,
Յայնժամ և ազգն՝ որ Թուրք կոչեալ.
Որ ի Գամիրս՝ էին տիրեալ,
Ընդ Մուղալին՝ լծով մտեալ։
Որոց և մեքն՝ հնազանդեալ,
Նոքա զմեզ՝ չարախօսեալ.
Թաթար զօրուն՝ յաչաց հանեալ,
Զնոսա ոսկւով՝ կուրացուցեալ։
Եւ ընդ Տաճիկս՝ ըն միացեալ,
Ապա զխորհուրդն՝ ի գործ արկեալ.
Եւ յայտնապէս՝ ամբաստանեալ,
Սակայն եղեն՝ խայտառակեալ։
Եւ ի յարդեանց՝ ըն վերջացեալ,
Յայնժամ Մուղալ՝ ազգն չարժեալ.
Զամենեսեան՝ ի սուր մաշեալ,
Մեր արքային՝ պարգև յղեալ։
Եւ մեծապէս՝ շնորհակալեալ,
Ի յայսմանէ՝ սա ոյժ առեալ.
Եւ ի Թուրքին՝ աշխարհն ելեալ,
Բազում աւար՝ անտի ածեալ։
Եւ ցնծութեամբ՝ աստէն եկեալ,

Որով ղրայլք՝ մեր ղայս լուեալ.
Որ թագաւորք՝ կամ բռնացեալ,
Եղեն ամփշեալ՝ և զարմացեալ:
Խաղաղութիւն՝ ընդ մեզ առթեալ,
Սակայն արքայ՝ ոչ յիշեցեալ.
Զչարիս նոցին՝ որ գործեցեալ,
Այլ ի բոլոր՝ սրտէ թողեալ:
Եւ ընդ նոսա՝ սիրով կապեալ,
Զի էր հոգւով՝ բարեպաշտեալ.
Եւ բարութեան՝ գործովք լցեալ,
Որ ի փորձանսն՝ ոչ կասեցեալ:
Եւ ի բարիսն՝ ոչ փքացեալ,
Այլ ըստ կամաց՝ Տեառն կացեալ.
Եւ ուղղակի՝ թագաւորեալ,
Որ և երիս՝ որդիս ծնեալ:
Նախ զՀեթում՝ անդրանկացեալ,
Զայն որ յիմաստ՝ գրոց կրթեալ.
Եւ ի մարտից՝ գործս վարժեալ,
Երկրորդ զԹորոս՝ ըն կոչեցեալ:
Եւ զՍմբատն՝ երրորդ եղեալ,
Եւ կենակցի՝ բարւոյ դիպեալ.
Որում Կեռան՝ վերաձայնեալ,
Որ հաւատով՝ պայծառացեալ:
Եւ մաքրութեան՝ գործով լցեալ,
Այսպէս արքայ՝ յերկրի կացեալ.

Եւ Աստուծոյ՝ հաճոյ եղեալ,
Զոր պահեսցէ՝ Տէր յերկարեալ.
Խաղաղութեամբ՝ թագաւորեալ։
Արդ ի լրումն՝ այսր բանի,
Փոքր ինչ և այլ՝ բան յաւելցի.
Զոր վերագոյն՝ աստ յիշեցի։
Զգալ Տաճկաց՝ յայսմ աշխարհի,
Որք զտաճարս՝ ըն տէրունի.
Եւ զնշանս՝ ըն սուրբ խաչի,
Այլ և զպատոգամս՝ ըն կենդանի։
Տուեալ գրով՝ յեկեղեցի,
Եւ զամենայն՝ նիւթ պատուելի.
Որ ի խորհուրդ՝ վերաբերի,
Ձեռօքն իւրեանց՝ աղտեղալի։
Եւ բարբառով՝ ըն գարշելի,
Շօշափեցին՝ բոցով կրակի.
Եւ խօսեցան՝ բանս անբարի,
Զերկրպագուս՝ ըն Քրիստոսի։
Մաշեալ ի սուր՝ տարան գերի,
Քրիստոնէից՝ ըն զայս կրեալ.
Եւ մեծապէս՝ գայթակղեցեալ,
Եղեն ոմանք՝ ընդդէմ բերեալ։
Եւ հաւատով՝ տկարացեալ,
Որք աստանօր՝ հակառակեալ.
Եւ զանուղղայս՝ ըն բարբառեալ,

Ասեն զիա՞րդ՝ է ճշմարտեալ ։
Այս դատաստան՝ որ մեզ հասեալ ,
Մի թէ միայն՝ մեք մեղուցեալ ․
Քան զոր յերկրի՝ են բնակեալ ,
Զի յամենից՝ առանձնացեալ ։
Այսպէս եղաք՝ խայտառակեալ ,
Կամ թէ Տաճիկն՝ արդար եղեալ ․
Ցորդ ի ձեռս՝ ըն մեք մատնեալ ,
Որք չար գործովք՝ են աղտեղեալ ։
Եւ ի հաւատսն՝ ամբարշտեալ ,
Բայց այնպիսին՝ զայս ծանիցէ ․
Որ հրամայեալն՝ է ի Տեառնէ ,
Թէ աշտարակն՝ որ անկեալ է ։
Ի Սելովամ՝ և սպանեալ է ,
Զութուտասանքն՝ որ դիպեալ է ․
Այն ընդ մեղաց՝ նոցին ոչ է ,
Կամ որք եկին՝ ի Գալիլէ ։
Զոր Պիղատոսն՝ սպանեալ է ,
Զարիւն զոհից՝ ըն խառնեալ է ․
Ընդ արիւն նոցին՝ զոր հեղեալ է ,
Այս փոխարէն՝ չարեաց ինչ չէ ։
Կամ հատուցումն՝ առ ի Տեառնէ ,
Այլ որ ոք ոչ՝ ապաշխարեալ է ․
Զնմանագոյնսն՝ այսմ կրէ ,
Քանզի խրատէ՝ Տէր զոր սիրէ ։

Զընդունելի՝ զորդին տանջէ ,
Արդ այս խրատ՝ մարդկան տուեալ .
Որք հաւատով՝ բարեպաշտեալ ,
Մի՛ ի հաւատ՝ ըն ճշմարտեալ ։
Լինել միայն՝ վստահացեալ ,
Այլ և զբարի՝ գործ և զընտրեալ .
Ընդ հաւատոյն՝ միաւորեալ ,
Քանզի հաւատք՝ ասին մեռեալ ։
Որ ի գործոց՝ ունայնացեալ ,
Ապա թէ ոք՝ բանդագուշեալ .
Լիցի ի մեղսն՝ անզղջացեալ ,
Նա գիտասցէ՝ զինքն տանջեալ ։
Եւ զփոխարէն՝ գործոյն առեալ ,
Կամ յաշխարհի՝ աստէն կրեալ .
Կամ յահաւոր՝ ատեանն լեալ ,
Զի ծանիցէ՝ մարդ հաւաստեալ ։
Թէ է Աստուած՝ որ յայց եկեալ ,
Իսկ բարեպաշտն՝ որ մատնեցաւ .
Ամբարշտին՝ և տանջեցաւ ,
Այս ի բազում՝ իրաց ցուցաւ ։
Ի Ներկայիս՝ և որ գրեցաւ ,
Զի թագաւոր՝ զոր դատեցաւ .
Սրով ածեալ՝ Նմին զրաւ ,
Այն սիրելոյ՝ գործ ոչ եղաւ ։
Կամ ոք արդար՝ յայն կոչեցաւ ,

Այն անարգեալն՝ վճիռ եգաւ ·
Դատն դահճայ՝ հրամայեցաւ ,
Այս ի յերկրի՝ բնաւորեցաւ ։
Եւ ի վերուստ՝ տնտեսեցաւ ,
Զի Եգիպտոս՝ որ տանջեցաւ ·
Զար հրեշտակօք՝ լինել գրեցաւ ,
Կամ Իսրայէլ՝ որ պատժեցաւ ։
Քաղդէացւովքն՝ և գերեցաւ ,
Այլ թէ զտաճարս՝ աստուածային ·
Եւ զփրկական՝ նշան խաչին ,
Աստուած մատնէ՝ ամբարշտին ։
Յանարգութիւն՝ տալ զնոսին ,
Եւ այս յայտնի՝ ուղղամտին ·
Որ Աստուծոյ՝ է սիրելին ,
Քանզի տաճար՝ զմեզ նմին ։
Ասէ անստուտ՝ բան հրամանին ,
Արդ թէ տաճար՝ եմք Աստուծոյ ·
Եւ ընդունակք՝ Հոգւոյն սրբոյ ,
Յորժամ մարմինս՝ տիրէ հոգւոյ ։
Եւ սիրէ զչար՝ փոխան բարւոյ ,
Յայնժամ զի չեմք՝ նմա պիտոյ ·
Ապականէ՝ բանն Աստուծոյ ,
Այլ և զտաճար՝ անուան իւրոյ ։
Քակէ ընդ մեր՝ վատթար գործոյ ,
Եւ սրբութիւնքն՝ զոր քակէ ·

Զբարկութիւնն՝ իւր մեզ յայտնէ ,
Զի օգնականքն՝ որ ի Նմանէ ։
Ի յաշխարհի՝ մեզ տուեալ է ,
Յորժամ զնոսա՝ ի բաց բարձցէ ․
Զինչ փրկութեան՝ մեզ յոյս կայցէ ,
Զի թէ զանպարտ՝ սըն պատժիցէ ։
Մեղուցելոցն՝ ըն զինչ տայցէ ,
Նաև այսու՝ յայտնէ Նոցին ․
Որ ի քննին՝ միշտ անկանին ,
Յիշատակել՝ զԻսրայէլ հին ։
Զոր ինչ ի Հնումն՝ ախտանային ,
Զի անխտիր՝ մեղանչէին ․
Վստահացեալք՝ ի տաճարին ,
Ուստի հրամանն՝ աստուածային ։
Զաւերն ի նա՝ ասաց Նախկին ,
Զոր և արդեամբ՝ կատարեցին ․
Քաղդէացիք՝ յորժամ եկին ,
Քանդի զտաճարն՝ աստուածային ։
Յաճիւն հրով՝ փոխարկեցին ,
Ըզսրբութիւնս՝ ըն պղծեցին ․
Եւ զնուէրսն՝ անարգեցին ,
Այս յօրինակ՝ բարեպաշտին ։
Անշարժ մնալ՝ ի մէջ մարտին ,
Ոչ գայթակղիլ՝ յերևելին ․
Այլ ակնարկել՝ յիմանալին ,

Պնդիլ ի յոյսն՝ աստուածային ։
Եւ ակն ունել՝ ելից փորձին ,
Զղջմամբ դառնալ՝ առ ի բարին ․
Շահիլ զկեանս՝ անտրտմագին ,
Կամ յաշխարհի՝ աստ ի մարմին ։
Կամ յանվախճան՝ յաւիտենին ,
Որոյ մասին՝ արժանասցի ․
Լեւոն արքայն՝ Հայոց զարմի ,
Եւ յարմարող՝ այսր բանի ։
Եւ որ զսա՝ վերծանեսցի ,
Ի փառս անձանցն՝ որ երրակի ․
Աստուածութեանն՝ միակի ,
Որ է օրհնեալ՝ յամենայնի ։
Այժմ և յամբաւ՝ յաւիտենի ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ՎԱՀՐԱՄԱՅ ՐԱԲՈՒՆԻՈՅ։



1. Ի մեր օրին. « զայն ինչ գրեալ »։

2. Յօրին. Թանգ. « ունայնացեալ »։

3. . . . . . « զի հրամանին անլուր եղեալ »։

4. Ի մեր օրին. « յանապատին »։

5. Յօրին. Թանգ. « Եւ զտէրութիւն աճեցուցեալ »։

6. . . . . . « Թէպէտ յաղագս նոցին դարձեալ »։

7. . . . . . « Եւ զբնակեալսն ի նմա վանեալ »։

8. Ի մեր օրին. « Ի յարեւմուտս կոյս դիմեալ »։

9. Յօրին. Թանգ. « Կապադովկեայ մասին եղեալ »։

10. Յօրին. Թանգ. « Սակայն նախանձն արմատա֊ցեալ » ։

11. . . . . . « Քանզի Մարկոս ոմն կոչեցեալ » ։

12. Ի մեր օրին. « Շուն մի յինքեան էր սնուցեալ » ։
« Անուն նմին արմէն եղեալ » ։

13. . . . « Որոյ անլուր չանն այն եղեալ » ։

14. . . . « Զկապիտառայ ամրոց կալեալ » ։
Ռուբէն կալաւ նախ՝ ո՛չ զԿոսիտառ կամ Կոսիտառ կամ Կոպիտառ բերդ. այլ զԲարձրբերդ. ուր եւ հիմն եդ ճոխութեանն որ յիւր անուն կոչի. ապա հա֊րազատն իւր Կոստանդին կալաւ զՎահկայ հանդերձ մեծաւ մասամբ Տորոսի ։ Եւ այլք որ զկնի յաջորդե֊ցին, ընդարձակեցին զտէրութիւնն զայն յԵփրատայ ցծովն Միջերկրական. թէև Սմբատ զընդհակառակն պնդէ. եր. 87, եւ Կիզիստուէ կոչէ բերդն Կապպա֊դովկիոյ, ուր սպանաւ Գագիկ Բ. վերջին թագաւոր ի Բագրատունեացն Անւոյ ։ Կիրակոս վարդապետ, որ ըստ մեզ պատմէ. եր. 57 զառումն Բարձրբերդի ի Ռուբենէ, յայնմ եւ եթ սխալի զի զԳագիկն Բ՛ արքայ Անւոյ, շփոթէ ընդ Գագկայ Աբասեան՝ Կա֊րուց թագաւորի, որ և ըստ Սմբատայ. եր. 86 հան֊գերձ Ատոմաւ և Աբուսահլիւ եղ ի վրէժխնդրութիւն մահուան անուանակցին իւրոյ և ազգակցին ։

15. Յօրին. Թանգ. « Նաւթանիլանք » ։ Հ. Մ.

Չամչ. ի պատմութեան Հայոց. հատոր 3. եր. 73 և 74. ի յիշելն զՆաթալեանս Ասկուռաստայ յաւելու թէ ունէին տոքա զՅունաց ծէս, թէև յապացոյց ասից իւրոց եւ ոչ զմի աղբիւր ինչ ցուցանէ ։ Վահրամ խօսի զնոցանէ իբրև զիշխանաց Հայոց որոց եկեալ յԱրևելից՝ մտեալ էին ընդ ծառայութեամբ կայսեր Յունաց, և առեալ ինմանէ զաւառս ի բնակութիւն, որպէս Հեթմեանք և այլք ։

16. Ամրատ սպարապետ. եր. 97 կոչէ զայս բերդ Թիլ. և Հ. Մ. Չամչեան. ի պատմութեան Հայոց. հատոր 3. եր. 74. Թիլ Համտնոյ, զոր հանդերձ Վահրամաւ դնէ ի դաշտին Անարզաբայ (ի հնումն Կեսարիա Անազարբուս, եւ այժմ՝ Անզարբայ) ։ Յայժմեան աշխարհացոյցս Կիլիկիոյ չտեսանի անդ բերդ ինչ այսու անուամբ բայց եթէ Թիւմրօ կալէ, որ-անկանի ընդ մէջ վերոյիշեալ եւ Ադանայ քաղաքայ ։

17. Չիք տարակոյս թէ՝ Իսմայէլ անուամբ նախնի պատմիչք մեր զՀագարացիս կամ զԱրաբս իմանային. որոց խալիֆայք յերկոտասաներորդ դարուն ղօղեալ ի Ներքսագոյն կանանոցս Բաղդադայ՝ և ընկղմեալ ի քստմնելի զեղխութիւնս՝ հազիւ թէ շնորհիւ թուրք պահապանաց ի կայի ունէին զստուեր հոգւոյ իշխանութեան իւրեանց, եւ անկարող միանգամայն

յարշաւել յերկիր օտար ։ Ռոստոմ, որպէս և Սմ-բատ սպարապետ. եր. 105. յառաջ բերէ, էր խվրա-նաբնակ Թուրքմանաց, որք յառաջ քան զերևել Թուրքաց, իբրև կարապետք նոցին, սփռեցան ընդ արևմտեան Ասիա և կալան մինչև ցեզերս Եփրատայ, որոց մնացորդք Թափառին տակաւին ի Կիլիկիա ։

18. Ի մեր օրին. «Նախատեալ» ։



Թէպէտ եւ բազում աշխատեցաք առ անսխալ տպագրութիւն շարի Հայ պատմագրաց . այլ առ անհմտութեան այլազգի գրաշարաց մերոց ինքնըքս սպրդեցան սակաւ վրիպակքս տառից ։

| եր. | տող. | վրիպակ ։ | ուղիղ ։ |
|---|---|---|---|
| 7 | 10. | ամէն օրհնեալ . | ամենօրհնեալ ։ |
| 9 | 2. | զայս ցանէ . | զայսցանէ ։ |
| 14 | 8. | մարտնջիլ . | մարտնչել ։ |
| » | 23. | մարտնջիլ . | մարտնչել ։ |
| 15 | 21. | հայորեար . | հայ որեար ։ |
| 17 | 10. | սպարապատ . | սպարապետ ։ |
| 29 | 23. | Գորգ . | Գէորգ ։ |
| 42 | 3. | պատրեալ . | պարտեալ ։ |
| 47 | 5. | Ջրաբուխ ղտեղխ . | Ջրաբուղխ տեղխ ։ |
| 66 | 12. | ոսկուով . | ոսկւով ։ |
| 84 | 11. | բնակեցաւ . | բանակեցաւ ։ |
| 95 | 1. | թէ ո՛վ է իմաստութիւն ։ | թէ ով էր, իմաստութեամբ ։ |
| 96 | 2. | կուսին . | կոուսին ։ |
| 110 | 12. | գրեցի . | գրեցից ։ |
| 129 | 7. | առ ին . | առին ։ |
| 130 | 13. | Կոռիկկիայ . | Կոռիկոայ ։ |

| եր. | տող. | վրիպակ։ | ուղիղ։ |
|---|---|---|---|
| 133 | 8. | Պաւլպաք Լատիքըն (ունի) զՏար. | Պաւլպաք, Լատի-քըն, Տար։ |
| 152 | 28. | Ալփ-Արսլլան. | Ալփ-Արսլան։ |
| 160 | 20. | զօրպպտութեան. | զօրպխտութիւն։ |
| 161 | 3. | գիւր. | իւր։ |
| » | 14. | մատանկս. | մատանիս։ |
| 202 | 1. | Ջոր է. | Ջորմէ։ |
| 206 | 21. | դուքծ. | դուքան։ |
| 209 | 21. | զորս. | զօրս։ |
| 211 | 21. | եղև՝ | ՝ եղև։ |
| 216 | 19. | Ըզսուլանին. | Ըզսուլտանին։ |



Paris. — Imprimé par E. Thunot et Cᵉ, rue Racine, 26.

